## ՄԵՐ ՀԵՂԻՆԱԿՆԵՐԻՆ

«Լենինյան ուղիով» ամսագրի խմբագրությունը խնդրում է հոդվածներ ուղարկելիս ճշտորեն պահպանել հետևյալ կանոնները. տեսական բնույթի հոդվածները 18 մեքենագրական էջից ոչ ավելի, պրակտիկ աշխատանքը և առաջավոր փորձը լուսաբանող հոդվածները՝ 8—10, նամակներն ու թղթակցությունները՝ 4—6, գրախոսականները և մամուլի տեսությունները՝ 6—8 էջ:

Անդրկովկասի ու Հայաստանի հեղափոխական շարժման թեմաներով գրված և Հայաստանում մարքսիզմ-լենինիզմի տարածմանը նվիրված հոդվածները պետք է ունենան ռուսերեն ամփոփում՝ 8 տողի չափով:

Հոդվածները պետք է մեքենագրված լինեն երկու ինտերվալով, երկու օրինակից, նշելով հեղինակի լրիվ անունը, հայրանունը և ազգանունը, հասցեն ու հեռախոսի համարը:

Չտպագրվող հոդվածի մեկ օրինակը վերադարձվում է հեղինակին:

Սույն կանոնը խախտողների հոդվածները կմնան անհետևանք:



ԼԵՆԻՆՅԱՆ ՈՒՂԻՈՎ

7

ՀՈՒԼԻՍ 1970

ԼՈՒՅՍ Է ՏԵՍՆՈՒՄ 1922 ԹՎԱԿԱՆԻՑ

ՀԱՅԱՍՏԱՆԻ ԿՈՄՈՒՆԻՍՏԱԿԱՆ ԿՈՒՍԱԿՑՈՒԹՅԱՆ ԿԿ-Ի ՏԵՍԱԿԱՆ-ՔԱՂԱՔԱԿԱՆ ԱՄՍԱԳԻՐ

«Ленинян угнов» — теоретический и политический журнал ЦК КП Армении

## Բովանդակություն

# Содержание





Հ. Զ. ԱՊՐԵՍՅԱՆ

Փիլիսոփայական գիտությունների դոկտոր, պրոֆեսոր

# ՍՈՑԻԱԼԻՍՏԱԿԱՆ ՍՏԵՂԾԱԳՈՐԾՈՒԹՅԱՆ ԳԵՂԱԳԻՏՈՒԹՅԱՆ ԼԵՆԻՆՅԱՆ ԳԱՂԱՓԱՐՆԵՐԸ

*Սոցիալիստական շինարարությունը միլիոնների ստեղծագործությունն է, լայն ասպարեզ՝ ժողովրդական մասսաների բազմակողմանի ինքնագործունեության համար։ Այդ դրույթի հիմնավորմանը, նրա սոցիալիստական բարոյա-գեղագիտական էության բացահայտմանն են նվիրված Վ. Ի. Լենինի «Ինչպե՞ս կազմակերպել մրցությունը» հոդվածը, ինչպես նաև հետհոկտեմբերյան շրջանի մյուս աշխատությունները։*

*Աշխարհի հեղափոխական վերափոխմանը համապատասխան՝ «շինարարությունը» և «ստեղծագործությունը», ինչպես նաև «ստեղծագործությունը» և «արվեստը» լենինյան աշխատություններում համասեռ հասկացություններ են։ Ծավալվող սոցիալիստական հեղափոխության պրոցեսում կատարվող վերափոխությունը Լենինը չէր պատկերացնում առանց համարձակ ու մասսայական նախաձեռնության, որի մեջ կոլեկտիվ և անհատական կամքը ի մի են ձուլվում, ստեղծելով կազմակերպող ու դաստիարակող որակապես նոր ուժ։ Համաժողովրդական ստեղծագործության մեջ նախաձեռնությունը հնարավոր է դառնում միայն աշխատանքային վերելքի, ուրեմն և որոշակի ոգեշնչման և նույնիսկ խանդավառության առկայության դեպքում։ Բայց հազարավոր ու հազարավոր մարդկանց եռանդն ի հայտ բերող և ձևավորող ոգեշունչ աշխատանքը բեղմնավոր և, որ գլխավորն է, նպատակասլաց է դառնում միայն այն դեպքում, երբ մասսաներն ունեն բարձր կազմակերպվածություն և պարզորոշ տեսնում են կոլեկտիվ ստեղծագործության նպատակները։ Դա նշանակում է, որ եթե կամքի վճռականությունն ու նպատակասլացությունը բացահայտում են մասսայական նախաձեռնության բարոյական էությունը, ապա նրա ստեղծագործական ու ոգեշնչող կողմերը և, մանավանդ, խանդավառությունը լիակատար հիմունքով կարող են գնահատվել գեղագիտական չափանիշով՝ գեղեցկության կատեգորիայով։*

*Սոցիալիստական շինարարությունը տնտեսական, սոցիալ-քաղաքական, կուլտուրական, բարոյական և այլ պայմանների, ինչպես նաև բազմապիսի արժեքների ստեղծումն է՝ հասարակությունը կյանքի բոլոր նյութական ու հոգևոր բարիքներով ապահովելու, նրա հարաճուն պահանջմունքները լիովին բավարարելու համար։ Իրականության կոմունիստական վերափոխությունը*

դրա հետ մեկտեղ մեծ հեղաբեկում է մարդկանց հոգևոր կյանքում, պատմա-
կանորեն առաջացած օտարացման հաղթահարում, նոր մարդու դաստիարա-
կում, որն ապահովում է նրա բազմակողմանի ներդաշնակ զարգացումը։

Այդ կապակցությամբ, կարելի է ասել, որ լենինյան «նոր հասարակու-
թյան ստեղծագործությունը» արտահայտում է նաև կրթված, կոմունիստորեն
համոզված և դաստիարակված նոր անհատի գաղափարը։ Այդպիսի ստեղծա-
գործության մեջ դրսևորվում են բարձր մարդասիրության բարոյական սկզբ-
բունքները, գեղեցկության տարրերը՝ շաղկապված բերկրանքի և ազատու-
թյան այն զգացմունքի հետ, որ գիտակցում է «նորի կառուցման» մասնա-
կիցը։

Մասսայական աշխատանքը բուրժուական հասարակության մեջ Լենինը
գնահատում էր որպես «չափից դուրս տաղտկալի, ծանր, հարկադրական, գո-
րանոցային», որը ոչ միայն չի նպաստում իսկական մարդկային էության
բացահայտմանը, այլև ճնշում է այն։ Բուրժուազիայի և նրա պրոպագանդայի
կողմից ամեն կերպ գովերգվող մրցակցությունը նշանակում է «...բնակչու-
թյան մասսաների, նրա հսկայական մեծամասնության, աշխատավորների
իննսունինը հարյուրերորդականի ձեռներեցության, եռանդի, համարձակ նա-
խաձեռնության անլուր գազանային ճնշում»,— գրում էր Լենինը (Երկեր, հ. 26,
էջ 493)։ Կապիտալիստական մրցակցությունը խրախուսում է մարդկանց գա-
զանային, ստոր, ամորալ, ըստ էության հակագեղագիտական բնազդները։
Այն նպաստում է ոչ թե ոգեշունչ աշխատանքին և դրա հարուցած բերկրան-
քին, ոչ թե մարդկային բարեկամական և ընկերական հարաբերությունների
պարզությանը, անարատությանն ու գեղեցկությանը, այլ դրանց թշնամանքին
և այլանդակմանը։ Կարելի է ասել, որ Լենինը հարկադրական աշխատանքը
բնութագրում և գնահատում է որպես հակամարդասիրություն մարդկային
հարաբերությունների մեջ, որպես խորթացում գեղեցկի ոլորտում, մի գեղեց-
կություն, որն արտահայտվում է ամեն մի ազատ աշխատանքում։

Ջափից դուրս տաղտկալի, հարկադրական և զորանոցային աշխատանքին
Լենինը հակադրում է մասսայական ստեղծագործությունը սոցիալիզմի պայ-
մաններում և առաջին պլանի վրա է դնում մրցության գաղափարը։ Մերկաց-
նելով բուրժուական պրոպագանդայի հերյուրանքները, նա գրում էր. «Սոցիա-
լիզմը ոչ միայն չի մարում մրցությունը, այլ, ընդհակառակը, առաջինն է
հնարավորություն ստեղծում իրոք լայնորեն կիրառելու այն, իրոք մասսայա-
կան չափով, իրոք աշխատավորների մեծամասնությունը ներգրավելու այն-
պիսի աշխատանքի ասպարեզ , որտեղ նրանք կարող են երևան բերել իրենց,
ծավալել իրենց ունակությունները, դրսևորել տաղանդներ, որոնք ժողովրդի
մեջ անսպառ աղբյուր են և որոնց կապիտալիզմը ճմլել, ճնշել, խեղդել է հա-
զարներով ու միլիոններով» (Նույն տեղը, էջ 493—494)։ Սոցիալիստական
շինարարության ընթացքում և նրա բազայի վրա ծավալվող մրցությունը հնա-
րավոր է դառնում հարկադրական աշխատանքն իր համար կատարվող աշխա-
տանքով փոխարինելու պրոցեսում։

Սոցիալիստական մրցությունը կապիտալիստական մրցակցությանը հա-
կադրելու մեջ հեշտ է ի հայտ բերել բարոյա-գեղագիտական ասպեկտները։
Հենց այս «սխրանքներն ու արժանիքները», որոնց մասին սարկազմով գրում
էր Լենինը, հակամարդասիրական են և բարոյազուրկ, քանի որ աղարտում են
մարդու էությունը, անհատականությունը, ընդհանրապես մարդկայինը, պատ-
վի և արժանապատվության զգացումը։ Եվ, ընդհակառակը, «հարկադրական



աշխատանքի այդ մեծագույն փոխարինումն իր համար կատարվող աշխա-
տանքով», ազատագրելով և շտկելով մարդուն, հանդես է գալիս իր բարձր
մարդասիրական էությամբ և բարոյականությամբ, իր ստեղծարար գեղեցկու-
թյամբ։

Մասսայական աշխատանքում ծավալվող մրցությունը պայմանավորվում
է սոցիալիստական հասարակարգի բնույթով, կոլեկտիվ և նպատակասլաց
հարաճուն ստեղծագործությամբ, որը ենթարկված է համաժողովրդական մեկ
միասնական նպատակի։ Մրցության մեջ աշխատանքը դառնում է որակապես
նոր, ավելի բովանդակալի։ Ուստի, այդպիսի ստեղծագործության մեջ ներ-
գրավվող մարդիկ մտնում են իրենց պատմական իմաստով ու բնույթով նոր
հարաբերությունների մեջ, համատեղ ստեղծագործության և համագործակ-
ցության մեջ հանդես գալով նոր սոցիալական ֆունկցիաներով։ Ծնունդ
առնելով սոցիալիստական հասարակարգից՝ մրցությունը դառնում է այդ հա-
սարակարգի տնտեսական, սոցիալ-քաղաքական զարգացման, ուրեմն և նոր
անհատի ձևավորման ու աճման կարևոր գործոններից մեկը։

Այլ կերպ ասած, ոչ թե էքզիստենցիալիստական գոյությունն իր իռա-
ցիոնալիզմով հանդերձ, որն անհատին մեկուսացնում է օբյեկտիվ իրակա-
նությունից և կեղծ հասկացված ազատությունից՝ որպես ծայրահեղ անհատա-
պաշտություն, այլ բոլոր աշխատավորների նպատակների ու իդեալների աս-
տիճանաբար գիտակցվող ընդհանրությունն է դառնում ստեղծարար աշխա-
տանքի և նրա իսկական ազատության խթանը։ Եվ այն ժամանակ յուրա-
քանչյուր մրցողի բնածին ավյալներն սկսում են ի հայտ գալ ու ձևավորվել
ավելի մեծ ուժով և ավելի արգասալի ինքնահաստատմամբ։ Ընդ որում, ինք-
նահաստատման մեջ հետզհետե ավելի բացահայտորեն են երևան գալիս մարդ-
կային ստեղծագործական ուժերը, դրանց ռեալ հնարավորություններն ու ար-
դյունքները, ինչպես նաև խորանում է մարդկային ինքնաճանաչումը։

Մրցությունը մարդկանց ունակություններին մասսայական մասշտաբով
ասպարեզ տալու պայմանն ու եղանակն է, ժողովրդի ընդերքից ելած տա-
ղանդների հայտնաբերման և ձևավորման միջոցը։ Ժողովրդական տաղանդ-
ներն սկսում են գիտակցության գալ, արթնանալ, ձգտել կենդանի, ստեղծա-
գործական աշխատանքի, ինքնուրույնաբար ձեռնամուխ լինել սոցիալիստա-
կան հասարակարգի կառուցմանը։ Նոր հասարակարգի կառուցումը, ասում է
Լենինը, դա ստեղծագործական մեծ աշխատանք է, որը դառնում է մի այն-
պիսի ասպարեզ, որտեղ աշխատանքի մարդը կարող է դրսևորել իրեն, փոքր-
ինչ ուղղել մեջքը, իրեն մարդ զգալ։

Սոցիալիզմի պայմաններում աշխատանքի չափն ստանում է առաջնա-
կարգ նշանակություն։ Այն միաժամանակ հանդիսանում է կոլեկտիվ և անհա-
տական հնարավորությունների և դրանց զարգացման չափ, հետևաբար և
կատարյալի պատճառած բերկրանքի ու գոհունակության զգացմունքի չափ։
Այդ պատճառով հիմք կա ասելու, որ դրա մեջ պետք է արտահայտվի
մարդկային սխրանքի գեղեցկությունը, ամենից առաջ՝ նրա գեղագիտական
էությունը, իսկ ապա նաև գեղեցկի չափը։ Այդպիսի չափի և գործողության
էության մեջ արտահայտվում է նաև բարոյականության չափը։

Որոշելով սոցիալիզմի պայմաններում տեղի ունեցող մրցության էու-
թյունն ու խնդիրները, Լենինը, ամենից առաջ, ընդգծում էր նրա քաղաքա-
կան, սոցիալ-կազմակերպական, տնտեսական և բարոյա-դաստիարակչական
նշանակությունն ինչպես ամբողջ երկրի, այնպես և յուրաքանչյուր մրցող

աշխատավորի համար։ Բայց կոլեկտիվ ստեղծագործության նկատմամբ հենց այդպիսի բազմակողմանի մոտեցման մեջ կարելի է հստակ հայտնաբերել «նորի կառուցման» բարոյա-գեղագիտական ասպեկտները, նրա իսկական գեղեցկությունը, այն ուժը, որը, ամենից առաջ, հաղթահարում է աշխատանքի նկատմամբ եղած հին հայացքները և ձևավորում նոր վերաբերմունք նրա նկատմամբ, ստեղծում աշխատանքի նոր խթաններ։ Լենինն այդպիսի հզոր ուժ էր տեսնում «նորի կառուցմանն» ակտիվ մասնակցող միլիոնների մրցության, ուրեմն և նոր հարաբերությունների ձևավորման մեջ։

Այդպիսի հարաբերությունները ձևավորվում են ոչ թե իսկույն, միանգամից, ոչ թե իդեալական կամ երևակայական-ներդաշնակ իրադրության մեջ, այլ դասակարգային սուր պայքարի, նորի, նրա ծիլերի դեմ հնի կատաղի պայքարի, «նորի կառուցման» համար անհրաժեշտ փորձի պակասության, եթե ոչ բացակայության պայմաններում։ Դեռևս Սովետական իշխանության հաջողությունները ու դժվարությունները աշխատության մեջ Լենինը գրել է. «Հին ուտոպիստ-սոցիալիստները երևակայում էին, որ սոցիալիզմ կարելի է կառուցել ուրիշ մարդկանցով, որ նրանք նախ լավ, մաքուր, հիանալի սովորեցրած մարդիկ կդաստիարակեն և նրանցից սոցիալիզմ կկառուցեն։ Մենք միշտ ծիծաղում և ասում էինք, որ դա տիկնիկախաղ է, որ դա սոցիալիզմի սեթևեթող օրիորդների զվարճությունն է, և ոչ թե լուրջ քաղաքականություն» (Երկեր, հ. 29, էջ 65)։

Լենինը հանդես էր գալիս դաժան իրականության իդեալականացման և գունազարդման դեմ։ Նա կոչ էր անում այդ իրականությունը դիտել դիալեկտիկորեն և ռեալիստորեն, այսինքն՝ օբյեկտիվ և սուբյեկտիվ բնույթի իր բոլոր դժվարություններով, իր բոլոր հակասություններով։ Օրինակ, գաղափարախոսական ու բարոյական, աշխատանքային ունակությունների, տրադիցիաների ու սովորույթների հակասություններից զերծ չեն նաև այն բազմաթիվ մարդիկ, որոնց հետ ստիպված է գործ ունենալ սոցիալիստական կարգը, ավելի ճիշտ՝ որոնց օգնությամբ և աճող ակտիվությամբ պետք է կառուցել նոր հասարակարգը։ Իսկ այդ միլիոնավոր մարդկանց դաստիարակել է կապիտալիզմը, փչացրել, այլասերել է նրանց, բայց և կոփել պայքարում։

Կազմավորվող կոմունիստական ֆորմացիան միաժամանակ ժառանգում և օգտագործում է աշխատավորների կոփվածությունը, մի հատկություն, որ դրական ու արժեքավոր է բոլոր տեսակետներից։ Օգտագործելով այդ կոփվածությունը, սոցիալիստական կարգը հայտնաբերում և ձևավորում է այն բոլոր լավը, որ կա աշխատավոր ժողովրդի մեջ, առանց որի աներևակայելի է կոմունիստական նոր հարաբերությունների ստեղծման գեղեցկությունը։

Իհարկե, դա տևական պրոցես է՝ կապված բազմաթիվ, շատ դեպքերում անհավատալի դժվարությունների հետ։ Բայց դժվարությունը, ընդգծում էր Լենինը, չի նշանակում անհնարինություն, և առանց դժվարությունների հաղթահարման չի եղել ոչ մի հեղափոխություն, առավել ևս չի կարող լինել սոցիալիստականը՝ պատմության մեջ ամենախոր ու հետևողական հեղափոխությունը։ Ամբողջ հարցը մասսայական ստեղծագործության կազմակերպումն է, մարդկանց աստիճանական վերափոխումը, նրանց սոցիալիստական դաստիարակությունը։

Հասարակական շարժման մեջ Լենինը տեսնում էր, ոչ միայն նրա օբյեկտիվ պայմաններն ու որոշիչ սոցիալական ուժերը, այլև անպայման տարբերում էր այդ շարժման դրական ու բացասական կողմերը։ Կապիտալիստական



հասարակարգի պայմաններում պրոլետարները կոփվում են աշխատանքում, սովորում հաղթահարել դժվարությունները։ Պայքարի, դժվարությունների հաղթահարման համար ձեռք բերած այդ կոփվածքը Լենինը համարում էր այն ուժը, որն օգտագործելով, ի վիճակի կլինենք զբաղվելու «նորի կառուցմամբ»։ Պայքարի համար ձեռք բերած կոփվածքի ուժի և նշանակության լենինյան մեկնաբանության մեջ արտահայտվել է նրա հսկայական հավատը ժողովրդի առողջ բնազդների ու իմացականության հանդեպ, առավել ևս գիտակցական ու նպատակասլաց ստեղծագործության համար արթնացած սոցիալիստական խանդավառության հսկայական հնարավորությունների նկատմամբ։

Լենինն այն կարծիքին չէր, որ ամեն դեպքում կարելի է գործել եռանդով ու խանդավառությամբ, անտեսելով, օրինակ, գիտելիքն ու հմտությունը։ Լավ է ֆիչ, բայց լավ հայտնի հոդվածում նա, խոսելով կատարյալ կառավարում և կառավարման ապարատ ստեղծելու անհրաժեշտության մասին, ընդգծում էր, որ դրա համար անհրաժեշտ է մշակել յուրաքանչյուր աշխատակցի կուլտուրան, հատկապես աշխատանքի և կառավարման կուլտուրան։ Այդպիսի կուլտուրան չի կարելի փոխարինել ոչ գրոհայնությամբ, ոչ եռանդով կամ ճարպկությամբ, ոչ մարդկային որևէ այլ հիանալի հատկությամբ։ Մանավանդ սոցիալիստական շինարարության մեջ պետք է կարողանալ այնպես ձևավորել և այնպիսի ուղղություն տալ մասսայական եռանդին ու նրա բարձրագույն արտահայտությանը՝ խանդավառությանը, որ «նորի կառուցման» համար ստեղծվի առավելագույն հնարավորը։ Ահա թե ինչու նպատակասլաց և, մանավանդ, կոլեկտիվ ստեղծագործության էական առանձնահատկությունը գործիմացությունն է։

Գործիմացությունը կամ խելացի պրակտիցիզմը սոցիալիստական հասարակարգը նույնպես ժառանգություն է ստացել կապիտալիզմից։ Ոչ թե գործամոլությունը, այլ գործիմացությունը նույն ռեալիզմն է պլաններում, ընդունվող որոշումներում և, իհարկե, աշխատանքում։ Այդ ռեալիզմն անհամատեղելի է ֆանտազյորության ու պրոժեկտյորության, մանիլովականության ու օբլոմովականության հետ, որոնց մշտապես ու հրապարակավ մերկացնում էր Լենինը։ Բայց պատմականորեն ստեղծվող գործիմացությունը ժողովրդական ստեղծագործության նոր պայմաններում պետք է դրսևորվի անցյալում չտեսնված սոցիալական մասշտաբներով, որոնք աստիճանաբար ընդգրկում են ժողովրդի ամբողջ աշխատունակ մեծամասնությանը։ Գործիմացության սոցիալական ընդգրկման ընդլայնումը միայն քանակական աճ չէ, որովհետև նրա թափը, ավելի ճիշտ՝ նրա ընդգրկած մարդկանց թիվը վերաճում է որոշակի որակի։ Նոր պայմաններում գործիմացությունը հենվում է հասարակական աշխատանքի սոցիալիստական կազմակերպման վրա։ Գործիմացության նոր որակը որոշվում է իր սոցիալիստական բովանդակությամբ, նրանով, որ այն ենթարկվում է համաժողովրդական շահերին։

Սոցիալիստական գործիմացության մեջ փաստորեն դրսևորվում է աշխատանքի չափի և մարդկային ստեղծագործական հնարավորությունների չափի միասնությունը։ Միայն դրա հիման վրա «նորի կառուցման» գործում կարելի է հասնել առավելագույն արդյունքների։ Ըստ Լենինի, աշխատանքի չափը մարդու քաղաքակրթվածության չափն է, ուրեմն և ձեռք բերվող այն ունակությունների չափը, որ մտել են մարդկանց կուլտուրայի, կենցաղի և սովորույթների մեջ։ Այդ նշանակում է, որ գործիմացությունը, որպես մարդկային որոշակի հատկության և դրա հետ միասին որպես մարդու վարքագծի չափ,

դարձել է անհատական, մի տեսակ օրգանական և ոչ թե որևէ մեկի կողմից պարտադրված բան։ Գործիմացությունն ինքնին վերածվում է սովորության, բնական նորմի։ Գործիմացությունը որոշակի ստեղծարար ուժ է կամ, համենայն դեպս, այդ ուժի կարևոր գործոն։ Գործիմացության առաջնակարգ առանձնահատկությունը կարելի է համարել նպատակի, աշխատանքի առարկայի և ձևերի (եղանակների) միասնությունը, որոնց միջոցով կատարվում է ամեն մի աշխատանք։ Նրանում անպայման պետք է գործի առարկայի և աշխատանքի չափի միասնությունը։ Ուստի, կարելի է ասել, որ գործիմացությունը որոշակի ներդաշնակություն է այն հարաբերություններում, որ ձևավորվում են մարդկանց և նրանց ստեղծագործության միջև։ Անտարակույս, այդ ներդաշնակության մեջ է աշխատանքի գեղեցկությունը, նրա գեղագիտական ասպեկտը։ Աշխատանքի առարկայի և բուն սխրանքի չափի միասնության մեջ է դրսևորվում այն «գեղեցկության օրենքը», որի մասին առաջինը գրել է Կ. Մարքսը, անգնահատելի ավանդ մուծելով իրականության գեղագիտական ըմբռնման մեջ։

Հայտնի է, որ ամեն մի գնահատականի նախադրյալը գնահատվող առարկայի կամ երևույթի ճանաչումն է։ Գնահատականն օգնում է ավելի ճիշտ պարզելու այն երևույթները, որոնց հետ մենք գործ ունենք, մասնավորապես, նրանց մեջ զատելու էականը կամ գլխավորը։ Գնահատականն օգնում է որոշելու մեր վերաբերմունքը իրականության այս կամ այն կողմի նկատմամբ, հետևաբար միշտ էլ պարունակում է գաղափարականության տարր։ Այստեղից բխում է, որ լենինյան «օրինակի» արժեքավորման դերը նույնպես պարունակում է այն ամենը, ինչ կապված է գնահատման կատեգորիայի նշանակության հասկացության հետ։

«Օրինակելին», ինչպես այդ բխում է դրական հիմքի լենինյան մեկնաբանությունից, դա ընտիր, գերազանց, իսկ հաճախ այն սքանչելի ստեղծագործությունն է, որը երբեմն բերկրալի զգացմունք, զարմանք և նույնիսկ հրճվանք է առաջ բերում մարդկային աշխատանքի արգասիքներով։ Այն նաև իսկական, որոշ չափով անկրկնելի մի գործ է, որ թույլ է տալիս խոսելու մարդկային ստեղծագործական հնարավորությունների բազմազանության մասին։ Ուստի, «օրինակելին», հասարակությանը հարստացնելով նոր գիտելիքներով և բարձրացնելով կուլտուրան, դրա հետ միասին հաճախ առաջ է բերում գեղեցկի զգացում և ընկալվում գեղագիտորեն։ Չես ասի՝ «օրինակելի այլանդակություն», քանի որ դրանք իրարամերժ են։ Բայց բավական է ասել՝ օրինակելի աշխատանք, օրինակելի մեքենա, որպեսզի հասկանալի լինի, որ խոսքը վերաբերում է գերազանց կամ հիանալի աշխատանքին, հրաշալի կամ սքանչելի մեքենային, որը գնահատվում է տեխնիկայում և գեղագիտական տեսակետից։

«Օրինակելին» որպես գործողություն (վարքագիծ) ընկալվում է բարոյական տեսակետից։ Բայց որպես չափազանց կատարյալ, իսկապես ստեղծագործական, այն դառնում է գեղագիտական գնահատականի օբյեկտ։ Բնորոշելով «նորի կառուցման» էությունը և պայքարելով օրինակելի աշխատանքի համար բոլոր բնագավառներում, Լենինը «օրինակը» և «օրինակելին» բնության էր առնում չափազանց կոնկրետ և միանգամայն որոշակի։ Ահա թե ինչու դրանք ըմբռնվում են առարկայորեն, իսկ հաճախ ընկալվում մոտավորապես այնպես, ինչպես գեղարվեստական երկը, կոնկրետ-զգացմունքային ստեղծագործությունը։ Օրինակելին,— լինի դա հիանալի մշակված դաշտ, կամ թե



Օստանկինի հեռուստացուցային աշտարակը, ընկալվում է որպես մարդկային ստեղծագործական ուժերի օրինակելի, գերազանց մարմնացում։ Ուստի, ինչպես մշակված դաշտը, այնպես էլ աշտարակը, յուրաքանչյուրը յուրովի ուրախացնում, հիացնում են մեզ, իհարկե։

Առարկայականությամբ և խիստ կոնկրետությամբ Լենինը մեկնաբանում էր «օրինակի» և «օրինակելիության» հասկացությունը, խոսելով այն մասին, թե մենք ինչպես պետք է աշխատենք, ինչպես կառուցենք նորը։ Նա գրում էր ձեռնարկության, արտելի, կոոպերատիվի ամեն մի ձեռնարկման և ընդհանրապես աշխատանքի օրինակելի կազմակերպման մասին։ «Սովետական իշխանության հերթական խնդիրները» հոդվածում նա գրում է, թե անհրաժեշտ է ստեղծել օրինակելի կոմունաներ, այսինքն՝ արտելներ, որոնք կարող են լինել դաստիարակներ, ուսուցիչներ, իրենց հետևից տանել ետ մնացողներին։ Մեր թերթերի բնույթի մասին հոդվածում նա խոսում է կյանքի բոլոր բնագավառների կոնկրետ օրինակների մասին։

Լենինը կոչ էր անում որոնել, գտնել և բոլոր միջոցներով, այդ թվում նաև գեղարվեստական, պրոպագանդել դրական փորձը։ Նա ինքը որոնում, գտնում և ամեն կերպ ժողովրդականացնում էր սոցիալիստական ստեղծագործության օրինակները։ Դրա համար օրինակ կարող է ծառայել Փոքրիկ պատկեր մեծ հարցերի պարզաբանման համար հոդվածը՝ գրված Ալեքսանդր Թոդորսկու Մեկ տարի՝ հրացանով և գութանով գրքույկի առթիվ, որտեղ հեղինակը պատմում էր Տվերի նահանգի Վեսյեգոնսկի գավառում կատարվող հեղափոխական հիանալի ստեղծագործության մասին։

Գործիմացության և օրինակելիության համար մղած պայքարում Լենինը վճռականորեն հանդես էր գալիս ամեն տեսակ դատարկաբանության և անբանության դեմ։ Նա գրում էր. «Ավելի քիչ քաղաքական ճարճատյուն, ավելի շատ ուշադրություն կոմունիստական շինարարության ամենահասարակ, բայց կենդանի, կյանքից առնված, կյանքում ստուգված փաստերին— այս լոզունգը պետք է անդադար կրկնենք մենք ամենքս, մեր գրողները, ագիտատորները, պրոպագանդիստները, կազմակերպիչները և այլն» (Երկեր, հ. 29, էջ 512)։ Լենինը դատապարտում էր ճոռոմաբանությունը, փքուն ֆրազաբանությունը, քաղցրավուն ճառերը և շաղատանական ֆրազները։ Հեղափոխական գործիմացությանը հակասող դատարկաբանությունն ու ճամարտակությունը, ինչպես նշում էր նա, արգելակում են նոր հասարակարգի ստեղծումը, քայքայում մարդկանց։ Այստեղից բխում է, որ անբանությունն ու թափթփվածությունը քողարկող քաղաքական ճարճատյունն ու ֆրազաբանությունը հակաբարոյական են։ Դատարկաբանության բարոյազրկությունը Լենինը որակում էր որպես շաղատանություն։ Նա գործածում էր նաև այնպիսի բնութագրումներ, ինչպես «բանդագուշանք», «վատթար», «անպետք», «անհեթեթ» և այլն։ Բոլոր դեպքերում խոսքը վերաբերում էր կոնկրետ այլանդակ երևույթներին, փաստերին, գործերին։ Եվ բոլոր այդպիսի բնութագրումների ժամանակ կիրառվում էր բարոյա-գեղագիտական գնահատականի չափանիշը։ Ուստի, «վատթարը» կամ «անպետքը» հասկացվում է հակաբարոյական և, եթե կուզեք, հակագեղագիտական իմաստով։ Ավելին, նողկալի երևույթներին Լենինի տված համակողմանի բնութագրումների մեջ բարոյա-գեղագիտական չափանիշը դառնում էր առանձնապես լայն ու ծավալուն։

Մասսայական ստեղծագործության մեջ հերոսականը, բարոյական ուժը,

գործի վեհությունը հանդես են գալիս բնական ներդաշնակությամբ, որպես աշխատանքի գեղեցկության արտահայտություն։

Ամեն մի անձնազոհություն, իսկ առավել ևս սխրագործություն, ի հայտ բերելով, կամ ավելի ճիշտ, ստեղծելով որոշակի արժեքներ և ինքն էլ դառնալով բարոյական արժեք, դրսևորում է նաև որոշակի գեղեցկություն՝ մարդկային մղումների և ըստ էության անշահախնդիր ռեալ գործի գեղեցկությունը։ Նրա մեջ հեշտ է գտնել նպատակի գեղեցկությունը։ Դա այդպես է մանավանդ այն պատճառով, որ բուն շաբաթօրյակներում, ինչպես և մասսայական նախաձեռնության մեջ, հեշտությամբ էին ի հայտ գալիս կամավոր և անշահախնդիր աշխատանքի գեղեցկության սաղմերը, մինչ այդ չտեսնված մարդկային փոխհարաբերությունների և ձգտումների գեղեցկությունը։ Ահա թե ինչու շաբաթօրյակները լիակատար հիմունքով կարելի է գնահատել որպես հիանալի գործ, որպես ստեղծագործության գեղագիտություն։ Կոմունիստական շինարարության պայմաններում ամեն մի մասսայական նախաձեռնության կոմպլեքսային հետազոտության ժամանակ այդ երևույթի գեղագիտական վերլուծությունը միանգամայն օրինաչափ է։ Դեռ ավելին, այն անհրաժեշտ է սոցիալ-քաղաքական, տնտեսական, կազմակերպական և այլ վերլուծությունների հետ մեկտեղ։

Լենինը նշում էր, որ սոցիալիզմի հաղթանակը չի կարող ապահովվել «առանձին ոգեշնչման հերոսությամբ, այլ պահանջում է մասսայական և առօրյա աշխատանքի ամենաերկարատև, ամենահամառ, ամենադժվար հերոսություն» (Երկեր, հ. 29, էջ 518)։ Ընդհանրապես հերոսական սխրագործությունը միշտ կապված է օբյեկտիվ մեծ դժվարությունների հետ, պահանջում է համարձակություն, հաճախ նաև անձնազոհություն։ Բայց այդ դեպքում վաղանցիկ հերոսական արարքները և առանձին պոռթկումները պետք է տարբերել տևական և, մանավանդ, մշտական, մասսայական հերոսությունից։ Այդպիսի հերոսության դժվարությունն ու տոկունությունը պայմանավորված էին նրանով, որ առանց դրա չէր կարելի վերջ դնել ընդհանուր քայքայմանն ու կազմալուծմանը։ Այդպիսի հերոսությունը ոչ պակաս չափով պայմանավորված էր նաև նրանով, որ միայն անձնուրաց աշխատանքի ու համառության շնորհիվ կարելի էր վերջ տալ աշխատավոր մարդու օտարմանը և անհատապաշտության շատ սովորույթներին, անհատական և ընդհանուր, «իմ» և «կոլեկտիվի» և, մանավանդ, համաժողովրդական շահերի սահմանափակ ըմբռնմանը։ Ոչ թե մեկ պոռթկումով, ոչ թե իներցիայով, այլ օրը օրին և գիտակցաբար անձնազոհություն ցուցաբերելը լուրջ, չափազանց դժվարին գործ է, որը պահանջում է կամք, համառություն, կշռադատված նպատակասլացություն և, որ գլխավորն է, ֆիզիկական ու հոգևոր ուժերի ամենօրյա լարում։ Այդպիսի մասսայական և «առօրյա» հերոսությունը պահանջում է նաև մեծ կազմակերպվածություն և, մասնավորապես, մասսայական գործիմացություն։ Հերոսության առօրեականությունը, մի տեսակ վերացնելով նրա ռոմանտիկությունը, դառնում էր մարդկային վարքագծի, նրա բարոյական գեղեցկության յուրատեսակ նորմա։

Առաջներում, հատկապես նախամարքսիստական սոցիոլոգիան և գեղագիտությունը, հերոսականը դիտում էին բացառիկ արարքներում, հակադիր ուժերի բախումների մեջ, մարդկանց խմբերի և նույնիսկ առանձին անհատների գոտեմարտերում։ Եվ, պատահական չէ, որ նախամարքսիստական գեղագիտությունն իրականության ու արվեստի մեջ ողբերգականի տիպիկ ար-



տահայտություն էր համարում հերոսական գործը։ Հերոս անհատի տրագիզմը
և հերոսական գործողության կամ պոռթկման տրագիզմը դիտում էին որպես
ինքնին հասկանալի, գրեթե ճակատագրական բնույթի երևույթներ։ Հայտնի
է, որ հերոսականը և ողբերգականը անպայման չէ, որ ուղեկցում են մի-
մյանց. ամբողջ հարցը հերոսականի կատարման հանգամանքների մեջ է։
Հերոսականի լենինյան ըմբռնումը բացառում է «հերոս անհատի» և
«փոքր մարդու» հակադրումը։ Այդպիսի հակադրումը խորթ է մարքսիզմին,
այն իր էությամբ մետաֆիզիկական և հակապատմական է։ Ամեն մի ժողո-
վրդի պատմության մեջ անձնազոհ, իսկական հերոսական գործեր կատարել
են հասարակ, անհայտ մարդիկ, իսկ, այսպես կոչված՝ հերոս անհատները
եղել են ժողովրդի ռեալ շահերից ու ձգտումներից կտրված միայնակներ։
Բայց բանը միայն այդ չէ։ Մարքսիզմ-լենինիզմի համար կարևորը ոչ թե
այն է, թե ով է հերոսը, այլ այն, թե հանուն ինչի է կատարվում սխրագոր-
ծությունը։ Պատմության օբյեկտիվ ընթացքից կամ հանկարծակի ստեղծված
իրադրությունից ծնունդ առած իսկական հերոսականը միշտ էլ արտացոլում
է սոցիալական պրոգրեսի միտումները։
Լենինյան գաղափարների մեծ մարմնացումն են հանդիսանում սոցիալիս-
տական մրցության կեսդարյա պատմությունը և նրա նոր էտապը՝ «կոմունիս-
տական աշխատանքի համար» հարվածայինների մասսայական շարժումը։
Այդ շարժման մեջ օրեցօր և մասսայական մասշտաբով ի հայտ են գալիս
և ձևավորվում ժողովրդական նոր տաղանդներ, առաջ են քաշվում նոր հասա-
րակարգի նոր հերոսներ։
Միլիոնների ստեղծագործությունը մեր կյանքի բնորոշ գիծն է։ Այդ ստեղ-
ծագործությունն առանձնապես մեծ թափ է ստացել բանվորների, բազմազան
հասարակական-քաղաքական, գիտատեխնիկական գործունեության մեջ և,
մասնավորապես, արդյունաբերական գեղագիտության ոլորտում։ Միայն գե-
ղարվեստական ինքնագործունեությանը մասնակցում են 12 միլիոն մարդ։
Բազմազան են կոմերիտական ու երիտասարդական նախաձեռնության ձևերը,
որի մեջ հաջողությամբ զուգորդվում են ֆիզիկական և մտավոր աշխատանք-
ները։ Բարձրացել է մասսայական նախաձեռնության հասարակական մակար-
դակը, ավելի գիտակցական է դարձել մասսաների ստեղծագործությունը և
մեծ չափով ուժեղացել են նրա կազմակերպվածությունն ու նպատակասլացու-
թյունը։ «Օրինակը» և «օրինակելին», ինչպես Վ. Ի. Լենինն էր հասկանում,
մեր երկրում դարձել են չափազանց տարածված երևույթներ։ Այդ կապակ-
ցությամբ դրական օրինակի ուժն անընդհատ աճում է՝ բարոյա-դաստիարակ-
չական հսկայական ազդեցություն գործելով մարդկանց մեծ զանգվածների
վրա։ Արդի պայմաններում է՛լ ավելի անհաշտ պետք է լինել այն ամենի
նկատմամբ, ինչ խորթ է կոմունիստական շինարարությանը։
Սոցիալիստական ստեղծագործության բարոյա-գեղագիտական ասպեկտ-
ները սովետական բարոյագիտության ու գեղագիտության կարևոր և մշտա-
կան առարկան են։ Համապատասխան ուղղություններով կատարվող հետա-
զոտությունները կոչված են նպաստելու կոմունիստական շինարարությանը,
մասնավորապես, նոր մարդու դաստիարակմանը, ներդաշնակորեն զարգացած
անհատի ավելի ու ավելի հաջող ձևավորմանը։ Այդպիսի հետազոտություննե-
րը կարող են նպաստել նաև կոմունիստական հասարակարգի կառուցման
գեղարվեստորեն լիարյուն և բազմակողմանի վերարտադրմանը։

Մոսկվա

Գ. Ա. ԲՐՈՒՏՅԱՆ

# ՆԿԱՏԱՌՈՒՄՆԵՐ ԱՄԵՐԻԿՅԱՆ ԱՐԴԻ ՓԻԼԻՍՈՓԱՅՈՒԹՅԱՆ ՇՈՒՐՋ[1]

Ամերիկյան փիլիսոփաների շրջանում այն կարծիքն է տիրապետում, թե
փիլիսոփայությունը ԱՄՆ-ում գրեթե ավանդույթներ չունի: Ամերիկան «հայտ-
նագործողներին», «նոր երկիրը» նվաճողներին թվում էր, որ իրենց գործնա-
կան խնդիրները հեռու են փիլիսոփայությունից և կյանքի հորձանուտում
պետք է անել միայն այն, ինչ շահ է բերում: Հրապուրված լինելով դրանով,
նրանք չկարողացան ըմբռնել, որ նման բացասումը յուրօրինակ փիլիսոփա-
յություն է: Իսկ երբ հասկացան, շահով պայմանավորված փիլիսոփայությու-
նը ամերիկյան իմաստասերներն անվանեցին գործողության տեսություն,
«պրագմատիզմ»:

Պրագմատիզմը սկզբից ևեթ հանդես է եկել որպես ամերիկյան գործա-
րարների գործողության փիլիսոփայական արտահայտություն, նրանց նկրր-
տումների ու նպատակադրումների տեսական հիմնավորում: Այն հարյուրամյա
պատմություն ունի: 1870 թ. ամերիկյան Քեմբրիջ քաղաքում մետաֆիզիկա-
կան ակումբի անդամներ Պիրսը, Ջեմսը, Ռայտը, Ֆայսկը և ուրիշներ քննար-
կեցին այն գաղափարները, որոնք ութ տարի անց Պիրսի Ինչպես մեր գա-
ղափարները պարզեցնել հոդվածի թեման դարձան: Այդ հոդվածում առաջին
անգամ տեսականորեն հիմնավորվեց պրագմատիզմը: Սակայն գիտության
մեջ Պիրսին ճանաչում բերեց նրա ներդրումը սեմիոտիկայի և մաթեմատիկա-
կան տրամաբանության ասպարեզում:

Պիրսի համախոսները անվերապահորեն չընդունեցին իրենց նախորդի
գաղափարական հայացքները: Նրանցից Ու. Ջեմսը յուրովի մեկնաբանեց
պրագմատիզմի ելակետային դրույթը և ուշադրությունը հիմնականում կենտ-
րոնացրեց ճշմարտության և օգտակարության նույնացման սկզբունքին: Ամե-
րիկացիները սիրում են ասել, որ պրագմատիզմն առանց Ջոն Դյուիի «կաղբա-
տանար»: Վերջինիս կարծիքով, յուրաքանչյուր գաղափար, թեց մի բանալի
է, գործիք այս կամ այն իրավիճակի համար: Կարող են լինել լավ և վատ
բանալիներ, օգտակար կամ անօգտակար գործիքներ: Ուստի, պետք է խոսել
ոչ թե ճշմարիտ կամ կեղծ, այլ օգտակար կամ անօգտակար գաղափարների

1) Տպավորություններ վերջին հանդիպումներից:



ժասին: Եվ, ըստ Դյուիի, նման մեկնաբանությունն այն ստույգ նշանա-
կալից է փիլիսոփայության պատմության համար, որ նա պրագմատիզմի
յուրովի տարատեսակն անվանեց «ինստրումենտալիզմ» (կապելով գործիքի
հասկացության հետ):

Իր երկարատև ստեղծագործական կյանքի ընթացքում (Դյուին մեռավ
1952 թ. 93 տարեկան հասակում) նա ոչ միայն բազմաթիվ գրքերով գովազդեց
պրագմատիզմը (այժմ ԱՄՆ-ում հրապարակվում է նրա բազմահատորյակը),
այլև ականատեսը եղավ այն բանի, թե ինչպես իր հայրենիքում առաջացան
մի շարք փիլիսոփայական դպրոցներ՝ ռեալիզմ, նեոռեալիզմ, քննադատական
ռեալիզմ, նատուրալիզմ և այլն: Սակայն դրանցից և ոչ մեկը պրագմատիզմի
համար լուրջ մրցակցության վտանգ չներկայացրեց:

Այսօր փիլիսոփայական այդ հոսանքների մասին կարելի է խոսել միայն
պատմական տեսանկյունից: Մի ամբողջ դար ԱՄՆ-ում իրար հաջորդած տար-
բեր փիլիսոփայական դպրոցներից 1970 թ. միայն պրագմատիզմն է, թեկուզ
և հնամաշ, որ շարունակում է իր գոյությունը: Սակայն վերջինիս նկատմամբ
թուլացել է վաղեմի ուշադրությունը: Փիլիսոփայական դպրոցի համար, ստեղ-
ծագործական պրոցեսի տեսակետից, հարյուր տարին մեծ ժամանակահատ-
ված չէ, բայց պրագմատիզմը բարոյապես ծերացել է: Չէ՞ որ դժվար է միշտ և
բոլորի գիտակցությանը ներարկել այն, թե ճշմարտությունը ոչ այլ ինչ է,
քան օգտակարությունը: Նման ըմբռնումը վերացնում է տարբերությունները
ճշմարտության և կեղծիքի միջև: Կեղծիքն էլ որոշակի պայմաններում առան-
ձին մարդկանց կարող է օգուտ բերել: Տեղին է հիշել ԱՄՆ-ի ամենանշանավոր
պրեզիդենտներից մեկի՝ Լինկոլնի հանրահայտ խոսքերը. «Դուք կարող եք
որոշ մարդկանց միշտ խաբել ու բոլոր մարդկանց խաբել մի որոշ ժամանակ,
բայց չեք կարող բոլորին միշտ խաբել»:

Ներկայումս ամերիկյան փիլիսոփայական կյանքում առաջացել են նոր
դպրոցներ, որոնց օրավուր աճող ազդեցությունը ետ է մղում պրագմատիզմը:
Այդ դպրոցներից կարևոր են տրամաբանական պոզիտիվիզմը և լեզվաբանա-
կան փիլիսոփայությունը:

Տրամաբանական պոզիտիվիզմը ամերիկյան երևույթ չէ, այն ներմուծվել
է Ավստրիայից ու Գերմանիայից, երբ ԱՄՆ բնակություն հաստատեցին ֆա-
շիստների հետապնդումներից ազատված Ռ. Կառնապը, Հ. Ռեյխենբախը, Ֆ.
Ֆրանկը, Ռ. վան Միսեսը, Հ. Ֆեյգլը, Կ. Հեմպելը և ուրիշները: Լեհաստանից
ԱՄՆ եկավ նաև հայտնի տրամաբան Ա. Տարսկին: Հատկանշական է նաև այն,
որ ամերիկյան համալսարանները գումար չեն խնայում տարբեր երկրներից
«ուղեղներ գնելու» համար: Դա նկատվում է գիտության բոլոր բնագավառնե-
րում: Բացառություն չի կազմում նաև փիլիսոփայությունը: Բավական է ասել,
որ անգամ Անգլիայից նրանց հաջողվել է ԱՄՆ հրավիրել Ս. Հյամպշիրին, որն
արդեն 1969 թ. ամերիկյան փիլիսոփայական ասոցիացիայի արևելյան բա-
ժանմունքի նախագահն էր:

Փիլիսոփաները տարբեր երկրներից ԱՄՆ տեղափոխվելով, աշխատում են
հարմարվել տեղի պայմաններին: Փիլիսոփայական մտահղացումները ևս նոր
միջավայրում «ամերիկացվում» են: Հրապարակվել են մի շարք աշխատու-
թյուններ, որոնցով փորձ է արվում տրամաբանական պոզիտիվիզմի գաղա-
փարների նախատիպը տեսնել պրագմատիզմում: Ազգակցություն է հաստատ-
վում Վիեննական խմբի որոշ փիլիսոփայական մեկնաբանությունների և ամե-
րիկյան ֆիզիկոս Պ. Բրիջմենի օպերացիոնալիզմի միջև և այլն:

Լեզվաբանական փիլիսոփայությունը, որ ԱՄՆ-ում այժմ պրոպագանդում են Մ. Բլեկը, Ն. Մելկոլմը, Մ. Լազարևիցը և ուրիշներ, միայն մասնակի հարցերի մեկնաբանությամբ է տարբերվում տրամաբանական պոզիտիվիզմից։ Ըստ էության, բնորոշը երկուսի համար էլ այն է, որ փիլիսոփայության քննարկման առարկան հայտարարվում է լեզուն, լեզվի վերլուծությամբ է մեկնաբանվում փիլիսոփայական կարևոր հարցերի բնույթը։ Տրամաբանական պոզիտիվիզմը լեզուն դիտում է իբրև ձևական համակարգ, հաշիվ, այսինքն՝ դիտարկում է արհեստական լեզուները, իսկ լեզվաբանական փիլիսոփայությունն զբաղվում է բնական լեզվի վերլուծությամբ։ Հաճախ, անտեսելով տարբերությունը տրամաբանական պոզիտիվիզմի և լեզվաբանական փիլիսոփայության միջև, ամերիկյան փիլիսոփաները այդ երկու դպրոցները ներկայացնում են «անալիտիկ փիլիսոփայություն» ընդհանուր անվան տակ։

Ամերիկյան որոշ փիլիսոփաներ այն աստիճան են մտել լեզվի փիլիսոփայական վերլուծության տարերքի մեջ, որ ենթադրում են, թե միակ իրական փիլիսոփայությունը կարող է լինել անալիտիկ։ Այդ տեսակետն է պաշտպանում հայտնի փիլիսոփա Դոնալդ Դևիդսոնը։

Լեզուն փիլիսոփայական հետազոտությունների առարկա է եղել դեռևս Հին աշխարհում։ Սակայն մեր ժամանակաշրջանում փիլիսոփաների կողմից լեզվի նկատմամբ բուռն հետաքրքրասիրությունն աննախընթաց է և ունի իր տեսական-իմացական պատճառները։ Գիտությունների զարգացումը պահանջում է յուրաքանչյուր դեպքում մշակել տվյալ բնագավառի կոնկրետ և ստույգ լեզվական համակարգ։ Գիտական միտքն այդ առումով հետաքրքրական պըրպըտումների մեջ է, որոնք հաճախ հանգում են գոհացուցիչ արդյունքների։ Գիտության լեզուների բուռն զարգացումն իր հերթին առաջադրում է բնական և արհեստական լեզվի փոխհարաբերությունների հարցը, որն ինքնըստինքյան փիլիսոփայության իրավասության մեջ է մտնում։ Լեզվի նկատմամբ փիլիսոփայական մոտեցումից բխում են մի շարք հետաքրքրական հարցեր, որոնց հետազոտությունը և լուծումը, անշուշտ, գիտական մեծ արժեք կունենա։ Լեզվի նկատմամբ հետաքրքրությունը, սակայն, չի սահմանափակվում միայն փիլիսոփայական-իմացաբանական շրջանակներով։ Լեզվի դերը հասարակության կյանքում, նրա ազդեցությունը վարքագծի վրա, աջակցությունն այս կամ այն փիլիսոփայական տեսության տարածմանը և նման բազմաթիվ այլ հարցեր իրենց վրա են բևեռել սոցիոլոգների ուշադրությունը։ Այժմ լեզվի սոցիոլոգիան, լեզվի փիլիսոփայության հետ միասին, գիտական հետազոտությունների կարևոր պրոբլեմ է համարվում։

Այս հանգամանքը յուրովի են օգտագործում ամերիկյան որոշ փիլիսոփաներ ու սոցիոլոգներ։ Նրանք փորձում են հասարակական կյանքի բոլոր ընդվզումները բացատրել լեզվական գործոններով, որը, ըստ էության, սոցիալական պրոբլեմների լուծման սխալ առաջարկ է։

Անալիտիկ փիլիսոփայությունն ԱՄՆ-ում, ի դեպ, ինչպես և Անգլիայում, այսօր, հիրավի, ավելի տարածում է գտել, քան ցանկացած այլ փիլիսոփայական դպրոց։

Եվրոպական փիլիսոփայական հոսանքներից ԱՄՆ-ում բարեբեր հող են գտել նաև էքզիստենցիալիզմը, ֆենոմենոլոգիան, նեոթոմիզմը, որոնք ազդեցության տեսակետից, անշուշտ, զիջում են անալիտիկ փիլիսոփայությանը։

Կիբեռնետիկան ու տիեզերագիտությունը, ժամանակակից գիտատեխնիկական առաջընթացը որոշակի կնիք են դրել նաև փիլիսոփայությամբ հրապուրվող ամերիկյան երիտասարդության վրա։ Վերջին տարիների ընթացքում ամերիկյան համալսարաններում առանձնապես հարգի էր մաթեմատիկական տրամաբանության ուսումնասիրությունը։ Դրան նպաստում էր նաև այն հանգամանքը, որ ԱՄՆ-ի համալսարաններում են գործում հանրահայտ մաթեմատիկոսներ ու տրամաբաններ Կուրտ Գյոդելը (Պրինստոն), Ալֆրեդ Տարսկին (Բերկլի), Ռուդոլֆ Կառնապը (Լոս-Անջելոս), Հաո Վանգը (Նյու-Յորք) և այլոք։

Ամերիկյան շատ փիլիսոփաներ, ինչպես Հարվարդի համալսարանի պրոֆեսոր Քուայնը, միակ փիլիսոփայությունը համարում են գիտության փիլիսոփայությունը։ Նման եզրակացությունը պայմանավորված է դարձյալ ժամանակակից գիտությունների աննախընթաց զարգացմամբ, որը որոշ փիլիսոփաների հանգեցնում է միակողմանի ընդհանրացումների։

Չնայած այս բոլորին, ամերիկյան փիլիսոփայական միտքը հղի է արժեքների վերագնահատմամբ։ Մեր օրերում ամերիկյան փիլիսոփաների երիտասարդ սերունդը, նրանք, ովքեր նոր են ձեռնադրվում փիլիսոփա կամ փորձում ուսումնասիրել փիլիսոփայությունը, առաջին հերթին, հետաքրքրվում են հասարակական կյանքի հարցերով, սոցիալական փիլիսոփայությամբ, էթիկայի պրոբլեմներով։

Դա սոսկ հետաքրքրասիրություն չէ։ Հենց ամերիկյան կյանքն այսօր երիտասարդությանն ստիպում է վերանայել սեփական հայացքները իրականության նկատմամբ, փիլիսոփայորեն վերաիմաստավորել այն, ինչ կատարվում է իր շուրջը, իր հետ։ Ամերիկյան բոլոր քաղաքներում, հատկապես տոնական օրերին, կարելի է դիտել հետևյալ պատկերը։ Կանգնած են փողոցներում խումբ-խումբ մարդիկ, ձեռքներին մոմեր։ Խմբից մեկը բարձրաձայն ասում է որևէ ազգանուն, մյուսը պատասխանում՝ «Ծնվել է Նյու-Յորքում, Նյու-Յորքի նահանգ, սպանվել Վիետնամում»։ Մարում է օտար ափերում զոհված երիտասարդի մոմը։ Եվ այսպես ամբողջ օրեր. տարբեր քաղաքներում նույն հանգած մոմերը, նույն սգացող Ամերիկան... Ամենուր մի հարց. բարոյակա՞ն է արդյոք, որ կյանքով լեցուն ու կյանքի ծարավ, դեռևս կյանք չմտած երիտասարդ ամերիկացին պետք է ընկնի վիետնամական հողում, հաճախ չհասկանալով, թե ինչու, չըմբռնելով կյանքի իմաստը։ Ամերիկյան համալսարաններում այսօր սոցիալական փիլիսոփայության, էթիկայի պրոբլեմների շուրջ տաք բանավեճեր են լինում։ Թերևս դրանք պատասխանեն թե ինչու։

Արդի ԱՄՆ-ում բոլորն էլ զգում են, որ ինչ-որ մի բան սխալ է «նոր աշխարհում»։ Երիտասարդությունն այդ խորապես ու ցավագին է ընկալում։ Դըրսևորումները տարբեր են։ Որոշ պատանիներ ու երիտասարդներ չհամակերպվելով գոյություն ունեցող իրավիճակին, թողնում են հայրենի տունը, ապրում քոչվորի նման, նախընտրում թափառական կյանքը, մարտահրավեր նետում քաղաքակրթության բոլոր ձևերին ու եղանակներին։ Նրանք, այսպես կոչված՝ հիպիներն են, որոնց շարժումը հաճախ ստանում է այլանդակ ձևեր. նրանք կյանքի մոռացության են հասնում հաշիշի և այլ թմրեցուցիչների միջոցով։

Ամերիկյան երիտասարդության առավել գիտակից մասը իր բողոքը ստեղծված իրավիճակի նկատմամբ արտահայտում է ցույցերով, ըմբոստ ելույթներով, փորձում ակտիվ պայքարով վերափոխել այն շրջապատը, որտեղ ապրում է և գործում։ Այդ պայքարին մասնակցում են շատ երիտասարդ փիլիսոփաներ և պայքարի բովում կերպարանափոխվում է նրանց աշխարհայացքը։ Այլ կերպ չէր կարող լինել։ Կյանքը, պրակտիկան եղել և մնում են որպես մարդկանց գաղափարների ճշմարտության ամենազորեղ չափանիշը։

Կալիֆոռնիայի քոլեջներից մեկի պրեզիդենտը անալիտիկ փիլիսոփայության տարատեսակ ընդհանուր սեմանտիկայի հայտնի ներկայացուցիչ Սամուել Հայակավան է։ Իր շատ գրքերում ու հոդվածներում նա անալիտիկ փիլիսոփայության այն սխալ թեզն է քարոզում, թե կյանքի ամենաբազմազան բնագավառների բոլոր դժվարությունները լեզվական բնույթի են։ Ձեր ընտանիքում վե՞ճ կա։ Կարող եք համաձայնության գալ, եթե պարզեք այն բառերի ու դարձվածքների իմաստը, որ օգտագործվում են վիճաբանելիս։ Տարբեր խմբերի միջև հասունանում է սոցիալական բախո՞ւմը։ Կարող եք խուսափել կոնֆլիկտից, եթե ուշադրությամբ վերլուծեք լեզվական դարձվածքները, բառերը, նախադասությունները, որոնք արտահայտում են ձեր տարաձայնությունների իմաստը։ Այդ ձևով վարվեք նաև միջազգային հարաբերություններում և ընդհանրապես կյանքի բոլոր բնագավառներում։

Այս է սովորեցնում ընդհանուր սեմանտիկան։

1968 թվականին Սան-Ֆրանցիսկոյում, որի պետական քոլեջում պրոֆեսորական գործունեությամբ է զբաղված Ս. Հայակավան, տեղի ունեցան ցույցեր, հուզումներ։ Համալսարանների, քոլեջների ուսանողներն ու դասախոսները, ինչպես և փիլիսոփաները «դասախոսությունները» տեղափոխեցին փողոց. դուրս եկան՝ ձեռքներին լոզունգներ։

Շատ հարցեր էին հուզում ցուցարարներին։ Նրանք դեմ էին և՛ Վիետնամում ամերիկացիների մղած պատերազմին, և՛ ռասայական խտրականությանը, և՛ տարբեր բնույթի սոցիալական անարդարություններին։ Ցույցերը շարունակվեցին նաև 1969 թվականին։ Իշխանություններն անհանգստացած էին։ Քոլեջի պրեզիդենտը չէր կարողանում խաղաղեցնել ուսանողներին ու դասախոսներին։ «Ուժեղ ձեռքի» կարիք էր զգացվում։ Եվ պրեզիդենտ Նիքսոնի խորհրդատուներն ու չինովնիկները նկատեցին պրոֆեսոր Հայակավային. խախտելով «ամերիկյան դեմոկրատիայի» կանոնները, առանց ընտրության, պրեզիդենտի աթոռին նստեցրին նրան։ Վերջինս չհուսախաբեցրեց իր հովանավորներին։ Քոլեջի իրեն հատկացված առանձնասենյակում նա կախեց պրեզիդենտ Նիքսոնի հետ իր մտերմական, ջերմ զրույցի պահը պատկերող նկար՝ լակոնիկ և ազդու իր համակրանքն ու հակակրանքը ցուցադրելու համար։

Այնուհետև, ամենևին մոռանալով, որ տարաձայնությունների դեպքում, ըստ իր քարոզած փիլիսոփայության, պետք է դիմել լեզվական դարձվածքների, բառերի մեկնաբանման, բարվոք համարեց դիմել ոստիկանության օգնությանը։ Կյանքը մերժեց «բառերի փիլիսոփայության» մոգականությունը։ Ոստիկանական մահակներն ավելի զորեղ գտնվեցին, որոնց միջոցով նա ամրապնդեց քոլեջի պրեզիդենտի իր տեղը, համարվեց երկրի պրեզիդենտին նվիրված, համախոհ անձնավորություն և նորից սկսեց զբաղվել ընդհանուր սեմանտիկայով։ Այժմ նա զարմանում է, որ իր քոլեջում ոչ մի փիլիսոփա չի հետևում ընդհանուր սեմանտիկային։

1970 թվականի նոր տարվա նախօրյակին Նյու-Յորքի նշանավոր հյուրանոցներից մեկում՝ Վալդորֆ-Աստորիայում հավաքվել էին շուրջ 2100 փիլիսոփա— տարբեր տարիքի և հայացքների տեր մարդիկ։ Նրանք եկել էին մասնակցելու ԱՄՆ-ի փիլիսոփայական ասոցիացիայի արևելյան բաժանմունքի տարեկան նստաշրջանին։ Նախատեսված էր երեք օրվա ընթացքում լսել մոտ 140 զեկուցում և ընդդիմախոսություն։ Ելույթները նվիրված էին փիլիսոփայության ամենատարբեր բնագավառներին։ Եվ, այնուամենայնիվ, փիլիսոփաների կրքերը բորբոքեցին ո՛չ թե պաշտոնական զեկուցումներն ու ընդդիմախոսությունները, այլ այն բանաձևերի քննարկումը, որոնք առաջադրել էին մի խումբ երիտասարդ դասախոսներ։



Դեռևս համաժողովից առաջ այդ փիլիսոփաները շրջաբերական էին տարածել, որով ասոցիացիայի անդամները հրավիրվում էին քննարկելու մի շարք բանաձևեր։ Այդ շրջաբերականն սկսում էր հետևյալ խոսքերով. «Մենք շահագրգռված ենք Միացյալ Նահանգների իմպերիալիզմի, ռասիզմի, կանանց ճնշման, աշխատավոր մասսաների շահագործման և այլ անարդարությունների դեմ մղվող պայքարում»։ Շրջաբերականը, առաջին հերթին, փիլիսոփաների ուշադրությունն էր հրավիրում այն բանաձևի վրա, որը դատապարտում էր ամերիկյան իմպերիալիզմի քաղաքականությունը Վիետնամում։ Ահա այդ բանաձևը.

«Պատերազմը Վիետնամում, նրա պատճառները և հետևանքները, որոնցով այն կարող է ավարտվել, բարոյական և քաղաքական պրոբլեմ է։ Ուստի, ամերիկյան փիլիսոփայական ասոցիացիայի անդամները պետք է հատուկ ուշադրություն դարձնեն այդ պրոբլեմների վրա, ինչպես որպես փիլիսոփաներ և դասախոսներ, այնպես էլ որպես քաղաքացիներ։ Պատերազմական գործողությունների գլխավոր թատերաբեմը հեռու է, բայց նրա հասցրած կործանումներն ու չարիքը ամեն օր զգացվում են այնտեղ, որտեղ ապրում և աշխատում են ԱՓԱ-ի (ամերիկյան փիլիսոփայական ասոցիացիայի—Գ. Բ.) անդամները։

Պատերազմը Վիետնամում մի ողբերգական պատահական դեպք չէ, ինչպես ոմանք փորձում են այն ներկայացնել, այլ արտաքին քաղաքականության ուղղակի հետևանք, քաղաքականություն, որի հիմնական նպատակն է՝ ամերիկյան ձեռնարկատերերի համար ապահով պահպանել հողագնդի մեծ մասը։ Միացյալ Նահանգների կառավարությունը Վիետնամում հենց այդ նպատակն է հետապնդում, չնայած նրա այն հավաստիացումներին, թե պատերազմի վիետնամացումը կհանգեցնի խաղաղության հաստատմանը։ Փարիզի բանակցությունների նպատակն է՝ խաբել ամերիկյան ժողովրդին և նրա մեջ այն տպավորությունն ստեղծել, թե իբր Միացյալ Նահանգները ջանում են վերջ տալ Վիետնամի պատերազմին, այն դեպքում, երբ այդ միտումով ոչ մի փորձ չի արվում, փնտրում են պրոբլեմի այնպիսի լուծում, որն ապահովի ամերիկյան ձեռնարկությունների անձեռնմխելիությունը Վիետնամում և Հարավ-արևելյան Ասիայում։

Մենք, ելնելով երեք նկատառումներից, դեմ ենք Միացյալ Նահանգների արդի արտաքին քաղաքականության նպատակներին.

1. Միացյալ Նահանգների տնտեսական միջամտությունն աշխարհի տարբեր մասերում, հատկապես քիչ զարգացած երկրներում, մեծացնում է այդ երկրների աշխատավորների շահագործումը և, հետևաբար, հակասում նրա շահերին։ 2. Միացյալ Նահանգների տնտեսական միջամտությունն աշխարհի տարբեր մասերում հակասում է նաև իրենց՝ ամերիկացիների գերակշռող մասի շահերին։ 3. Միացյալ Նահանգների տնտեսական միջամտությունն աշխարհի տարբեր մասերում ժողովրդական ապստամբությունների ճնշման անհրաժեշտությունն է առաջ բերում՝ սկսած բացահայտ ռազմական միջամտությամբ ու վերջացրած ԿՀՎ-ի գաղտնի գործողություններով։ Մենք դեմ ենք նման կարգի ամեն ճնշման։

Ելնելով ամերիկյան փիլիսոփայական ասոցիացիայի արևելյան բաժան-

մունքի նշած այս նկատառումներից, մենք հանդես ենք գալիս ինչպես պատերազմի վիետնամացման դեմ, այնպես էլ վիետնամական ժողովրդի ապագայի շուրջ բանակցություններ վարելու համար Միացյալ Նահանգների իրավունք ունենալու պահանջի դեմ։ Դրա փոխարեն մենք պաշտպանում ենք առաջարկը՝ Վիետնամից ամերիկյան բոլոր ուժերն ամբողջությամբ դուրս բերել այնպիսի արագությամբ, որ կարող են իրականացնել նավերն ու ինքնաթիռները»։

Այս բանաձևի նախնական քննարկման ժամանակ երիտասարդ փիլիսոփաները՝ բանաձևի հեղինակները և պաշտպանները, նշում էին, որ իրենք ո՛չ կոմունիստներ են և ոչ էլ մարքսիստներ, ամերիկյան իմպերիալիզմի ռեակցիոն քաղաքականության մերկացման անհրաժեշտությանն են հանգել ռեալ կյանքի երևույթների վերլուծության հիման վրա, իրական դեպքերի ազդեցության տակ։

Հարվարդի համալսարանի երիտասարդ պրոֆեսոր Պուտնամը և նրա համախոհները ասոցիացիայի ընդհանուր գործնական ժողովի մասնակիցների առջև ունեցած իրենց ելույթում համոզիչ կերպով ցույց տվեցին բանաձևն ընդունելու անհրաժեշտությունը։ Բանաձևի դեմ հանդես եկան ամերիկյան ռեակցիոն փիլիսոփաների պարագլուխ Ս. Հուկը (Նյու-Յորքի համալսարան), Է. Նագելը (Կոլումբիայի համալսարան), Հ. Ֆրանկֆուրտը (Ռոկֆելլերի համալսարան) և ուրիշներ։ Գովերգելով Միացյալ Նահանգների կառավարության արտաքին ու ներքին քաղաքականությունը՝ Հուկն ամեն կերպ ձգտում էր մերժել բանաձևը։ Չկարողանալով որևէ լուրջ փաստարկ բերել բանաձևի դեմ, նրա հակառակորդները սպառնում էին, թե բանաձևի ընդունումը ասոցիացիան կվերածի քաղաքական կազմակերպության և որպես այդպիսին, ԱՄՆ-ում գոյություն ունեցող կարգի համաձայն, պետք է պարբերաբար զգալի հարկ վճարի իշխանություններին։ Բանաձևի կողմնակիցներին այդ չշփոթեցրեց։ Նրանք հեշտությամբ կարողացան մերկացնել հետադեմ փիլիսոփաների սոփեստական այդ հնարքը, դիմելով օրենսդրական համապատասխան հոդվածների վերլուծության։

Որոշ փիլիսոփաներ փորձում էին քողարկվել «ակադեմիական ազատությամբ»։ Նրանց պնդմամբ, ամերիկյան փիլիսոփայական ասոցիացիան ակադեմիական հիմնարկ է, այն ազատ է քննելու յուրաքանչյուր գիտական հարց, սակայն, իրավասու չէ խառնվելու երկրի քաղաքական խնդիրներին։ Ի պատասխան նման կոչերի, առաջադեմ փիլիսոփաները ասոցիացիայի անդամներին հիշեցրին Գերմանիայում ֆաշիզմի իշխանության նվաճման դառը փորձը։ Ֆաշիզմի ժամանակավոր հաղթանակի պատճառներից մեկը նրանք համարեցին գերմանացի գիտնականների զգալի մասի պասսիվությունը, ֆաշիզմի դեմ ժամանակին պայքարելուց խուսափելը, «ակադեմիզմով» տարվելը։

Երբ ռեակցիոն փիլիսոփաներն զգացին իրենց փաստարկների սնանկությունը և մոտալուտ պարտության դառնությունը, սկսեցին դիմել բացահայտ սպառնալիքի։ Կոլումբիայի համալսարանի պրոֆեսոր Պ. Կրիստելլերեն ուղղակի հայտարարեց, որ եթե բանաձևն ընդունվի, նա դուրս կգա ամերիկյան փիլիսոփայական ասոցիացիայից։ Ս. Հուկը և նրա համախոհները բանաձևը տապալելու նպատակով ընտրեցին բազմաելույթների տակտիկան։ Յուրաքանչյուր հռետորից հետո Ս. Հուկը ձայն էր պահանջում, որի օրինակին հետևեցին նրան ձայնակից փիլիսոփաները։ Վիճաբանության նման բնույթից խուսափելու նպատակով, որոշ փիլիսոփաներ առաջարկեցին ինչ-որ չափով



մեղմացնել քննարկվող բանաձևը։ Առաջին նախադասությունից ջնջվեց «քաղաքական» բառը, բանաձևից դուրս մնացին նաև Վիետնամում ամերիկյան պատերազմի բնույթի և ԱՄՆ-ի կառավարող շրջանների արտաքին քաղաքականության մերկացումները։ Այդ ձևով և որոշ ոճական փոփոխություններով բանաձևն ընդունվեց ամերիկյան փիլիսոփայական ասոցիացիայի արևելյան բաժանմունքի ընդհանուր ժողովի կողմից։ Բանաձևի ընդունումը բոլոր դեպքերում ամերիկյան առաջադեմ փիլիսոփաների լուրջ հաղթանակն էր։ Չնայած Հուկի գլխավորած ռեակցիոն փիլիսոփաների գործադրած ջանքերին, բանաձևը դատապարտեց Միացյալ Նահանգների պատերազմը Վիետնամում և կոչ արեց Վիետնամից դուրս բերել ամերիկյան բոլոր ուժերը։

Վիետնամում ամերիկյան պատերազմի դեմ բանաձևը կենտրոնական տեղ գրավեց ամերիկյան փիլիսոփաների տարեկան նստաշրջանում։ Սակայն այդ միակ բանաձևը չէր, որ ներկայացրել էին ամերիկյան առաջադեմ փիլիսոփաները։ Քննարկման ներկայացված բանաձևերից մեկը վերաբերում էր գոյություն ունեցող իրավիճակում ամերիկյան համալսարանների դերին։ Այդ բանաձևում նշվում էր, որ ԱՄՆ-ում տիրապետում է անարդարացի սոցիալական և տնտեսական համակարգ։ Ամերիկյան առաջադեմ փիլիսոփաներն իրենց բանաձևով ըմբոստանում էին այն բանի դեմ, որ կառավարության պաշտոնական քաղաքականությունը հովանավորում է ռազմամթերք արտադրող և նման կարգի կորպորացիաների շահույթները՝ ի վնաս բնակելի շենքերի կառուցման, աշխատավորների վիճակի բարելավման և այլն։ Այդ քաղաքականությունը, բանաձևի բնութագրմամբ, ուղղված է ինչպես Ամերիկայի բոլոր ազգությունների ժողովուրդների, այնպես էլ նրա սահմաններից դուրս ապրող ժողովուրդների, մասնավորապես, աշխատավորական մասսաների շահերի դեմ։ Բանաձևը կոչ էր անում ամերիկյան համալսարաններին՝ նման իրավիճակում չդառնալ անարդարության գործիք, ոչ միայն չօժանդակել նշված քաղաքականության իրագործմանը, այլև գործուն պայքար մղել այդ քաղաքականության դեմ և, այլ մասնագիտական ընկերությունների հետ համատեղ, շարունակել պայքարն այնքան, մինչև վերջ տրվի բոլոր անարդարություններին։

Մեկ այլ բանաձև առաջարկում էր կարգավորել փիլիսոփայական կադրերի հարցը Միացյալ Նահանգներում։ Բանն այն է, որ երկրում մշտապես գոյություն ունեցող գործազրկությունն ընդգրկել է նաև փիլիսոփաներին։ Ամերիկյան տվյալների համաձայն երկրում այժմ դասավանդում են 8085 փիլիսոփա (այդ թվում 585 կին)։ Միևնույն ժամանակ, ամերիկյան համալսարանները տալիս են փիլիսոփաների նոր շրջանավարտներ, որոնք աշխատանքի տեղ չեն գտնում։ Աշխատանք չունեն նաև նախկինում համալսարաններն ավարտած շատ փիլիսոփաներ։

Վալդորֆ-Աստորիա հյուրանոցի մի մեծ սրահ համաժողովի օրերին վերածվել էր իսկական շուկայի, ուր երիտասարդ փիլիսոփաների առ ու ծախ էր։ Անվանի փիլիսոփաները սրահ էին մտնում՝ շրջապատված իրենց սաներով։ Համալսարանների ներկայացուցիչները նկարագրում էին թափուր տեղերը, հայտնում տեղի գինը։ Առ ու ծախը եռուն էր, բայց արդյունքը գոհացուցիչ էր շատ քչերի համար։

Երիտասարդ փիլիսոփաների բանաձևն առաջարկում էր կարգավորել կադրերի աշխատանքի նշանակման և նրանց հետ պայմանագրեր կապելու հարցը։ Այդ բանաձևի խորագիրն էր՝ «Կադրերի կոմպլեկտավորման ռեֆորմ»։ Իրոք

դա ռեֆորմի առաջարկություն էր, որը բոլոր դեպքերում չէր կարող լուծին վերացնել այն սոցիալական անարդարությունները, որ նշված էին առաջադեմ փիլիսոփաների բանաձևում:

Ընդհանուր համաժողովում առաջարկ եղավ դատապարտել Կալիֆոռնիայի համալսարաններից մեկի ղեկավարության անարդարացի վերաբերմունքը պրոֆեսոր Անջելա Դևիսի նկատմամբ: Դևիսի «հանցանքը» պաշտոնական մարմինների կարծիքով եղակի է: Նա կին փիլիսոփա է: Արդեն վերը հիշատակված բանաձևերը մատնանշում են կանանց շահագործումը, նրանց աշխատանքային պայմանների անհավասար վիճակը Միացյալ Նահանգներում: Դևիսը նեգր է: Ռասայական խտրականությունը և դրանից ածանցվող հարցերն այսօրվա ԱՄՆ-ի ամենացավոտ կողմերից են: Դևիսը կոմունիստ է: Այս հանգամանքն էլ լցրել էր Կալիֆոռնիայի համալսարանի կառավարող շրջանների համբերության բաժակը: Վախենալով հասարակական կարծիքից, այդ շրջանները չէին դիմել Դևիսի ուղղակի հեռացմանը համալսարանից: Նրանք այդ նպատակին, ըստ էության, հասել էին զարտուղի ճանապարհով: Ստուգարքից դուրս էին հայտարարել Դևիսի դասընթացը, շատ լավ գիտակցելով, որ այդպիսի դասընթացը դժվար թե հաճախեն ուսանողները: Եվ այս դեպքը բացառիկ չէ: Արդեն քանի տարի է, ինչ համալսարանական մշտական պրոֆեսորական գործունեությունից զրկված է Բ. Դանհեմը իր առաջադեմ հայացքների, այն բանի համար, որ նա քննադատել է երկրում տիրող ռեակցիոն գաղափարախոսությունը:

ԱՄՆ-ում փիլիսոփայական ամբիոններից զուրկ են առաջադեմ հայացքներ ունեցող փիլիսոփաները, մասնավորապես, կոմունիստները, մարքսիստական աշխարհայեցողության կողմնակիցները: Սակայն, չնայած դրան, երիտասարդ փիլիսոփաների շրջանում օրավուր աճում է հետաքրքրությունը մարքսիզմի հանդեպ: Այդ է պահանջում իրական կյանքը: Ուսանող երիտասարդությունը, երիտասարդ փիլիսոփաները, նկատելով սոցիալական կյանքում առաջացած փակուղիները, ցանկանում են ելք գտնել: Տիրապետող փիլիսոփայական դպրոցներն ի վիճակի չեն գոհացուցիչ մեկնաբանություններ տալու: Անգամ այնպիսի թերթ, ինչպիսին «Նյու-Յորք Թայմս»-ն է, ստիպված էր ամերիկյան փիլիսոփայական ասոցիացիայի արևելյան բաժանմունքի տարեկան համաժողովի իր հաշվետվության մեջ վկայակոչել Պրինստոնի համալսարանի փիլիսոփայության ասպիրանտ Մ. Տիտենմանի ելույթի հետևյալ խոսքերը. «...փիլիսոփայական մարքսիզմը— միակ լուրջ փիլիսոփայությունն է, որն ինչ-որ բան է ասում քաղաքականության մասին»:

Երկրի շատ համալսարաններում, այդ թվում և հանրահայտ Հարվարդի համալսարանում, դասընթացներ են կարդացվում մարքսիզմի վերաբերյալ: Այլ բան է, թե ինչպես են կարդացվում, որքան ճիշտ են ներկայացվում մարքսիզմի պրոբլեմները ուսանող երիտասարդությանը: Սակայն, բոլոր դեպքերում, այժմ արդեն հնարավոր չէ Միացյալ Նահանգներում լռության մատնել մարքսիստական փիլիսոփայությունը:

1962 թվականից ԱՄՆ-ում գոյություն ունի դիալեկտիկական մատերիալիզմի փիլիսոփայական ուսումնասիրության ընկերություն: Վերջինս գործում է ամերիկյան փիլիսոփայական ասոցիացիայի շրջանակներում: Ընկերության նախագահը ներկայումս Կալիֆոռնիայի արևմտյան համալսարանի պրոֆեսոր Ջոն Սոմերվիլն է, որը միևնույն ժամանակ «Սովետական փիլիսոփայական



հետազոտություններ» հանդեսի խմբագիրն է: Ընկերության փոխնախագահը Բրիջպորտի համալսարանի պրոֆեսոր Հովարդ Պարսոնսն է (պրոֆ. Պարսոնսը եղել է ընկերության առաջին նախագահը):

Ընկերության ոչ բոլոր անդամներն են մարքսիստներ: Իսկ իրենց մարքսիստ համարողներն էլ մարքսիզմը տարբեր ձևերով են մեկնաբանում: Չի կարելի ասել, թե ընկերությունն զգալի ազդեցություն ունի ամերիկյան փիլիսոփայական մտքի վրա: Միևնույն ժամանակ, դրվատանքի է արժանի ընկերության այն անդամների աշխատանքը, որոնք փորձում են շատ դժվարին պայմաններում ճշմարիտ խոսք ասել մարքսիստական փիլիսոփայության վերաբերյալ:

Դիալեկտիկական մատերիալիզմի փիլիսոփայական ուսումնասիրության ընկերությունը նախաձեռնում է սովետական գիտնականների դասախոսությունները ամերիկյան համալսարաններում: Ընկերությունը փիլիսոփայական ընկերությունների միջազգային ասոցիացիայի անդամ է: 1963 թ. Մեքսիկայում, XIII միջազգային փիլիսոփայական կոնգրեսի նիստերի օրերին, ընկերությունը կազմակերպեց ամերիկյան և սովետական փիլիսոփաների հանդիպում: Հանդիպման ընթացքում սովետական փիլիսոփաները պատմեցին մեր երկրի փիլիսոփայական կյանքի, գիտական հետազոտությունների մասին: Նման հանդիպումները հնարավորություն են տալիս ամերիկացիներին՝ ճիշտ պատկերացում կազմելու մեր փիլիսոփայության մասին:

1968 թ. Ավստրիայի XIV միջազգային փիլիսոփայական կոնգրեսի նստաշրջանի ընթացքում ընկերության ջանքերով պաշտոնական ծրագրի շրջանակներում տեղի ունեցավ հատուկ համագումար՝ «Մարդու բնույթը և խաղաղության հարցերը»: Իսկ 1969 թ. դեկտեմբերին ամերիկյան փիլիսոփաների արևելյան բաժանմունքի 66-րդ նստաշրջանում ընկերությունը կազմակերպեց վիճաբանություն՝ «Մարքսիզմը և «նոր ձախերը»» թեմայի շուրջ:

Ընկերության անդամները հրապարակում են բազմաթիվ գրքեր և հոդվածներ, որոնց գերակշռող մասը վերաբերում է արդիականության հրատապ հարցերին: Ընկերության նախագահ Ջ. Սոմերվիլը վերջին շրջանում ընթերցողների սեղանին է դրել Մարքսիզմը և պատերազմը, Արժեքի պրոբլեմը և մարքսիստական սոցիալական տեսությունը, ԱՄՆ-ի սահմանադրությունը և վիետնամական պատերազմը, Դեմոկրատիան և պատերազմի պրոբլեմը աշխատությունները:

Մարդու և հասարակության փոխհարաբերության հարցերին են նվիրված պրոֆ. Պարսոնսի հետազոտությունները: Նա քննարկում է, մասնավորապես, այնպիսի հարցեր, ինչպես՝ արժեքների տեսությունը, հումանիզմը, դեմոկրատիան, խաղաղ համագործակցությունը և այլն: Մարդկանց սոցիալական վերջնանպատակը, Հ. Պարսոնսի կարծիքով, անդասակարգ հասարակությունն է, որտեղ կիշխեն խաղաղությունը, դեմոկրատիան և հավասարությունը:

Ընկերության ակտիվ անդամներից է Ադելֆի համալսարանի պրոֆեսոր, փիլիսոփա և տնտեսագետ Պոլ Կրոսերը: Նրա անունը քաջ հայտնի է սովետական ընթերցողին: Պրոֆեսոր Կրոսերի՝ Ջոն Դյուիի նիհիլիզմը և Տնտեսագիտական ֆիկցիաներ՝ սուբյեկտիվիստական տնտեսագիտական տեսության քննադատություն գրքերը թարգմանված են մի շարք լեզուներով, ինչպես և ռուսերեն: Նրա որոշ հոդվածներ լույս են տեսել նաև «Вопросы философии» և «Философские науки» ամսագրերում: Պրոֆ. Կրոսերը մասնակցեց ամերիկյան փիլիսոփայական ասոցիացիայի արևելյան բաժանմունքի 66-րդ

նստաշրջանի քննարկումներին։ Իր ելույթում նա մերկացրեց Արևմուտքում աղմուկ հանած Հերբերտ Մարկուզեի ուսմունքի կեղծ-մարքսիստական բնույթը։ Հետաքրքրական էր նրա «նոր ձախերի» մասին ելույթը, որոնց նա անվանեց մանկական նիհիլիզմի և մանկական անարխիզմի գաղափարակիրներ։

1963 թվականից ԱՄՆ-ում գործում է «Մարքսիստական հետազոտությունների ամերիկյան ինստիտուտը», որն աշխատություններ է հրատարակում նաև մարքսիստական-լենինյան փիլիսոփայության վերաբերյալ (ԱՄՆ-ում մարքսիստական-լենինյան փիլիսոփայության մասին մանրամասն տե՛ս «Вопросы философии», 1970, № 3, էջ 62—74)։

Հուզումնալից շրջան է ապրում այսօր փիլիսոփայական Ամերիկան։ «Հին արժեքները», տիրապետող գաղափարախոսությունը, պաշտոնական մեկնաբանություններն այժմ շատերին և, առաջին հերթին, երիտասարդ սերնդին այլևս չեն բավարարում։ Նոր մտահղացումները, հատկապես առաջադեմ գաղափարները դժվարությամբ են իրենց համար ուղի հարթում։ Ամերիկյան սոցիալական կյանքի ողջ հակասություններն իրենց արտացոլումն են գտնում փիլիսոփայական վերաիմաստավորման մեջ։

Բայց, իհարկե, ԱՄՆ-ում տիրապետող գաղափարախոսության ներկայացուցիչների և մարքսիստ փիլիսոփաների գործունեության պայմաններն ու հնարավորությունները համեմատելն անգամ տարկալյալուրկ զբաղմունք է։ Միայն մի քանի փաստական տվյալներ։ Փիլիսոփայությունն ԱՄՆ-ում դասավանդվում է շուրջ 1815 քոլեջներում։ Եվ ոչ մի կոմունիստ փիլիսոփա ամբիոն չունի այդ քոլեջներից որևէ մեկում։ ԱՄՆ-ում այժմ փիլիսոփայության 8085 դասախոս է աշխատում քոլեջներում։ Եվ, դարձյալ, այդ հազարների շարքում ոչ մի կոմունիստ փիլիսոփա տեղ չունի։ Եվ, ահա, զգալով, որ ԱՄՆ-ի երիտասարդության ամենալայն շրջաններում աճում է հետաքրքրությունը դեպի մարքսիզմը, մարքսիստական փիլիսոփայության անվան տակ հաճախ քարոզվում է այնպիսի բան, որ ոչինչ ընդհանուր չունի կոմունիստական գաղափարախոսության հետ։





Յ. Տ. ՍԱՐԳՍՅԱՆ,
Վ. Ե. ԱՌՈՒՍՏԱՄՅԱՆ

Տեխնիկական գիտությունների թեկնածուներ

# ԳԻՏԱՏԵԽՆԻԿԱԿԱՆ ԱՌԱՋԱԴԻՄՈՒԹՅԱՆ ՈՒՂԻՈՎ

Ժամանակակից թվային մաթեմատիկական մեքենաները ընդամենը քառորդ դարից մի փոքր ավելի պատմություն ունեն։ Սակայն, չնայած այդ կարճ ժամանակամիջոցին, դրանք արդեն քաղաքացիական իրավունք են նվաճել և այսօր տեխնիկայի ամենաառաջատար ճյուղերից են։ Մաթեմատիկական մեքենաների երևան գալու հետ մեկտեղ արմատական փոփոխություններ կատարվեցին ո՛չ միայն պետությունների տնտեսական ու քաղաքական կյանքում, այլև բնության ու հասարակության վերաբերյալ մեր ունեցած պատկերացումներում։ Տնտեսական փոփոխությունների մասին պատկերացում կազմելու համար բավական է նշել, որ 1939 թ. էլեկտրոնային արդյունաբերությունն ԱՄՆ-ում գրավում էր 49-րդ տեղը, մինչդեռ հաշվային տեխնիկայի զարգացման շնորհիվ այն 1962 թ. արդեն 5-րդ տեղում էր, անմամ տեմպերով՝ առաջին։ Ներկայումս մի շարք զարգացած կապիտալիստական երկրներում՝ ԱՄՆ-ում, Ճապոնիայում և այլուր, ռադիոէլեկտրոնիկան արդյունաբերության առաջատար բնագավառն է։

Մաթեմատիկական մեքենայի ինացաբանական դերը նշանավորվեց նրանով, որ այն հիմք դրեց մի նոր գիտության՝ կիբեռնետիկայի— կառավարման գիտությանը։

Դյուրին չի եղել հաշվային տեխնիկայի անցած ուղին։ Նրա շուրջը ծավալված վիճաբանությունը մինչև օրս շարունակվում է։ Նույնիսկ եղել են մեծանուն գիտնականներ, որոնք թերահավատությամբ են նայել նրա ապագային։ Սակայն, ինչպես ասում են, կյանքն իրենն է վերցնում. այժմ այլևս ոչ ոք չի կասկածում մաթեմատիկական մեքենաների անհրաժեշտությանն ու կարևորությանը։ Արդեն դասական են դարձել նրա տեսական հիմքերը, իսկ ստեղծված և արտադրվող մեքենաների տարատեսակները միայն Սովետական Միությունում անցնում են հարյուրից։

ՄԱԹԵՄԱՏԻԿԱԿԱՆ ՄԵՔԵՆԱՆԵՐԻ ԵՐԵՔ ՍԵՐՈՒՆԴԸ։ Որպես մեծ կապիտալ ներդրումներ պահանջող բնագավառ, բնականաբար, էլեկտրոնային մաթեմատիկական մեքենաները ծնունդ առան զարգացած արդյունաբերական երկրներում՝ ԱՄՆ-ում, ՍՍՀՄ-ում, Անգլիայում։ Մի փոքր ուշացումով մեքենաներ ստեղծվեցին նաև Ֆրանսիայում, Ճապոնիայում, ԳՖՀ-ում և այլուր։ Մաթեմատիկական նոր մեքենաներ ստեղծելն առայժմ որոշ առումով մնում է տնտեսապես հզոր երկրների մենաշնորհը, սակայն, ուրախալի է, որ վերջերս, Սովետական Միության օգնությամբ, հաշվային տեխնիկան սկսել է արագ զարգանալ նաև ժողովրդադեմոկրատական երկրներում՝ Լեհաստանում, ԳԴՀ-ում, Բուլղարիայում։

Սկզբնական շրջանում մաթեմատիկական մեքենաները կառուցվում էին բացառապես էլեկտրոնային լամպերից, որոնք, ըստ էության, հնարավորություն ընձեռեցին դնելու ժամանակակից հաշվային տեխնիկայի հիմքերը։ Դրա ձևավորման սկզբնական շրջանում իսկ հիմնադրվեց Երևանի մաթեմատիկական մեքենաների գիտահետազոտական ինստիտուտը։ Այդ բնագավառում սկսնակ և անփորձ ինժեներները ձեռնամուխ եղան հայրենական նոր մաթեմատիկական մեքենաների ստեղծմանը։ Չկար ուրիշից սովորելու հույսը, բայց, դրա փոխարեն, կար մտածելու և հավակնալու մեծ ձգտում, ոգևորություն, երիտասարդա-

կան անսպառ եռանդ։ Ջուր չանցան ջանքերը, և 1960 թ. գարնանը պետական փորձարկիչների դատին հանձնվեցին «Արագած» ու «Երևան» լամպային մաթեմատիկական մեքենաները. փորձարկումները հաջողությամբ պսակվեցին, և դրանք մինչև այսօր բանում են երկրի զանազան քաղաքներում, պատվավոր տեղ գրավելով հայրենական առաջին սերնդի «ԲԷՍՄ», «Մ—20» և «Ուրալ»՝ իր ժամանակի առաջնակարգ մեքենաների կողքին։

Սակայն հաշվային տեխնիկայում շուտով վրա հասավ էլեկտրոնային լամպերի բարոյական մահը։ Այո՛, որքան էլ մեծ էր լամպերի դերը, դրանք միայն առաջին սերնդի մաթեմատիկական մեքենաների շինաքարերն էին։ Կյանքն առաջ է ընթանում, մեծանում են մեքենաներին ներկայացվող պահանջները, որոնք բավարարել անկարող են լամպերը։ Էլեկտրոնային լամպերին փոխարինեցին տրանզիստորները և կիսահաղորդչային դիոդները, որոնք դրեցին երկրորդ սերնդի մաթեմատիկական մեքենաների հիմքը։ Այս գործիքները լամպերից տասնյակ անգամ փոքր են, նույնքան անգամ պակաս էներգիա են ծախսում և ավելի հուսալի են։

Ինստիտուտում ժամանակին հոգացին կիսահաղորդչային գործիքների կիրառման համար։ Դա տվեց իր ցանկալի արդյունքը։ Մեքենաների չափերը զգալիորեն փոքրացան, մեքենաները դարձան առավել արագագործ ու հուսալի, հեշտացավ շահագործումը։ 1962 թ. գարնանը պետական հանձնաժողովին ներկայացվեց հայրենական երկրորդ սերնդի՝ կիսահաղորդչային առաջին մաթեմատիկական մեքենան՝ «Հրազդան—1»-ը, որը ցուցադրվեց ՍՍՀՄ ժողովրդական տնտեսության նվաճումների ցուցահանդեսում և արժանացավ Մեծ Ոսկե Մեդալի։ Հետագայում ստեղծվեցին «Հրազդան—3»-ը, «Նաիրին», «Մասիսը», «Դվինը» և այլ կիսահաղորդչային մեքենաներ, որոնք լայն ճանաչում բերեցին ինստիտուտին երկրում և արտասահմանում։ Շատ այդպիսի մեքենաներ այժմ մասսայաբար արտադրվում են Միության տարբեր քաղաքներում, իսկ «Հրազդանը» և «Նաիրին» կարելի է տեսնել մեր երկրի ամեն անկյունում և արտասահմանում։

Ուղին, կարծես, որոշված է, և մնում է միայն այդ ուղիով ընթանալ։ Սակայն գիտությունը դոգմաներ չի հանդուրժում և լավից լավին է ձգտում։ Դեռևս 60-ական թվականների սկզբներին գիտնականների մեծ մասը կանխագուշակում էր, որ մաթեմատիկական մեքենաների կատարելագործման համար տրանզիստորների և դիոդների հնարավորությունները մոտակա 5—6 տարում խիստ կնվազեն։ Եվ ահա այդ իսկ թվականների կեսերին պարզվեց, որ կիսահաղորդչային գործիքների հնարավորությունները սպառվում են։ Կյանքը նորանոր պահանջներ է ներկայացնում մաթեմատիկական մեքենաներին. դրանք պետք է ունենան ավելի մեծ հնարավորություններ, քիչ էներգիա ծախսեն, ավելի հուսալի լինեն և, ամենակարևորը՝ մեծ թվով մաթեմատիկական մեքենաներ են պետք։ Նույն 60-ական թթ. սկզբներին կիսահաղորդչային գործիքների պատրաստման տեխնոլոգիան աննախընթաց վերելք ապրեց, որը հնարավորություն ընձեռեց տրանզիստորի կամ դիոդի չափերն ունեցող կորպուսում իրացնել ամբողջական էլեկտրոնային սխեմա՝ կազմված մի քանի տասնյակ միկրոտրանզիստորներից, միկրոդիոդներից, միկրոդիմադրություններից և այլն։ Դրանք կոչվեցին ինտեգրալ սխեմաներ կամ պարզապես միկրոսխեմաներ, որոնք տասնյակ, նույնիսկ հարյուրավոր անգամ փոքր են տրանզիստորային սխեմաներից։ Նոր տեխնոլոգիան հնարավորություն տվեց ավտոմատացնելու սխեմաների պատրաստումը և, այսպիսով, ավելացնելու դրանց արտադրությունը։ Միկրոսխեմաները դարձան մաթեմատիկական մեքենաների երրորդ սերնդի հիմնաքարերը։

Մեր ինստիտուտը երկրում առաջիններից մեկը ձեռնամուխ եղավ երրորդ սերնդի՝ միկրոսխեմաներով մեքենաների մշակմանը։ Հաղթահարելով մի շարք դժվարություններ, ինստիտուտը մշակել է հայրենական երրորդ սերնդի մեքենաների առաջնեկը՝ «Նաիրի—3»-ը։

Հաջորդ՝ չորրորդ սերունդը սպասվում է մոտակա 5—6 տարում, որոնց հիմքերը՝ մեծ ինտեգրալային սիստեմները, ուրվագծվում են։

Տեխնիկական առումով մեծ հույսեր են կապվում ֆունկցիոնալ միկրոէլեկտրոնիկայի հետ, որի նպատակն է տրամաբանական և այլ ֆունկցիաներ իրականացնել ոչ թե դասական շղթաների, այլ պինդ մարմնի հատկությունների միջոցով։ Այստեղ արդեն չքանում են դասական սխեմատեխնիկայի գաղափարները՝ դիմադրություն, կոնդենսատոր, տրանզիստոր և այլ հասկացություններ կորցնում են իրենց իմաստը։ Սակայն այս ուղղությամբ դեռ չլուծված հարցեր կան, որոնց պատասխան պիտի տան պինդ մարմնի նոր ֆունդամենտալ ուսումնասիրությունները։

Տրամաբանական-կառուցվածքային տեսակետից մեծ ապագա է խոստանում ուղեղի բջջի՝ նեյրոնի ուսումնասիրությունը, որի վերջնական նպատակը ո՛չ միայն ուղեղի կառուցվածքը հասկանալն է, այլև նեյրոնի տեխնիկական իրականացման ճանապարհով մաթեմատիկական մեքենաների կատարելագործումը։



Գաղտնիք չէ, որ ստեղծված մեքենաները դեռևս շատ անկատար են ուղեղի համեմատությամբ։ Մասնագետների կարծիքով ուղեղի կառուցվածքի ուսումնասիրությունը շատ բան կտա։ Այդ ասպարեզում որոշ քայլեր արդեն արված են. ստեղծված են տրամաբանական տարրեր, այսպես կոչված՝ շեմային գրգռմամբ տարրեր, որոնք շատ կողմերով նման են ուղեղի բջջին՝ նեյրոնին։ Սակայն, նեյրոնային ցանցն առայժմ խոր ուսումնասիրությունների կարիք ունի։

Մաթեմատիկական մեքենաների կատարելագործման խոր հավատ է ներշնչում օպտիկական երևույթների և քվանտային ուժեղացուցիչների կիրառումը։

ՈՒՆԻՎԵՐՍԱԼ ԵՎ ԿԱՌԱՎԱՐՈՂ ՄԵՔԵՆԱՆԵՐ։ Ըստ կիրառման բնույթի մաթեմատիկական մեքենաները բաժանվում են երկու դասի՝ ունիվերսալ և կառավարող։

Ունիվերսալ մեքենաները ծառայում են մաթեմատիկական խնդիրներ լուծելու և բարդ ու ծավալուն հաշվումներ կատարելու։ Ունիվերսալ են կոչվում, որովհետև դրանցով կարելի է լուծել ցանկացած խնդիրը, եթե միայն հնարավոր է մաթեմատիկորեն ձևակերպել այն, այսինքն՝ կազմել նրա լուծման ալգորիթմը։

Ունիվերսալ մեքենաների հիմնական ցուցանիշներն են՝ արագագործությունը, հուսալիությունը, հիշողության ծավալը և այլն։ Արագագործությունը որոշվում է միավոր ժամանակում (սովորաբար մեկ վայրկյանում) կատարվող գործողությունների քանակով։ Ներկայիս կատարյալ մեքենաները կարող են մեկ վայրկյանում կատարել միլիոնավոր գործողություններ։ Այդպիսի մեքենաներն աշխարհում եզակի են՝ «ԲԷՍՄ—6» (սովետական), «Ստրետչ» (ամերիկյան), «Ատլաս» (անգլիական)։ Մասսայական արտադրության համար մշակվող մեքենաների արագագործության սահմանն առայժմ համարվում է մեկ վայրկյանում մինչև 100 հազար գործողությունը, որին մեր ինստիտուտն արդեն հասնում է ինտեգրալային տեխնիկայի ներդրման շնորհիվ։

Հուսալիությունը քանակապես չափվում է այն ժամանակամիջոցով, որի ընթացքում մեքենան անխափան աշխատում է։ Եթե առաջին սերնդի՝ լամպային մեքենաների համար այդ ժամանակամիջոցը 15—18 ժամ էր, երկրորդ սերնդի՝ կիսահաղորդչային մեքենաների համար 25—50, ապա սպասվում է, որ երրորդ սերնդի մեքենաների համար կհասնի ավելի քան 500—1000 ժամի։

Հիշողության ծավալը ցույց է տալիս, թե մեքենան քանի թիվ կարող է հիշել։ Հիշողության հարմարանքները բաժանվում են երկու խմբի՝ ներքին և արտաքին։ Ներքին կամ օպերատիվ հիշողության հարմարանքում մեքենան կարող է ցանկացած պահին թիվը գրել կամ կարդալ։ Արտաքին հիշողության հարմարանքում մեքենան թվերը գրում կամ կարդում է խմբերով՝ 1000—100.000-ը միանգամից։ Սկզբնական շրջանում օպերատիվ հիշողության ծավալը կազմում էր ընդամենը 1000—4000 թիվ։ Ֆերրոմագնիսական օղակների և էլեկտրոնային սխեմաների կատարելագործման շնորհիվ այժմ մեզ մոտ այդ թիվը հասցված է 64 հազարի. աշխատանքներ են տարվում առաջիկայում ավելի ընդլայնելու հիշողության ծավալը։ Օպերատիվ հիշողության ծավալը և արագագործությունը մեծացնելու ուղղությամբ մեծ հույսեր են կապվում նուրբ մագնիսական թաղանթների հետ։ Արտաքին հիշողությունը հիմնականում կառուցվում է մագնիսական ժապավենների, թմբուկների և սկավառակների վրա, որոնց ծավալը, բազմաթիվ հարմարանքներ զուգորդելով, գործնականորեն կարելի է հասցնել տասնյակ միլիոն թվերի։

Կառավարող մեքենաները ծառայում են արտադրապրոցես (քիմիական ռեակցիա, մետաղի ձուլում, մասսայական սպասարկում և այլն) կամ օբյեկտ (հաստոց, դոմնային վառարան, ատոմային ռեակտոր, արհեստական արբանյակ և այլն) կառավարելու համար։ Բնական է, որ կառավարող մեքենան պետք է կարողանա մաթեմատիկական բազմաթիվ խնդիրներից լուծել համեմատաբար նեղ դասի խնդիրներ, որոնք անհրաժեշտ են տվյալ պրոցեսը կամ օբյեկտը կառավարելու համար։ Դրանով էլ այդպիսի մեքենաները դառնում են մասնակի կիրառական և տարբերվում են ունիվերսալ մեքենաներից։ Սակայն դրանց ներկայացվում են ուրիշ, խիստ պահանջներ։ Նախ՝ դրանք պետք է ունենան բարձր հուսալիություն, քանի որ մեքենայի սխալ բանելու դեպքում պրոցեսը սխալ կընթանա՝ կարտադրվի խոտան, կամ վթար տեղի կունենա։ Պատկերացրե՛ք վթարը ատոմային ռեակտորում կամ նավթավերամշակման գործարանում։

Բացի այդ, կառավարող մեքենան պետք է շատ արագագործ լինի, որպեսզի կարողանա մեծ քանակությամբ ինֆորմացիա մշակել և ճիշտ պայմաններ թելադրել պրոցեսի հետագա ընթացքի համար։ Մեր ստեղծած կառավարող բարձրորակ մեքենաներից են՝ «Մասիսը» և «Դվինը», որոնք հաջողությամբ աշխատում են երկրի զանազան քաղաքներում։ Մասսայական սպասարկման աշխատանքների կառավարման համար է նախատեսված մեր ինստիտուտում մշակվող նոր մակնիշի մեքենա (Մոսկվայի երկաթուղային հանգույցի համար)։

ՄԵՔԵՆԱՅԻ ԲԱՂԿԱՑՈՒՑԻՉ ՄԱՍԵՐԸ։

Ժամանակակից էլեկտրոնային մաթեմատիկական մեքենան (ԷՄՄ) բազմահանգույց շատ բարդ համարանք է: Հանգույցներից ամենաէականներն են՝ թվաբանական (ԹՀ), կառավարող (ԿՀ), հիշողության (ՀՀ), մուծման (ՄՀ) և արտահանման (ԱՀ): Մեքենայի թվաբանական և կառավարող հանգույցները բացառապես կառուցվում են տրամաբանական տարրերից: Այդ տարրերի խոշոր դերը ցույց տալու համար ասենք, որ դրանց կատարելագործման ամեն մի նոր էտապ հանդիսացել է հաշվային տեխնիկայի զարգացման համապատասխան էտապը: Մեքենաների բաժանումը սերունդների պայմանավորված է հենց տրամաբանական տարրերի զարգացման էտապներով: Թեև հարկ է հիշատակել, որ նման բաժանումը ունի հարաբերական նշանակություն: Ներկայումս, ինտեգրալային տեխնիկայի արմատավորման շնորհիվ, տրամաբանական տարրերը մշակվում և արտադրվում են կենտրոնացված ձևով՝ մասնագիտացված ինստիտուտների և գործարանների կողմից:

Մուծման և արտահանման հանգույցները մարդու և մեքենայի միջև կապող օղակի դեր են կատարում: Առաջինը մեքենայի մեջ մուծում է խնդիրը կամ պրոցեսի կառավարման ծրագիրը, իսկ երկրորդը՝ արտահանում արդյունքները: Այս հանգույցները, ինչպես նաև հիշողության համարանքները, մեքենայի հետ կապվում են հատուկ էլեկտրոնային սխեմաներով, որոնց ճշգրիտ մշակումից շատ բան է կախված:

Մաթեմատիկական մեքենաների իսկական կատարելագործումը տեղի կունենա այս բոլոր հանգույցների ներդաշնակ կատարելագործման ճանապարհով: Վերջերս այդ ներդաշնակությունը որոշ չափով խախտվել է: Այսպես, եթե տրամաբանական սխեմաները մեծ կատարելության են հասել, հատուկ սխեմաները փաստորեն մնացել են այնպես, ինչպես երկրորդ սերնդի մեքենաների մոտ: Այդ բացը լրացնելու համար այժմ մեծ աշխատանքներ են տարվում: Հիբրիդային և բարակ թաղանթների տեխնոլոգիայի արմատավորման շնորհիվ մշակվել և արտադրության է հանձնվել հատուկ միկրոսխեմաների մի ընտանիք: Այժմ աշխատանքներ են տարվում թե՛ սխեմաների կատարելագործման և թե այդ ընտանիքը համալրելու համար: Առաջիկայում ինստիտուտը մտադիր է ամբողջովին անցնել ինտեգրալային տեխնիկային, որով երրորդ սերնդի մեքենաները կամբողջանան, և նախադրյալներ կստեղծվեն հաջորդ՝ չորրորդ սերնդի մեքենաներին անցնելու համար:

ՄԵՔԵՆԱՆԵՐԻ ՄԵՔԵՆԱՅԱԿԱՆ ՆԱԽԱԳԾՈՒՄԸ: Վաղուց թևավոր է դարձել այն միտքը, թե **մեքենան մեքենա է ծնում:** Այժմ, հաշվային տեխնիկայի բուռն զարգացման շրջանում, այդ միտքն արդեն իրական իմաստ է ստանում: Ո՞րն է այդ իմաստը: Ամեն մի տեխնիկական համարանք կամ մեքենայի մշակում կարելի է բաժանել երկու էտապի՝ նախագծում և ֆիզիկական իրականացում: Նախագծումը ստեղծագործական աշխատանք է և, անշուշտ, մարդն է կատարում այն, դրա համար օգտագործելով զանազան օժանդակ միջոցներ— գծագրական համարանքներ, չափիչ ու հաշվիչ գործիքներ և այլն: Ֆիզիկական իրականացումը կատարվում է մեքենաների ու գործիքների օգնությամբ: Այնքան մեծ է այդ մեքենաների ու գործիքների դերը նոր մեքենայի ֆիզիկական իրականացման գործում, որ մարդիկ չափազանցնելով այն, ասել են՝ մեքենան, մեքենա է ստեղծում: Սակայն չէ՛ որ ստեղծելու համար պետք է մտածել, իսկ վերը նշված մեքենան չի մտածում:

Մինչև հիմա մարդկության ստեղծած գործիքներից, համարանքներից ու մեքենաներից միայն մաթեմատիկական մեքենան է ունակ որոշակի առումով մտածելու. մյուս կողմից՝ գոյություն ունեցող մեքենաներից ամենաբարդը մաթեմատիկական մեքենան է և, հետևաբար, նոր մեքենա ստեղծելու գործում (ստեղծագործական առումով) մարդուն ամենից շատ կարող է օգնել մաթեմատիկական մեքենան: Իսկ ինչպիսի՞ն է իրավիճակը:

Իհարկե, այսօր աշխարհում չկա մի մեքենա, որն ամբողջապես ստեղծված լինի մի այլ մեքենայի կողմից: Այնուամենայնիվ, մասնագետների կարծիքով, իրավիճակը բավարար է: Այսպես, այժմ արդեն մաթեմատիկական մեքենաները կարողանում են ստեղծել մի այլ մեքենայի տրամաբանական տարրերի օպտիմալ կառուցվածքը, մոնտաժի և կապերի լավագույն սխեման, հանգույցների փոխադարձ կապի և ինֆորմացիայի փոխանակման կատարյալ պայմաններ և այլն: Դեռ այժմ ձեռք բերվածը շատ քիչ է այն վիթխարի խնդիրների համեմատությամբ, որոնք պետք է լուծի մեքենայական նախագծումը. սակայն այդ ուղիով մաթեմատիկական մեքենաների կատարելագործումը մեծ հեռանկարներ ունի:

ԾՐԱԳՐՈՒՄԻՑ ՄԻԿՐՈԾՐԱԳՐՈՒՄ ԵՎ ԻՆՔՆԱԾՐԱԳՐՈՒՄ: Երբ խնդիրը մաթեմատիկորեն ձևակերպված է, այսինքն՝ գտնված է լուծման ալգորիթմը, ապա խնդիրը մեքենայի միջոցով լուծելու համար պետք է կազմվի լուծման ծրագիր: Ծրագիրը կազմվում է, մի կողմից՝ հաշվի առնելով խնդրի ալգորիթմը, մյուս կողմից՝ տվյալ մեքենայի հրահանգների սիստեմը: Յուրաքանչյուր հրահանգ մի ամ-



բողջական գործողություն է (գումարում, բաժանում, տրամաբանական տեղաշարժ, արդյունքների տպում և այլն): Հրահանգների սիստեմը կազմվում է մեքենան նախագծելիս, ելնելով մաթեմատիկական ապահովման պահանջներից: Հրահանգների իրականացումը կատարվում է ծրագրի համապատասխան կետերի վերծանման միջոցով, որն այնուհետև ի կատար է ածում ղեկավարման համարանքը: Հետագայում պարզվեց, որ հրահանգների ողջ սիստեմը կարելի է նախօրոք գրել մեքենայի հիշողության մեջ (սովորաբար երկարատև հիշողության) և գործողությունը ծրագրում ցույց տալու փոխարեն ցույց տալ միայն հիշողության համապատասխան բջջի համարը: Մնացածը մեքենան ինքն է կատարում: Մեքենայի կառավարման այս ձևը կոչվում է միկրոծրագրային կառավարում և այժմ լայնորեն կիրառվում է և՛ մեզ մոտ, և՛ արտասահմանում: Միկրոծրագրային կառավարման սկզբունքը հատկապես արդյունավետ է «ոչ-մեծ» մաթեմատիկական մեքենաների համար:

Ինժեներական աշխատանքում հաճախ ոչ բարդ խնդիրներ լուծելիս հարկ է լինում արագ հաշվումներ կատարել: Բնականաբար, այստեղ մեծ մեքենաների օգտագործումը նպատակահարմար չէ: Նախ՝ մեծ մեքենաների հնարավորությունները լայն են, և դրանք պետք է օգտագործվեն բարդ խնդիրներ լուծելու համար, ապա փոքր ինժեներական կամ հետազոտական կոլեկտիվների համար ձեռնտու չէ մեքենային սպասարկող մեծ թվով բարձր որակավորում ունեցող անձնակազմ պահել: Խնդիր է դրվել զարգացնել մաթեմատիկական մեքենաների մի նոր մասնաճյուղ, այսպես կոչված՝՝ «փոքր» մաթեմատիկական մեքենաներ: Ամեն մի գիտնական, ինժեներ, կամ մասնագետ պետք է կարողանա օգտագործել այդ մեքենան: Այս խնդրի լուծման լավագույն ուղին եղավ հրահանգներից միկրոհրահանգներին, հետևաբար և ծրագրումից միկրոծրագրմանն անցնելը: Այդ հնարավորություն ընձեռեց մեքենային թողնել ծրագիրը կազմելու հոգսը (ինքնածրագրում) և պարզեցնել մեքենայի շահագործումը: Ամեն ոք կարող է նստել մեքենայի առաջ և լուծել իրեն անհրաժեշտ խնդիրը (իհարկե որոշ նվազագույն ծանոթությունից հետո):

Այս սկզբունքով աշխատող առաջին մեքենան ծնունդ է առել Ֆրանսիայում, Սովետական Միության մեջ՝ մեր ինստիտուտում— «Նաիրի—1»-ը, որը հայրենական և արտասահմանյան ցուցահանդեսներում արժանացել է բազմաթիվ մեդալների ու մրցանակների: Հաջորդը՝ «Мир»-ը, ստեղծվել է Կիևում:

Տեղին է նշել, որ մեքենաների դասակարգումը «մեծի» և «փոքրի» զուտ պայմանական բնույթ է կրում: Անցնում են ժամանակները, փոխվում են չափանիշները: Այսօրվա «փոքր» կոչվող մեքենան չի զիջում տասը տարի առաջ կառուցված «մեծ»-ին և՛ արագագործությամբ, և՛ հիշողությամբ, և՛ շատ այլ ցուցանիշներով (չափերով, իհարկե, անհամեմատ փոքր է): Մաթեմատիկական մեքենաների բաժանումը «մեծի» կամ «փոքրի» չի զուգորդվում դժվար ու հեշտ հասկացողությունների հետ: Ամեն դասի մեքենա ունի իր բարդությունները ու դժվարությունները, որոնց բանիմաց հաղթահարումը ինժեներական մեծ արվեստ է:

ԻՆՍՏԻՏՈՒՏԸ ԵՎ ՓՈՐՁՆԱԿԱՆ ԳՈՐԾԱՐԱՆԸ: Որքան էլ արժեքավոր լինեն գիտնականների ու ինժեներների ստեղծած մեքենաները, լույս աշխարհ չեն կարող գալ առանց մեր փորձնական գործարանի կոլեկտիվի ջանադիր աշխատանքի: Մեր մշակումները առաջին հերթին ներդրվում են փորձնական գործարանի և ապա միայն մասնագիտացված այլ գործարաններում: Այս հանգամանքը խիստ հատկանշական է ժամանակակից խոշոր գիտահետազոտական ինստիտուտների համար, քանի որ փորձնական գործարանում նոր մեքենայի արտադրության կազմակերպումը, փաստորեն, այդ մեքենայի մշակման հիմնական էտապներից մեկն է:

Որպես կանոն, փորձնական գործարանում են լուծվում նոր մեքենայի արտադրության հետ կապված շատ հարցեր: Երբեմն հարկ է լինում արտադրության պահանջները բավարարելու համար փոփոխություններ մտցնել մեքենայի մեջ: Բնական է, որ լաբորատորիաների ու գործարանի սերտ համագործակցության պայմաններում միայն կարելի է արդյունավետ կազմակերպել նոր մեքենաների արտադրությունը: Տարեցտարի փոփոխվում, կատարելագործվում է մեքենաների արտադրության տեխնոլոգիան: Մասնագիտացված խոշոր գործարաններում նպատակահարմար չէ փորձել նորը: Փորձնական գործարանները միջանկյալ դեր են կատարում— արմատավորում են նորը, ապա տալիս այն խոշոր գործարաններին:

ԲԱՐՁՐՈՐԱԿ ՄԱՍՆԱԳԵՏՆԵՐԻ ՊԱՏՐԱՍՏՈՒՄԸ ՄԵՐ ՀԱՋՈՂՈՒԹՅՈՒՆՆԵՐԻ ԳՐԱՎԱԿԱՆՆ Է: Ինչպես տեխնիկայի ամեն մի նոր բնագավառ, հաշվային տեխնիկան իր սկզբնական շրջանում մասնագետներ, որպես այդպիսիք, չուներ: Ծնունդ առնելով ֆիզիկայի, ռադիոտեխնիկայի, մաթեմատիկայի, ավտոմատիկայի և այլ հիմնավորված գիտությունների բազայի վրա, հաշվային տեխնիկայի առաջին մասնագետները դարձան ֆիզի-

կոսները, մաթեմատիկոսները և ուրիշներ։ Բնականաբար, այդպիսի ապագա խոստացող տեխնիկան չէր կարող մեծ վերելք ապրել առանց բարձրորակ մասնագետների կազմակերպված բանակի։ Զարգացած արդյունաբերական երկրներում, ինչպես և Սովետական Միությունում, հաշվային տեխնիկայի մասնագետների պատրաստումը դարձավ պետական մեծ նշանակություն ունեցող գործ։ Մեր երկրի համարյա բոլոր տեխնիկական բուհերում ու համալսարաններում սկսեցին ուսումնասիրել նոր մասնագիտություններ— տեխնիկական կիբեռնետիկա, հաշվային տեխնիկա, ռադիոէլեկտրոնիկա և այլն։ Ստեղծվեցին նոր բուհեր ու տեխնիկումներ։ Այս բոլոր միջոցառումները, անշուշտ, վճռական դեր խաղացին, թեև հաշվային տեխնիկայի բարձրորակ մասնագետների կարիքը այսօր ևս խիստ զգալի է։ Մեր ինստիտուտը հիմնականում համալրում են Երևանի պոլիտեխնիկական ինստիտուտի և պետական համալսարանի շրջանավարտները, որոնց թիվը, հաճախ, ցավոք նաև որակը, չեն բավարարում ինստիտուտի պահանջները։ Մենք ստիպված ենք լինում պակասը լրացնել այլ մասնագիտությունների շրջանավարտներից, որոնց վերապատրաստման վրա ծախսվում են հսկայական միջոցներ և, միջին հաշվով՝ 1,5—2 տարի ժամանակ։ Կարծում ենք, ժամանակն է Հայաստանում ստեղծելու ռադիոէլեկտրոնիկայի և հաշվային տեխնիկայի բարձրագույն ուսումնական հաստատություն։

Սակայն, ինչպիսին էլ լինի սկսնակ մասնագետների պատրաստականությունը, փորձը ցույց է տալիս, որ նրանք լիարժեք մասնագետներ են դառնում աշխատանքային գործունեության ընթացքում։ Իր ստեղծման օրից ինստիտուտը դարձել է հաշվային տեխնիկայի և ռադիոէլեկտրոնիկայի բարձրորակ մասնագետներ պատրաստող մի կատարյալ դարբնոց։ Ամեն տարի երկրի զանազան բուհերի ու տեխնիկումների հարյուրավոր ուսանողներ իրենց պրակտիկան անց են կացնում ինստիտուտում։ Մեր մասնագետների սերուցքը ձևավորվել է հենց մեզ մոտ։ Նրանցից շատերն իրենց աշխատանքային գործունեությունն սկսել են որպես տեխնիկ, լաբորանտ, իսկ այժմ դարձել են գիտական թեմաների ղեկավարներ, բաժնի պետեր, լաբորատորիայի վարիչներ և այլն։ Բավական է նշել, որ վերջին տասը տարում մեր առաջավոր մասնագետներից թեկնածուական դիսերտացիա են պաշտպանել 31 հոգի։ Այժմ ունենք 29 ասպիրանտ, 9 հոգի պատրաստվում են թեկնածուական, իսկ 5-ը՝ դոկտորական դիսերտացիա պաշտպանելու։ Մեր մասնագետների հրատարակած գիտական աշխատությունների թիվն անցնում է 300-ից, գյուտերը հասնում են մոտ 100-ի։ Ինստիտուտը Սովետական Միությունում առաջիններից մեկը ձեռնամուխ եղավ սեփական մշակումներն արտասահմանում պատենտավորելու գործին։ Մեր լավագույն մշակումների մի մասը պատենտավորված է Անգլիայում, Ֆրանսիայում, ԳՖՀ-ում, Իտալիայում և այլուր։ Ինստիտուտը գիտատեխնիկական կապեր է հաստատել բազմաթիվ գիտահետազոտական կենտրոնների հետ։

Չնայած մեր հանրապետությունը լուրջ ավանդ ունի հայրենական ռադիոէլեկտրոնիկայի և հաշվային տեխնիկայի զարգացման գործում, այնուամենայնիվ, մեզ մոտ անբավարար է այդ բնագավառների գիտատեխնիկական պրոպագանդման գործը։ Հանրապետության առաջավոր հրատարակչությունները նշված ասպարեզի աշխատողների համար ոչ մի ժողովածու կամ մենագրություն չեն հրատարակել, իսկ էլեկտրոնիկայի և հաշվային տեխնիկայի բարձր մակարդակի ամսագիր ստեղծելու հարցը մեր հանրապետությունում վաղուց է հասունացել։

* * *

Տարեցտարի աճում, ընդարձակվում է մեր ինստիտուտը։ Դրան զուգընթաց մեծանում է ժողովրդատնտեսական կարևոր նշանակություն ունեցող գիտատեխնիկական մշակվող պրոբլեմների թիվը։ Վերջերս շինարարական լայն մասշտաբի միջոցառումները հնարավորություն ընձեռեցին վերջապես ողջ ինստիտուտը կենտրոնացնելու մի տեղում։ Այդ բարելավեց աշխատանքի կազմակերպումը։ Սակայն առայժմ հոգսեր շատ կան։ Մեծ է բարձրորակ մասնագետների կարիքը, դեռևս մեր բոլոր աշխատողներն ապահովված չեն բնակտարածությամբ։ Մինչև այսօր ինստիտուտը չունի հարմարավետ ճաշարան։ Վաղուց նախատեսված է քաղաքից դուրս ստեղծել առողջարանային և սպորտային կառույցների կոմպլեքս, բայց այն ձգձգվում է։

Չնայած այդ բոլորին, ինստիտուտն այսօր համերաշխ ու տաղանդավոր մի մեծ կոլեկտիվ է, որն իր լուրջ ավանդն է ներդնում հայրենական ռադիոէլեկտրոնիկայի և հաշվային տեխնիկայի զարգացման գործում։

Այս դժվարին ու պատասխանատու աշխատանքում անգնահատելի ավանդ ունեն ինստիտուտի կուսակցական, արհմիութենական և կոմերիտական կազմակերպությունները։

Գ. Ա. ՂԱՐԻԲՅԱՆ

# ԲՆԱԿՉՈՒԹՅԱՆ ԿԵՆՍԱՄԱԿԱՐԴԱԿԸ ՍՈՑԻԱԼԻՍՏԱԿԱՆ ՀԱՍԱՐԱԿԱՐԳՈՒՄ

*Բնակչության կենսամակարդակը յուրաքանչյուր ժողովրդի բարօրության ու զարգացման առավել հանրագումարային ցուցանիշներից է։ Այն, այս կամ այն չափով, արտացոլում է ժողովրդական տնտեսության զարգացման աստիճանը, տիրապետող արտադրահարաբերությունների բնույթը, բնակչության սոցիալական կազմը, նրա պահանջմունքները, եկամուտները, սպառումը և այլն։ Այդ պատճառով բնակչության կենսամակարդակը միայն տնտեսական ցուցանիշների մի ամբողջ սիստեմի միջոցով է հնարավոր արտահայտել։ Կենսամակարդակն արտացոլող անմիջական ցուցանիշներից են, նախ՝ բնակչության կողմից նյութական և հոգևոր բարիքների սպառումը, եկամուտները և դրանց կառուցվածքը, նյութական բարիքների սպառման ծավալն ու կառուցվածքը, բնակչության ապահովվածությունը բնակարանով, առողջապահության, լուսավորության, ֆիզկուլտուրայի և կենցաղային սպասարկման մակարդակը, ազատ ժամանակն ու հանգստի պայմանները, բնակչության զբաղվածությունը և այլն։*

*Սովետական իշխանության առաջին տարիներից սկսած կարևոր նշանակություն է տրվել բնակչության կենսամակարդակի ուսումնասիրման հարցերին։ Այդ տարիներին հատկապես մեծ աշխատանքներ ծավալվեցին ընտանիքների նորմատիվային բյուջեների հետազոտման նպատակով։ Պարբերաբար (1919—1921, 1922, 1926 և 1927 թթ.) հաշվարկվում և վերահաշվարկվում էր կյանքի արժեքի ինդեքսը։*

*Բնակչության կենսամակարդակի բարձրացման համար նշանակալի տեղաշարժեր կատարվեցին ՍՍՀՄ ժողովրդական տնտեսության զարգացման առաջին և երկրորդ հնգամյակներին։ Հայրենական պատերազմի տարիներին և հետպատերազմյան մի ամբողջ ժամանակաշրջան հասկանալի պատճառով բնակչության կենսամակարդակի բարձրացման տեմպերը միանգամայն թուլացան։ Եվ միայն ՍՄԿԿ XX համագումարից սկսած այդ խնդիրը նորից դրվեց ուշադրության կենտրոնում։ Այսպես, 1956 թ. կազմակերպվեցին բազմաթիվ գիտահետազոտական ինստիտուտներ և լաբորատորիաներ, որոնք պլանավո-*

րող օրգանների հետ զբաղվեցին բնակչության կենսամակարդակի ուսումնասիրությամբ ու պլանավորմամբ։

Ընդարձակվեց ՍՍՀՄ Մինիստրների սովետին առընթեր կենտրոնական վիճակագրական վարչության կողմից հաշվարկվող ցուցանիշների հաղորդագրությունը, որոնք արտահայտում են բնակչության կենսամակարդակը։ Մեծ ուշադրության արժանացավ ընտանիքների նորմատիվային բյուջեների հաշվարկման գործը։ Բանվոր-ծառայողների ընտանիքների բյուջեների շուրջ բազմիցս կազմակերպվեցին հատուկ միանվագ վիճակագրական հետազոտություններ։

Գիտահետազոտական ինստիտուտներում զգալի աշխատանքներ ծավալվեցին բնակչության եկամուտների դիֆերենցման պրոբլեմների, եկամուտների և ծախսերի դիֆերենցված բալանս կազմելու համար և այլն։

* * *

Մեր երկրի զարգացման կեսդարյա պատմության ընթացքում լուրջ առաջխաղացում է կատարվել աշխատավորական մասսաների կյանքի պայմանների, նրանց կենսամակարդակի բարելավման ասպարեզում։ Որպեսզի ձեռք բերված նվաճումները ժամանակի տեսակետից ճիշտ գնահատվեն, անհրաժեշտ է նկատի ունենալ, նախ՝ 1913 թ. կենսագոյության ցածր մակարդակը և այն հսկայական նյութական ու հոգևոր վնասը, որը մեր երկրին հասցրին առաջին և երկրորդ համաշխարհային պատերազմները։ Սովետական իշխանությունը խաղաղ շինարարությունն սկսեց այնպիսի ցածր մակարդակից, երբ խոշոր արդյունաբերական արտադրանքի արտադրությունը կազմում էր մինչպատերազմյանի (1913 թ.) մեկ յոթերորդական մասը, իսկ պողպատի ձուլումը՝ ընդամենը 5 տոկոսը։ Արդյունաբերական բանվորների աշխատավարձն իջավ մինչև նախապատերազմյան մակարդակի $^{1}/_{3}$-ը։ Երկրորդ համաշխարհային պատերազմի տարիներին կործանվեցին ավելի քան 70 հազար քաղաք, գյուղ և բնակավայր։ Երկիրը կորցրեց իր ազգային հարստության մոտ 30 տոկոսը։ Այսպիսով, նշված 50 տարիներից 20-ը եղել են պատերազմների և դրանցից քայքայված ժողովրդական տնտեսության վերականգնման տարիներ։

Բնակչության կենսամակարդակի բարձրացման ամենաընդհանրական ցուցանիշը ազգային եկամտի աճն է։ 1913 թ. համեմատությամբ, 1968 թ. ՍՍՀՄ ազգային եկամուտը կազմեց 4028, իսկ 1950 թ. նկատմամբ՝ 442 տոկոս (բնակչության մեկ շնչի հաշվով՝ 225 տոկոս)։ Մեր երկրում ազգային եկամտի մոտ $^{3}/_{4}$-ը տրամադրված է բնակչության անձնական սպառմանը։ Դա հնարավորություն ընձեռեց զգալի չափով ավելացնելու բնակչության ինչպես ռեալ եկամուտները, այնպես էլ սպառումը։ ՍՍՀՄ արդյունաբերության ու շինարարության բանվորների ռեալ եկամուտները, 1913 թ. համեմատությամբ, մեկ աշխատողի հաշվով (գործազրկության լիկվիդացման և աշխատօրվա կրճատմամբ հանդերձ), մեծացել են ավելի քան 7, իսկ գյուղացունը՝ գրեթե 11 անգամ։ Ռեալ եկամուտների այդպիսի աճը տեղի է ունեցել աշխատունակ բնակչության զբաղվածության բարձրացման պայմաններում։ Այսպես, եթե ՍՍՀՄ բանվոր-ծառայողների թիվը 1913 թ. կազմել է ընդամենը 12,9 միլիոն մարդ, ապա 1967-ին այն հասավ 82,3 միլիոնի։ Բնակչության մեկ շնչի հաշվով, 1968 թվականին ՍՍՀՄ ռեալ եկամուտները, 1960 թվականի նկատմամբ, կազմեցին 143 տոկոս։



Սովետական իշխանության տարիներին զգալի չափով աճեց բնակչության անձնական սպառումը և բարելավվեց նրա կառուցվածքը։

Սննդամթերքի հիմնական տեսակների սպառումը ՍՍՀՄ-ում
(բնակչության մեկ շնչի հաշվով)[1]

| Սննդամթերքների տեսակը | Չափի միավորը | 1913 թ. | 1968 թ. |
|---|---|---|---|
| Միս | կգ | 29 | 48 |
| Ձուկ | » | 6,7 | 14,3 |
| Շաքար | » | 8,1 | 37,4 |
| Կաթ և կաթնամթերք (վերածած կաթի) | » | 154 | 285 |
| Ձու | հատ | 48 | 144 |
| Բանջարեղեն և կանաչեղեն | կգ | 40 | 79 |
| Հացամթերք | » | 200 | 149 |
| Կարտոֆիլ | » | 114 | 131 |

Աղյուսակի տվյալները վկայում են սովետական ժողովրդի սպառման ինչպես քանակական աճը, այնպես էլ որակական տեղաշարժերը։

Սովետական իշխանության տարիներին աճել է ժողովրդի ո՛չ միայն սննդամթերքների, այլև արդյունաբերական ապրանքների սպառումը։ Այսպես, եթե 1913 թ. բնակչության մեկ շնչի հաշվով ՍՍՀՄ-ում բոլոր տեսակի կտորեղենից սպառվել է 13,4 քառ. մետր, ապա 1967-ին՝ 28,2 քառ. մետր, իսկ կաշվե կոշիկինը՝ 0,4-ից 2,6 զույգ։

Հատկապես արագ է աճել կուլտուր-կենցաղային նշանակություն ունեցող ապրանքների սպառումը, որի մասին են վկայում ստորև բերվող աղյուսակի տվյալները.

Կուլտ-կենցաղային նշանակություն ունեցող ապրանքների վաճառքը ՍՍՀՄ-ում
(հազ. հատ)[2]

| | 1913 թ. | 1950 թ. | 1968 թ. |
|---|---|---|---|
| Ժամացույցներ՝ բոլոր տեսակի (մլն հատ) | 0,7 | 8,2 | 26,4 |
| Կարի մեքենաներ | 272 | 510 | 1268 |
| Ֆոտոապարատներ | 16 | 234 | 1588[3] |
| Դաշնամուր և ռոյալ | 26 | 12 | 172 |
| Սառնարաններ | — | 1,2 | 2886 |
| Ռադիոընդունիչներ և ռադիոլաներ | — | 992 | 4912 |
| Լվացքի մեքենաներ | — | 0,3 | 4242 |
| Հեռուստացույցներ | — | 12 | 4991 |
| Փոշեծծիչներ | — | 6 | 821[4] |

Բնակչության կենսամակարդակի բարձրացման արտահայտություններից են նաև մեր երկրում իրականացված կուլտուրական հեղափոխությունը, անվճար ուսուցումն ու բուժսպասարկումը, աշխատավորների բնակարանային պայմանների բարելավումը և այլն։

1 Տե՛ս «Народное хозяйство СССР в 1968 г.». Статистический ежегодник, М., 1969, стр. 595.

2 Տե՛ս Мы и планета. Цифры, факты, М., 1969, стр. 175. «Народное хозяйство СССР в 1968 г., стр. 594.

3 Արտադրությունը (1967 թ.)։

4 1967 թ.։

Բնակչության կենսապայմանների բարելավման, նրա կենսամակարդակի բարձրացման ամփոփ ցուցանիշ է կյանքի միջին տևողության երկարացումը։ Եթե կյանքի միջին տևողությունը ցարական Ռուսաստանում 1896—1897 թթ. 32 տարի էր, ապա ՍՍՀՄ-ում 1926—1927 թթ. 44 տարի էր, 1966—1967 թթ. հասավ 70-ի։

Բերված փաստերն անհերքելիորեն բացահայտում են այն խոշոր տեղաշարժերը և նվաճումները, որ ձեռք են բերվել մեր երկրում աշխատավորության բարեկեցության բարձրացման մարզում։

Բնակչության կենսամակարդակը սիստեմատիկաբար բարձրացել է նաև Սովետական Հայաստանում։ Նախասովետական Հայաստանի բնակչության մոտ 90 տոկոսը գյուղացիներ էին, որոնց կենսամակարդակը շատ ցածր էր։ Հայ գյուղացին ոչ միայն զրկված էր նյութական և հոգևոր բարիքներից բավարար չափով օգտվելու հնարավորությունից, այլև ենթարկվում էր անողոք շահագործման։ Նա անզոր ու անօգնական էր, ապրում էր՝ «ամեն մեռնողին երանի տալով»։

Սովետական Հայաստանի ժողովրդական տնտեսության բուռն զարգացումն ապահովեց ո՛չ միայն աշխատունակ բնակչության զբաղվածության բարձրացումը, այլև աշխատավորների եկամուտների սիստեմատիկ աճը։ Այսպես, 1928—1939 թթ., այսինքն՝ առաջին և երկրորդ հնգամյակի տարիներին, ՀՍՍՀ բանվորների և ծառայողների միջին թիվն աճեց 3,3, իսկ աշխատավարձի ֆոնդը՝ 19 անգամ, որի շնորհիվ բանվոր-ծառայողների միջին տարեկան դրամական աշխատավարձը բարձրացավ 578,2 տոկոսով (տե՛ս Социалистическое строительство Арм. ССР, Ереван, 1940, стр. 13, 14).

Այդ ժամանակաշրջանում բարձրացել են նաև անձնական սպառման ապրանքների գները, սակայն անհամեմատ ավելի դանդաղ, քան դրամական աշխատավարձը, որի շնորհիվ էապես աճել է նաև ռեալ աշխատավարձը։

Բանվոր-ծառայողների աշխատավարձը սիստեմատիկաբար բարձրացել է նաև հետպատերազմյան ժամանակաշրջանում, մասնավորապես ՍՄԿԿ XX համագումարից հետո։

ՀՍՍՀ բանվորների և ծառայողների միջին ամսական աշխատավարձը[1]

| | 1960 | 1965 | 1967 | 1968 |
|---|---|---|---|---|
| Բանվոր-ծառայողների միջին-ամսական աշխատավարձը (ռուբլիներով) | 75,4 | 91,9 | 100,2 | 109,3 |
| Նույնը (տոկոսներով) 1958 թ. նկատմամբ | 100,0 | 121,9 | 133,0 | 145,0 |

Աղյուսակից երևում է, որ 1968 թվականին, 1960 թվականի համեմատությամբ, ՀՍՍՀ բանվոր-ծառայողների միջին աշխատավարձը կազմել է 145,0 տոկոս։ Պետք է նկատի ունենալ և այն, որ այդ ժամանակաշրջանում զգալի չափով աճել է բանվոր-ծառայողների ընտանիքների աշխատունակ անդամների զբաղվածությունը, որի շնորհիվ ընտանիքի համախառն դրամական եկամուտներն ավելի արագ են աճել։

[1] Народное хозяйство Арм. ССР в 1968 г., Ереван, 1969, стр. 26.



Միաժամանակ անհրաժեշտ է նկատի ունենալ այն դժվար, բայց լուծում պահանջող պրոբլեմները, որոնք առաջացել են բնակչության կենսամակարդակի բարձրացման ճանապարհին։ Դրանցից առաջինն ունի միջազգային բնույթ և վերաբերում է սովետական ժողովրդի կենսամակարդակն աշխարհում ամենաբարձրը դարձնելու պատմական խնդրի լուծմանը։ Չէ՞ որ, վերջին հաշվով, այդ խնդրի լուծմամբ է պայմանավորված համաշխարհային տնտեսության երկու սիստեմների մրցակցության մեջ սոցիալիստական սիստեմի հաղթանակի հիմնական երաշխիքը։

Հայտնի է, որ սոցիալ-տնտեսական բնույթի մի շարք պատճառներով Սովետական Միության բնակչության կենսամակարդակը (միջին հաշվով) դեռևս ետ է մնում առաջավոր կապիտալիստական որոշ երկրներից։ Դա իր արտահայտությունն է գտնում նաև ազգային եկամտի և բնակչության կողմից սպառվող սննդամթերքների հիմնական տեսակների չափերի տարբերությունների մեջ։

1966 թվականին սննդամթերքների հիմնական տեսակների և արդյունաբերական որոշ ապրանքների սպառումը (բնակչության մեկ շնչի հաշվով)[1]

| | Ազգային եկամտի արտադրությունը 1967 թ.[2] | Միս (կգ) | Ձուկ (կգ) | Շաքար (կգ) | Կաթ և կաթնամթերք (կգ) | Ձու (հատ) | Հաց ու հացամթերք (կգ) | Կարտոֆիլ (կգ) | Կտորեղենի բոլոր տեսակների արտադրությունը (քառ. մ.) | Տեքստիլ թել (կգ.) | Կաշվե կոշիկ (զույգ) 1965 թ.) |
|---|---|---|---|---|---|---|---|---|---|---|---|
| ՍՍՀՄ[3] | 1244 | 46 | 13 | 36,7 | 274 | 138 | 150 | 131 | 35 | 9,44 | 2,6[4] |
| ԱՄՆ | 2348 | 108 | 5 | 48,5 | 311 | 304 | 66 | 44 | 66 | 15,9 | 2,9 |
| Շվեդիա | 2017 | 51 | 21 | 43,4 | — | — | 70 | 65 | — | 11,7 | 2,2 |
| Ֆրանսիա | 1535 | 87 | 8 | 36,9 | 422 | 192 | 91 | 91 | 39 | 9,6 | 2,3 |
| ԳՖՀ | 1479 | 75 | 7 | 35,0 | 258 | 248 | 73 | 89 | 29 | 12,6 | 2,5 |
| Անգլիա | 1244 | 76 | 10 | 50,0 | 393 | 266 | 78 | 102 | 37 | 12,3 | 2,4 |

Սակայն մեր էկոնոմիկայի արագ զարգացումը, սոցիալիստական արտադրահարաբերությունների առկայությունն ու հետագա կատարելագործումը ռեալ հնարավորություն են տալիս բնակչության կենսամակարդակն արտացոլող հիմնական ցուցանիշներով հասնելու և անցնելու կապիտալիստական զարգացած երկրներից։ Այսպես, եթե 1968 թ., 1950 թ. համեմատությամբ, ազգային եկամուտը (բնակչության մեկ շնչի հաշվով) ՍՍՀՄ-ում կազմել է 348 տոկոս, ապա ԱՄՆ-ում՝ 147, Անգլիայում՝ 148, Ֆրանսիայում՝ 191, ԳՖՀ-ում՝ 239 տոկոս և այլն (տե՛ս «Народное хозяйство СССР в 1968 г.». Статистический ежегодник. М., 1969, стр. 145):

[1] Տես՛ «Мы и планета», М. 1969 г., стр. 163, 170 — 175.
[2] ՍՍՀՄ վիճակագրության մեջ ընդունված մեթոդով։
[3] ՍՍՀՄ-ին վերաբերող բոլոր տվյալները 1967 թ. համար են։
[4] 1963 թ.։

Անհրաժեշտ է նկատի ունենալ նաև այն, որ սոցիալ-կուլտուրական բնույ-
թի մի շարք պահանջմունքների բավարարման բնագավառում մեր երկիրը ոչ
միայն վերացրել է իր ահավոր հետամնացությունը, այլև հասել է քաղաքա-
կրթված ազգերի մակարդակին, առանձին ցուցանիշներով անգամ գերազանցել
է։ ՍՍՀՄ-ում իսպառ վերացել է մարդու կողմից մարդու շահագործումը, սո-
ցիալական այդ չարիքը և աշխատավորին անչափ թշվառություններ բերող
գործազրկությունը։ Բավական է նշել, որ 1968 թ. գործազուրկների թիվը
միայն ԱՄՆ-ում հասնում է 3,1 միլիոնի։ ՍՍՀՄ-ում 1930-ական թթ. վեր-
ջին գործազրկությունն իսպառ վերացվել է։ Սոցիալիստական հասարակար-
գում բնակչության կենսամակարդակի բարձրացման կարևոր աղբյուրներից
մեկը սպառման հասարակական ֆոնդերն են։ Եթե 1940 թ. այդ ֆոնդերից
բնակչության ստացած վճարումները և արտոնությունները կազմել են 4,6 մի-
լիարդ ռուբլի, ապա 1968 թ.՝ ավելի քան 55 միլիարդ։ 1968 թվականին
ՍՍՀՄ-ում, միջին հաշվով, հասարակական սպառման ֆոնդերից մեկ ընտա-
նիքի եկամուտները կազմել են 750 ռուբլի, չհաշված այն, որ բնակարանների,
հիվանդանոցների, դպրոցների և կուլտուր-կենցաղային ու բժշկական այլ հիմ-
նարկությունների կառուցման վրա կատարված ծախսերը, մեկ ընտանիքի
հաշվով, կազմել են 150 ռուբլի։

Հասարակական սպառման ֆոնդերը բարձր տեմպերով աճել են նաև մեր
հանրապետությունում։ Այսպես, եթե 1960 թ. այդ ֆոնդերը կազմել են մոտ
200 միլիոն ռուբլի, ապա 1969 թ. ավելի քան 535 միլիոն էր։

Հայտնի է, որ մեր երկրում բնակչության սոցիալ-կուլտուրական բնույթի
հիմնական պահանջմունքները (մատաղ սերնդի ուսուցումը և դաստիարակու-
թյունը, արտադրողների որակավորման բարձրացումը, բժշկական սպասար-
կումը, աշխատավորության սոցիալական ապահովագրությունը և այլն), բա-
վարարվում են անվճար կամ արտոնյալ պայմաններով՝ սպառման հասարա-
կական ֆոնդերի հաշվին։ Դա հնարավորություն է ընձեռում ընտանիքի բյու-
ջեն ազատել նման ծախսերից, որոնք ամենազարգացած բուրժուական երկրր-
ներում անգամ զգալի միջոցներ են կլանում։ Այսպես, ԱՄՆ-ում մի շարք ծա-
ռայությունների և բժշկական սպասարկման միջին արժեքը 1968 թվականին
կազմել է (դոլարներով)[1].

կինոյի տոմսը 1,57, ավտոբուսի երթևեկությունը՝ 0,25, տաքսիով երթևե-
կությունը 1 կմ համար՝ 0,45, տղամարդու մազերի հարդարումը՝ 2,25, մա-
զերի գանգրացումը՝ 13,70, ակնոցներ, հաշված նաև բժշկի նախնական ծա-
ռայությունը՝ 34,70, մեկ ատամի պլոմբը՝ 6,90, կրծքի վանդակի ռենտգեն
դիտումը՝ 12,50, հինգ օր ծննդատանը մնալը՝ 455, հիվանդանոցում մահճա-
կալի օրական վարձը՝ 37,30, երկու սենյականոց բնակարանի ամսական
վարձը՝ 120,0։

Հասկանալի է, որ նշված ծառայությունների համար վճարվելիք գումարը
ամերիկյան յուրաքանչյուր ընտանիքի բյուջեից զգալի եկամուտներ է կլա-
նում, մի բան, որը շատ չնչին տոկոս է կազմում սովետական ընտանիքներում։

Սպառման հասարակական ֆոնդերի հաշվին իրագործված կուլտուրական
հեղափոխության շնորհիվ Սովետական Միությունը բազմաթիվ ցուցանիշնե-
րով աշխարհում բարձրացավ առաջին տեղերից մեկը։ Դրանցից են ինժեներ-

[1] Տես՝ Мы и планета. Цифры, факты, М., 1969, стр. 176.



ների, բժիշկների, գիտաշխատողների պատրաստումը (բնակչության 10000 մարդու հաշվով), հրատարակված գրքերի, գրադարանների թիվը, մեկ բնակչի հաճախումները կինո և այլն։ Հատկապես մեծ են մեր հանրապետության նվաճումները։ Եթե մինչև սովետական կարգերի հաստատումը Հայաստանը չուներ ոչ մի բարձրագույն ուսումնական հաստատություն, ապա այժմ ուսանողների թվով առաջ է անցել մի շարք զարգացած կապիտալիստական երկրներից։

Սովետական ժողովրդի մեծ նվաճումներից են նաև աշխատօրվա կրճատումը և ազատ ժամանակի մեծացումը։ Ներկայումս ՍՍՀՄ-ում շաբաթական աշխատաժամանակը ամենակարճերից մեկն է աշխարհում։ 1966 թ. այն արդյունաբերական բանվորների համար կազմում էր 40,6 ժամ կամ մոտ 18 ժամով պակաս, քան 1913 թ.։

Բնակչության կենսամակարդակի բարձրացման գործում ձեռք բերած խոշոր նվաճումները և սոցիալիստական սիստեմի ապագա հնարավորությունները թույլ են տալիս եզրակացնելու, որ որոշ ժամանակաշրջանում մեր երկիրը հաղթող դուրս կգա այդ բնագավառում կապիտալիզմի հետ ունեցած մրցակցությունից։

Սովետական Միությունում բնակչության կենսամակարդակի բարձրացման բնագավառում կան նաև մի շարք պրոբլեմներ, որոնք վերաբերում են մեր երկրի ներքին կյանքին։ Դրանք են՝ մինիմում ապահովվածությունը, բնակչության սոցիալական տարբեր խմբերի, միութենական հանրապետությունների, տնտեսական տարբեր շրջանների և խավերի կենսամակարդակների աստիճանական մոտեցումը, համահարթման ու, ընդհանրապես, բնակչության կենսամակարդակի բարձրացման ուղիները և տեմպերը։

Պետք է նշել, որ պատերազմական և հետպատերազմյան տարիներին, մինչև 1956 թվականները, օբյեկտիվ և սուբյեկտիվ բնույթի տարբեր պատճառներով, բնակչության մինիմում ապահովվածությունն անհրաժեշտ ուշադրության չի արժանացել։ Այսպես, եթե ՍՍՀՄ ժողովրդական տնտեսության մեջ (1946—1956 թթ. ներառյալ) բանվոր-ծառայողների միջին ամսական աշխատավարձը բարձրացել է 1,5 անգամ, այսինքն 47,5—73 ռուբլու, ապա մինիմում աշխատավարձը՝ ընդամենը 23 տոկոսով (22—27 ռուբլու)։ Դրա հետևանքով, միջին և նվազագույն աշխատավարձերի բացարձակ ճեղքվածքը ոչ միայն չկրճատվեց, այլ աճեց։ Եթե այն 1946 թ. կազմում էր 25,5 ռուբլի, ապա 1957 թ. վերջին՝ մինչև 47 ռուբլի։ Դեռ ավելին։ Այդ ժամանակաշրջանում պետական մանրածախ գներն իջան մոտ 2,3 անգամ և մինիմում ու մաքսիմում աշխատավարձերի միջև ճեղքվածքը, համադրելի գներով հաշված, ավելի մեծացավ։

1956 թվականից սովետական կառավարությունը լուրջ ուշադրություն է նվիրում և հետևողական քաղաքականություն կիրառում աշխատավորների կյանքի մինիմումն ապահովելու համար։ Այսպես, եթե 1957—1967 թթ. բանվոր-ծառայողների միջին աշխատավարձը 75 ռուբլուց հասավ 103-ի, այսինքն՝ աճեց 37 ռուբլով, ապա մինիմում աշխատավարձն աճեց 2,2 անգամ, այսինքն՝ 27-ից հասավ մինչև 60 ռուբլու։ Առաջիկա հնգամյակում նրանց մինիմում աշխատավարձը 60 ռուբլուց կբարձրանա և կկազմի մոտ 75 ռուբլի (տե՛ս Н. И. Бузляков. Методы планирования повышения уровня жизни. М., 1969, стр. 35)։

Վերջին ժամանակաշրջանում զգալի միջոցառումներ իրականացվեցին նաև գյուղի աշխատավորների մինիմումն ապահովելու նպատակով: Դա մասնավորապես արտահայտվում է կոլտնտեսականների ռեալ եկամուտների ավելի արագ աճի ու 1966 թ. հունվարի 1-ից երաշխավորված վարձատրություն կիրառելու մեջ: Սակայն ընտանիքների մինիմում ապահովվածության խնդրի լուծումը չի սահմանափակվում միայն աշխատավարձի կամ կոլտնտեսություններից ստացվող եկամուտների ավելացմամբ: Այդ գործում կարևոր դեր են խաղում սպառման հասարակական ֆոնդերից ստացվող եկամուտները: Այդ ֆոնդերի առանձնահատկություններից մեկն այն է, որ բաշխվում են հօգուտ ցածր շնչային եկամուտ ունեցող ընտանիքների: Առաջիկայում հասարակական ֆոնդերից ստացվող եկամուտները նույնպես արագ են աճելու: Քանի որ նվազ ապահովված են հատկապես բազմանդամ, բազմազավակ ընտանիքները, ուստի նպատակահարմար է առաջիկայում այդպիսի ընտանիքներին սպառման հասարակական ֆոնդերից դրամական վճարումների ձևով հատկացնել լրացուցիչ (ըստ շնչի) գումար: Գյուղական բնակչության (մասամբ և փոքր քաղաքների) մինիմումն ապահովելու գործում զգալի դեր կխաղա նաև անձնական օժանդակ տնտեսությունը:

Առաջիկա հնգամյակում երկրի տնտեսական կյանքի զարգացման հիմնական նպատակը կլինի բնակչության կենսամակարդակի էական բարձրացումը՝ զուգակցված մի շարք հրատապ պրոբլեմների լուծմամբ:



Ա. Ե. ՎԱՐԴԱՆՅԱՆ

# ԿՐԹՈՒԹՅԱՆ ՍՈՑԻԱԼԱԿԱՆ ԱՐԺԵՔՆ ՈՒ ԵՐԻՏԱՍԱՐԴՈՒԹՅԱՆ ՄԱՍՆԱԳԻՏԱԿԱՆ ԿՈՂՄՆՈՐՈՇՈՒՄԸ

Հասարակական կյանքում ամեն մի սոցիալական արժեք անհատի կամ կոլեկտիվների կողմից հիմնականում գնահատվում է երեք չափանիշով, որոնք բնորոշ են անձնավորության էությանը: Այսպես, անհատի համար կարևոր է հասարակության մեջ որոշակի դիրք գրավելը, հեղինակություն վայելելը, շրջապատի կարծիքի հետ հաշվի նստելը: Վճռական են նաև նյութական շահագրգռվածության, հոգևոր պահանջմունքների բավարարման, մասնագիտական գիտելիքների ձեռքբերման և այլ խնդիրներ:

Բնական է, որ սոցիալական արժեքների գնահատման նշված չափանիշները մարդկանց տարբեր խմբերի մոտ չեն կարող միատեսակ լինել: Այս կամ այն արժեքը մի դեպքում կարող է գնահատվել չափանիշների մի ամբողջ կարգով, մյուս դեպքում՝ միայն մեկով: Այս հանգամանքը պայմանավորված է անձնավորության հասարակական դիրքով, կրթական մակարդակով, ճաշակով, նպատակադրումներով, նրա անհատականության տարբեր հատկանիշներով: Սակայն գոյություն ունեն այնպիսի արժեքներ, որոնք տարբեր անհատներ, մարդկանց տարբեր խմբեր դրանք գնահատում են անհամեմատ ընդհանուր առումով, դիտում միևնույն չափանիշներով: Նման արժեքների մեջ հատկապես առանձնանում է կրթությունը: Այն աչքի է ընկնում գնահատման բազմակողմանիությամբ, դիտվում որպես և՛ հասարակական առաջընթացի ու նյութական բարեկեցության, և՛ որպես կուլտուրական պահանջմունքների բավարարման միջոց:

Մեր երկրում կրթությանը տրվող ունիվերսալ գնահատականի վկայությունն է միջնակարգ կրթության պարտադիր ուսուցման իրականացումը: Արդի պայմաններում միջնակարգ կրթությունը հասարակության կողմից դիտվում է որպես մարդու կենսագործունեության անհրաժեշտ պայման: Բավական է ասել, որ միջնակարգ դպրոցի շրջանավարտների ավելի քան 90 տոկոսը ցանկանում է շարունակել ուսումը: Այս հանգամանքը որոշակի հակասություններ է ծնում, մասնավորապես, ժողովրդական տնտեսության համար որակյալ կադրերի պահանջարկի և երիտասարդության՝ կրթություն ստանալու ձգտումների միջև: Այդ պատճառով երիտասարդության մի մասին չի հաջողվում իրականացնել փայփայած ծրագիրը:

Կրթության դերի պատշաճ դրվատումը ինքնըստինքյան առաջադիմական է, սակայն, երբեմն միակողմանի մոտեցման արդյունք: Բարձրագույն կրթությունը միշտ և ամենուր պետք է դրսևորվի մասնագիտական կրթությամբ: Բարձրագույն կրթության ձգտող անհատի նախասիրությունների հիմքում

պետք է ընկած լինի որոշակի մասնագիտական հետաքրքրություն, սեր հանդեպ տվյալ մասնագիտությունը։ Առանց մասնագիտական պատրաստականության, դժվար է պատկերացնել անհատի սոցիալական առաջադիմությունը։

Սակայն այս հանգամանքը հաճախ անտեսվում է, հաշվի չի առնվում. դրա վկայությունն է երիտասարդության մի մասի շրջանում արմատացած «միայն թե բարձրագույն կրթություն ստանամ» մտայնությունը։ Դրա արդյունքն այն է լինում, որ բարձրագույն կրթություն ստացածների մի մասը հիասթափվում է ընտրած մասնագիտությունից, մյուսը չի աշխատում ձեռք բերած մասնագիտությամբ, երրորդը փոխում է բուհը և այլն։

Հանրապետության մի շարք բուհերի աբիտուրիենտների մասնագիտության ընտրության դրդապատճառների ուսումնասիրության նպատակներից է գոյություն ունեցող միտումների կամ հակումների բացահայտումը։ Ապացուցելու հարկ չկա, որ աբիտուրիենտի գիտելիքներն ու հոգևոր մակարդակը ձևավորվում են սոցիալական այն միջավայրում, ուր ընթացել է նրա կյանքը։ Միջնակարգ դպրոցի երեկվա շրջանավարտը բուհ է դիմում, հիմնականում ելնելով հետևյալ պայմաններից, որոնք պայմանականորեն կարելի է անվանել օբյեկտիվ և սուբյեկտիվ։ Առաջինի գոյությունն անկախ է աբիտուրիենտի կամքից։ Հասարակությունը, ժողովրդական տնտեսությունը պահանջում են որոշակի բարձր պատրաստականության, կրթված մասնագետներ։ Դրա մեջ են մտնում նաև այդ պահանջարկի կոնկրետ չափը, նախատեսվող ուսանողական տեղերի քանակը։ Օբյեկտիվ են նաև աբիտուրիենտի ձևավորման վրա սոցիալական պայմանների ազդեցությունը, շրջապատի ներգործությունը (ծնողի կրթությունը, մասնագիտությունը, դպրոցում ուսման դրվածքը) և այլն։ Էական է աբիտուրիենտի ցանկությունների, հետաքրքրությունների ունակությունների հաշվառումը, այսինքն սուբյեկտիվ մոմենտը։

Հոդվածում սոցիոլոգիական տեսանկյունից քննված են մասնագիտության ընտրության կուլմինացիայի պահին անհատի վերջնական որոշումը, աբիտուրիենտի գիտելիքների մակարդակը, ցանկությունները, դրանց առաջացման հիմքերը։

1969 թ. բուհերի ընդունելության քննաշրջանում հարցաթերթիկային հետազոտման ենթարկվեցին Երևանի երեք բուհերի՝ համալսարանի, պոլիտեխնիկական և գյուղատնտեսական ինստիտուտների 928 աբիտուրիենտ։ Հետազոտության օբյեկտի նման ընտրությունը պայմանավորված է նրանով, որ նշված երեք բուհերը գրեթե ապահովում են մասնագիտությունների ճյուղային պատկանելությանը ներկայացվող պահանջները, այսինքն՝ այնտեղ կադրեր են պատրաստվում հանրապետության ժողովրդական տնտեսության գրեթե բոլոր առաջնակարգ ճյուղերի համար։ Օբյեկտի ընտրությունը հավակնում էր ապահովել նաև գիտությունների հիմնական ճյուղերի առկայությունը։

Հետազոտության հիմնական նպատակն էր՝ բացահայտել մասնագիտության ընտրության օրինաչափությունները— հիմնական դրդապատճառները, աղբյուրները, ժամկետները, ինչպես նաև երիտասարդության վարքագիծը, այսպես կոչված՝ կոնֆլիկտային իրավիճակում, երբ ենթադրվում էր, որ մարդը չի կարող ստանալ նախասիրած մասնագիտությունը։ Հետազոտության առավել ընդհանուր հիպոթեզն էր՝ տարբեր անհատականությունների առկայությունը, սոցիալ-տնտեսական միատարր պայմանները, դեմոգրաֆիկ իրավիճակի և այլնի ընդհանրությունը, ենթադրում են երիտասարդության առանձին խմբերի վարքագծի նմանություն։ Դրա հաստատման կամ ժխտման



հիման վրա հնարավոր է բացահայտել երիտասարդության տարբեր խմբերի վարքագծի և մտադրությունների հիմնական միտումներն ու ուղղությունները։

Հետազոտված խմբի տիպավորման հիմնական գծերը բնութագրվում են հետևյալ ցուցանիշներով. ըստ սեռի՝ 61,2 տոկոսը տղա, 38,8-ը՝ աղջիկ, ըստ տարիքի՝ 71,9 տոկոսը 16—18 տարեկան, 19-ը՝ 19—20, մնացած 9,1 տոկոսը 21 տարեկան և ավելի։ Ըստ բնակավայրի՝ 44,9 տոկոսը Երևանից է, 2,6-ը՝ Լենինականից, 1—5-ը՝ Կիրովականից, 15,5-ը՝ այլ քաղաքներից և 35,5-ը՝ գյուղական վայրերից։ Ըստ սոցիալական ծագման կոնտինգենտը հետևյալ պատկերն ունի. բանվորների ընտանիքներից՝ 31,1 տոկոսը, կոլտնտեսականների՝ 15,6, ծառայողների՝ 20,8, մտավորականության (գյուղական և քաղաքային)՝ 19,3, թոշակառուների՝ 9,5 և այլ զբաղմունք ունեցողների՝ 3,7։

Այժմ քննենք, թե մասնագիտության ընտրության գործում ինչ դրդապատճառներ են դեր խաղում։ Դրա համար զննենք ստորև բերվող աղյուսակը։

Մասնագիտության ընտրության դրդապատճառները
(տոկոսներով)

| Դրդապատճառները | Հետազոտվածների բաշխումն ըստ դրդապատճառների | | |
|---|---|---|---|
| | Տեսակարար կշիռը | Դրդապատճառները նշողները | |
| | | տղա | աղջիկ |
| Հասարակության մեջ մասնագիտության հեղինակությունը | 17;5 | 92,3 | 7,7 |
| Բարձր աշխատավարձը | 4,9 | 78,4 | 21,6 |
| Աշխատանքի մտավոր, ստեղծագործական բնույթը | 38,8 | 51,2 | 48,8 |
| Մասնագիտությունը կարող է տալ առաջընթացի լավ հեռանկարներ | 31,5 | 64,5 | 35,5 |
| Այս ֆակուլտետում ընդունվելը հեշտ է | 5,4 | 78,0 | 22,0 |
| Մասնագիտությունն ընտրել եմ պատահաբար, հանգամանքների բերումով | 2,4 | 33,3 | 66,7 |
| Այլ պատճառներ | 0,4 | 58,8 | 41,2 |

Մասնագիտության ընտրության դրդապատճառների մեջ նախընտրելին աշխատանքի մտավոր, ստեղծագործական բնույթն է (38,8 տոկոս)։ Ընդ որում, այն գրեթե հավասար է բաշխվում տվյալ դրդապատճառը նշող տղաների ու աղջիկների մոտ (համապատասխանաբար՝ 51,2 և 48,8 տոկոս)։ Այդ համամասնությունը գրեթե նույնն է հետազոտված ամբողջ կոնտինգենտի մոտ։ Այս դրդապատճառը նշել է նրանց 19 տոկոսը։

Եթե ըստ սեռի վերոհիշյալ դրդապատճառը երիտասարդության համար հավասարակշիռ է, ապա դրությունն էապես փոխվում է ըստ բնակավայրի հարցը քննելիս։ Դրդապատճառը նշողները զատզատվում են այսպես. խոշոր քաղաքներից՝ 54,1 տոկոսը, փոքր և միջին՝ 16,6 և գյուղական վայրերից՝ 29,3 տոկոսը։ Հետազոտությունից պարզվում է, որ այդ դրդապատճառը գյուղական երիտասարդության 11,2 տոկոսին է ուսման մղում, իսկ քաղաքայինի՝ 27,6։

Այսպիսով, եթե ըստ սեռի մասնագիտության մտավոր, ստեղծագործա-

կան բնույթը գնահատվում է գրեթե հավասար, ապա այդ բանն առավել քիչ է հետաքրքրում գյուղական երիտասարդությանը, քան քաղաքայինը։ Դրությունը գրեթե նույնն է սոցիալական ծագման տեսանկյունով դիտելիս. կոլտնտեսականների երեխաները կազմում են խմբի 11,6 տոկոսը, բանվորների երեխաների 32,4 և ծառայողների 21,2 տոկոսի դիմաց։

Գյուղական երիտասարդությանը հրապուրում է սոցիալական առաջընթացի հեռանկարը (այն իր նշանակությամբ երկրորդն է ընդհանրապես հետազոտվածների համար)։ Երբ մոտեցումը համադրվում է սոցիալական շերտափոխության ռեալ պրոցեսին, ապա դրանք դառնում են մեր հասարակության սոցիալական խավերի վերընթաց առաջխաղացման պերճախոս վկաները. ոչ մի անհատ դատապարտված չէ առմիշտ մնալու այն սոցիալական խմբի շրջանակում, որի արգասիքն է։ Սոցիալիստական հասարակարգում յուրաքանչյուրի համար ըստ ունակությունների առկա են սոցիալական վերընթացի հնարավորությունները։

Այստեղ անհրաժեշտ է հաշվի առնել մի շատ կարևոր խնդիր. բնակչության ուրբանիզացիան կամ գյուղական բնակչության վերածումը քաղաքայինի։ Ուրբանիզացիան կարող է ընթանալ երկու ձևով. նախ՝ գյուղական բնակչության հոսքով դեպի քաղաք, ապա՝ գյուղում ապրելակերպի քաղաքայնացմամբ։ Ուրբանիզացման երկու ձևերի միջև հարաբերակցությունը եթե ոչ այժմ, ապա ոչ հեռու ապագայում, հատկապես մեր հանրապետության համար, կարող է ստանալ կենսական նշանակություն։ Պրոբլեմի այսպիսի շեշտումը պատահական չէ։ Հայաստանը պատկանում է երկրի այն շրջանների թվին, որտեղ նշված պրոցեսն ընթանում է բավական ինտենսիվ, ընդ որում, գերազանցությունը տրվում է առաջինին։ Եթե այդպես շարունակվի, ապա կարճ ժամանակ անց գյուղում խիստ կպակասի աշխատունակ բնակչությունը։ Մինչդեռ, Հայաստանի գյուղատնտեսությունը տնտեսական և բնակլիմայական որոշակի պայմանների թելադրանքով այնպիսի ուղղությամբ է զարգանում, որ ստեղծված կարևոր ճյուղերը բնութագրվում են բարձր աշխատատարությամբ։ Նման պայմաններում աշխատանքային ռեսուրսների, հատկապես երիտասարդության ամրացումը գյուղին, ստանում է կարևոր նշանակություն։

Ակներև է, որ քաղաքում ուսումը շարունակելու գյուղական երիտասարդության զգալի մասի ցանկությունները կարող են չիրականանալ։ Սակայն երիտասարդության հոսքը գյուղից քաղաք կատարվում է ո՛չ միայն սովորելու բուռն ցանկությամբ։ Գյուղական երիտասարդության որոշ մասն աշխատանք է գտնում քաղաքում, մյուսը՝ գյուղատնտեսական աշխատանքների եռուն շրջանում դիմում է ժամանակավոր արտագնացության։

Այս ամենը հրամայաբար առաջ է քաշում երիտասարդությանը գյուղին կապելու դժվարին խնդիրը, որի լուծումը տևական աշխատանք է պահանջում։ Ինչ խոսք, կառավարության կողմից ձեռնարկվում են միջոցներ (որոշ շրջաններում միջնակարգ-մասնագիտական ուսումնական հաստատությունների, նույնիսկ բուհի (մանկավարժական ինստիտուտի Գորիս քաղաքի մասնաճյուղ) ստեղծումը, նյութական շահագրգռվածության բարձրացումը և այլն)։

Չնայած դրան, անելիքներ շատ կան։ Հատկապես պետք է ուշադրություն նվիրվի գյուղատնտեսական աշխատանքների մեքենայացմանը՝ վերջիններս արդյունաբերական աշխատանքի բնույթին մերձեցնելու նպատակով։ Գյուղում պետք է բարելավվել երիտասարդության կուլտուր-կենցաղային սպասարկումը, հանգստի ու ժամանցի կազմակերպումը, ինչպես նաև ապահովել



սոցիալ-տնտեսական այլ շատ հարցերի լուծումը։ Միայն այս դեպքում հնարավոր կլինի թուլացնել գյուղական երիտասարդության հոսքը քաղաք։

Այսպիսի հարցադրումը չպետք է միակողմանի ընկալել. դա չի նշանակում, որ գյուղական բնակչությունը պետք է միշտ գյուղում մնա։ Խնդիրն այն է, որ նա ամրացվի իր բնակավայրին, հողին, իսկ գյուղն իր ապրելակերպով, տեսքով, կուլտուրական արժեքներով մոտենա քաղաքի մակարդակին։ Քաղաքի հետ շփումը մեծացնելու, մամուլի, ռադիոյի, հեռուստատեսության, կենցաղում սկսված վերափոխումների շնորհիվ գյուղական բնակչության ապրելակերպը մոտենում է քաղաքայինին։ Դրանց պակասությունն է ամենահիմնական պատճառը, որ գյուղը չի բավարարում արդի երիտասարդության մշտապես աճող բազմապիսի պահանջմունքները։ Խնդրին անհրաժեշտ է մոտենալ գերազանցապես այս տեսանկյունով։

Ուսումնասիրությունների արդյունքները ցույց են տալիս, որ երիտասարդության համար կարևոր նշանակություն ունի մասնագիտության հեղինակությունը։ Այդ դրդապատճառը նշել է հետազոտված կոնտինգենտի 17,5 տոկոսը։ Առավել հետաքրքրական փաստն այստեղ այն է, որ նրանց ճնշող մեծամասնությունը (92,3 տոկոսը) տղաներ են։

Երիտասարդության պատկերացմամբ հասարակության մեջ առավել հեղինակավոր են համարվում գիտության ու արտադրության նորագույն ճյուղերի հետ կապված սոցիալական որոշակի առաջընթաց ապահովող մասնագիտությունները։ Դա հաստատվում է այն փաստով, որ դրդապատճառը նշողների մոտ զգալի տեսակարար կշիռ են կազմում տեխնիկական (16,9 տոկոսը) և տնտեսական (11,3 տոկոսը) կիբեռնետիկայի, ինչպես նաև տնտեսագիտության (14,5 տոկոսը) գծով սովորել ցանկացողները։

Թերևս անսպասելի չէ այն, որ «հասարակության մեջ մասնագիտության ունեցած հեղինակությունը» դրդապատճառն առավել ընդգծված է գյուղական երիտասարդության շրջանում (մոտ 70 տոկոսը)։ Ըստ երևույթին, դա ավելի շատ հոգեբանական գործոնի ազդեցության հետևանք է։ Թերևս այստեղ իր մեծ դերն ունի այն, որ գյուղական շրջաններում, ուր համեմատաբար փոքր է հեղինակավոր անձանց հետ գյուղական երիտասարդության շփման շրջագիծը, մասնագիտության հեղինակության հատկանիշն ավելի բարձր գնահատականի է արժանանում։ Քաղաքային երիտասարդության հաճախակի շփումը հեղինակավոր մասնագիտություններ ունեցող անձանց հետ կարծես սովորական է դառնում և մասնագիտության ընտրության այս շարժառիթը նրանց մոտ համեմատաբար թույլ է դրսևորվում։ Ինչևէ, մասնագիտության հեղինակության հարցը գյուղական երիտասարդության մոտ գնահատվում է անհամեմատ բարձր։

Ինչպես տեսնում ենք, երիտասարդության ճնշող մեծամասնությունը (87,8 տոկոսը) մասնագիտության ընտրությունը կատարում է այնպիսի դրդապատճառներով, որոնք իրոք բնութագրում են երիտասարդության առաջադիմական նկրտումները, ստեղծագործական ու հեղինակավոր մասնագիտություն ստանալու վսեմ ձգտումները։ Այս ֆոնի վրա առանձնապես նսեմանում է բարձր աշխատավարձի հետ կապված շարժառիթի դերը։ Հետաքրքրական է, որ երիտասարդության ընդամենը 4 տոկոսն է այն նշել։ Այստեղ ևս գերակշռում է տղաների տեսակարար կշիռը։ Դա խոսում է տղաների կողմից իրենց վիճակված տնտեսական դերի գիտակցման մասին։ Դրա շարժառիթն այն է, որ բարձր աշխատավարձի գերադասումը հատուկ է մեծահա-

ժակներին։ Այսպես, եթե այդ շարժառիթը նշող 16—18 տարեկանները կազմում են 20—25 տոկոսը, ապա 21 տարեկանները՝ մոտ 60։ Դա նշանակում է, որ երիտասարդության հասունացմանը զուգընթաց փոխվում են սոցիալական արժեքների գնահատման չափանիշները։ Ինքնուրույն կյանքը, ընտանիք կազմելը կամ դրա հեռանկարը, տնտեսապես անկախ լինելը, հասուն մարդու աչքում բնականաբար մեծացնում է եկամտի դերը և նշանակությունը։ Սակայն, այսպես թե այնպես, աշխատավարձի շարժառիթը երիտասարդության ճնշող մեծամասնության շրջանում ունի ոչ-առաջնակարգ նշանակություն։

Բուհերի ընդունելության մրցույթին, ժամանակակից պայմաններում, երբ կան աբիտուրիենտների խիստ ընտրության օբյեկտիվ հնարավորություններ, այս կամ այն ֆակուլտետը հեշտ ընդունվելու վերաբերյալ հարցը պետք է դիտել միայն հարաբերականորեն։ Այսինքն՝ որևէ առարկայից գիտելիքների բարձր մակարդակի դեպքում համեմատաբար հեշտ կլինի ընդունվել այն ֆակուլտետը, որտեղ հանձնելիք առարկաները համընկնում են առաջիններին։ Այս առումով, համապատասխան դրդապատճառը նշած աբիտուրիենտի վերաբերմունքը որոշ իմաստով կարելի է դիտել որպես իրենց գիտելիքների մակարդակի գիտակցում (այդ շարժառիթը նշել է հետազոտվածների 5,4 տոկոսը)։ Այնուհանդերձ, այս հարցում բացահայտվում է այն միտումը, որ ընդունվելը հեշտ համարողների մեծ մասը դիմել է հումանիտար ֆակուլտետներ։ Դա բացատրվում է հումանիտար առարկաների համեմատաբար հեշտ ընկալմամբ։ Թերևս դա է այն բանի պատճառներից մեկը, որ բուհերի հումանիտար ֆակուլտետների մրցույթը զգալիորեն մեծ է, քան տեխնիկական, ֆիզիկա-մաթեմատիկական և ոչ-հումանիտար մյուս ֆակուլտետներում։

Երիտասարդության մի ոչ մեծ խումբ (2,4 տոկոսը) նշել է, որ մասնագիտությունն ընտրել է պատահաբար, հանգամանքների բերումով։ Այս խմբի սահմանափակ լինելն ամենևին էլ չի նշանակում, թե երիտասարդության մնացած մասի կողմից մասնագիտության ընտրությունը բոլոր տեսակետներից պատճառաբանված ու հիմնավոր է։ Այն հանգամանքը, որ աբիտուրիենտների զգալի մասը անկարող է բուհ ընդունվել դիմած մասնագիտության գծով՝ թեկուզ միայն ուսանողական տեղերի սահմանափակության պատճառով, վկայում է նրանց կողմից սեփական գիտելիքների, հնարավորությունների ոչ-ճիշտ գնահատման մասին։ Աբիտուրիենտների միջև տեղի ունեցող մրցակցությունը բացահայտում է նրանց որոշ մասի համեմատաբար թույլ գիտելիքները։ Դա ցույց է տալիս, որ դպրոցի շրջանավարտների մի մասը ոչ միայն չի կարողացել յուրացնել բուհ ընդունվելու համար անհրաժեշտ գիտելիքներ, այլև անկարող է գիտակցել իր անպատրաստ լինելը։ Այս հանգամանքը, իր հերթին, խոսում է այն մասին, որ երիտասարդության այդ խումբը օբյեկտիվ պատկերացում չունի բուհ ընդունվելու համար անհրաժեշտ գիտելիքների մակարդակ ձեռք բերելու մասին։ Չնայած դրան, երիտասարդության մի մասն էլ չի հաշտվում այն մտքի հետ, որ չի ընդունվելու բուհ և պատրաստ է հաջորդ տարի նորից փորձել ընդունվելու նույն կամ այլ մասնագիտության գծով։

Հետազոտության հարցաթերթիկի այն հարցին, թե «ի՞նչ եք մտադիր անել, եթե այս տարի Ձեզ չհաջողվի բուհ ընդունվել», աբիտուրիենտների բացարձակ մեծամասնությունը (94,3 տոկոսը) պատասխանել է, որ հաջորդ տարի նորից կփորձի ընդունվել։ Կոնֆլիկտային իրադրության մեջ երիտասարդության մտադրությունները բնորոշվում են այսպես. հետազոտվածների



43,3 տոկոսը նշում է, որ չընդունվելու դեպքում չի աշխատելու և հաջորդ տարի կփորձի ընդունվել նույն մասնագիտությամբ, 2,4 տոկոսը՝ այլ մասնագիտությամբ, 43,8 տոկոսը մտադիր է անցնել աշխատանքի և հաջորդ տարի կջանա ընդունվել նույն մասնագիտությամբ, 4,6 տոկոսը՝ այլ մասնագիտությամբ, իսկ մնացած 5,9 տոկոսը նշել է այլ մտադրություններ։

Առաջին հանգամանքը, որ աչքի է զարնում, երիտասարդության մասնագիտական հակումների կայունությունն է։ Ինչպես տեսնում ենք, նրանց ճնշող մեծամասնությունը՝ 87,1 տոկոսը, նշում է, որ այս տարի չընդունվելու դեպքում հաջորդ տարի կկրկնի իր ընտրությունը՝ կփորձի ընդունվել նույն մասնագիտությամբ։

Մասնագիտությունը փոխելու մտադրություն է հայտնում երիտասարդության անհամեմատ սահմանափակ մասը՝ 7 տոկոսը։ Ընդ որում նրանց ճնշող մեծամասնությունը կազմում են հումանիտար ֆակուլտետ դիմողները. բնորոշ է այն փաստը, որ մասնագիտական հակումը, հասակի հետ կապված, սկսում է կորցնել իր կայունությունը։ Մասնագիտությունը փոխել ցանկացողների ավելի քան 70 տոկոսն ունի 19-ից բարձր տարիք այն դեպքում, երբ տարիքային այս խումբը կազմում է հետազոտված կոնտինգենտի 30 տոկոսից պակաս մասը։

Ուշադրության արժանի է այն փաստը, որ երիտասարդության մոտ կեսը մտադիր է չընդունվելու դեպքում չաշխատել և նորից պատրաստվել հաջորդ ընդունելությանը։ Չնայած մոտեցումը երևակայական է և կարող է ապագայում փոխվել, այնուհանդերձ այն մոտ է իրերի փաստացի վիճակին։ Այսպես, նախորդ տարիներին դպրոցն ավարտած և 1969 թ. բուհ դիմած աբիտուրիենտների 31,6 տոկոսը անցած մեկ տարում չի աշխատել։

Միայն այս փաստից ակնհայտ է դառնում մասնագիտության ընտրության ժողովրդատնտեսական հսկայական նշանակությունը։ Եթե մարդը դպրոցն ավարտելուց հետո չի կարողանում շարունակել ուսումը և չի անցնում աշխատանքի, ապա, մի կողմից՝ վատնվում է ուսման համար նրա վրա ծախսած հասարակական միջոցների մի մասը, մյուս կողմից՝ ժողովրդական տնտեսությունը տվյալ դեպքում զրկվում է հանրակրթական բարձր մակարդակ ունեցող աշխատանքային ռեսուրսների օգտագործման հնարավորությունից։ Մինչդեռ, նման կորուստները հնարավոր կլիներ մինիմումի հասցնել, եթե երիտասարդությունն ինքնուրույն կյանք մտներ՝ իր կողմից ընտրելիք զբաղմունքի և մասնագիտության նկատմամբ լրիվ կողմնորոշված։

Այս հարցում մեր խնդիրը պետք է լինի ոչ թե քննադատել երիտասարդության ուսանելու ձգտումը և միջնակարգ կրթություն ստանալուց հետո նրան դրդել միայն աշխատանքի, այլ հասնել այն բանին, որ յուրաքանչյուր անհատ օբյեկտիվորեն գիտենա սեփական ունակությունները՝ ուսումը շարունակելու գործում։ Երիտասարդության այն մասը, որն անկարող է բարձրագույն կամ միջնակարգ մասնագիտական կրթություն ստանալ, պետք է սկսի աշխատել նախասիրած, իր հակումներին համապատասխան մասնագիտությամբ։



# ԿՈՒՍԱԿՑԱԿԱՆ ԿՅԱՆՔ

## ՀԱՐՍՏԱՑՆԵԼ ԿՈՒՍՇԻՆԱՐԱՐՈՒԹՅԱՆ ՏԵՍՈՒԹՅՈՒՆՆ ՈՒ ՊՐԱԿՏԻԿԱՆ

*Վերջին տարիներին կուսակցական շինարարության տեսաբաններն ու հետազոտողները որոշ թվով մենագրություններ, գրքույկներ ու հոդվածներ են հրատարակել կուսակցական շինարարության տեսության ու պրակտիկայի տարբեր հարցերի վերաբերյալ։ Հրապարակի վրա կան նաև կուսակցական պրակտիկ աշխատողների գրած գրքեր և բրոշյուրներ, որոնք, անշուշտ, կարևոր ներդրում են կուսակցական շինարարության պատմագրության մեջ։ Կուսակցական շինարարության առանձին հարցերի մասին մի քանի գրքույկներ են հրատարակվել նաև մեր հանրապետությունում։ Սակայն ստեղծվածը բավարար չէ, և հրապարակի վրա դեռևս հատուկենտ են այն մենագրությունները, որոնցում ընդհանրացված, տեսականորեն իմաստավորված է կուսշինարարության փորձը։*

*Ընդառաջելով ղեկավար կադրերի, կուսակցական աշխատողների և կոմունիստների բուռն հետաքրքրությանը կուսշինարարության հարցերի նկատմամբ՝* «Вопросы истории КПСС» *ամսագրի խմբագրությունը 1969 թվականից կարևոր նախաձեռնություն հանդես բերեց՝ քննարկման առարկա դարձնելով կուսակցական շինարարության պրոբլեմների ու խնդիրների հետազոտման, դասավանդման և պրոպագանդման հարցերը*[1]*։*

*Կուսակցական շինարարությունը նոր տիպի կուսակցության մասին մարքս-լենինյան ուսմունքի բաղկացուցիչ մասն է։ Այն գիտություն է մարքսիստական-լենինյան կուսակցության գործունեության կառուցման և կազմակերպական օրինաչափությունների, ներկուսակցական կյանքի բովանդակության ու նորմերի, մասսաների մեջ տարվող քաղաքական, գաղափարական և կազմակերպական աշխատանքի ձևերի ու եղանակների, տնտեսական և կուլտուրական շինարարության, պետական ու հասարակական կազմակերպությունների կուսակցական ղեկավարության սկզբունքների և մեթոդների մասին։ Կուսակցական շինարարության առարկան օրգանապես կապված է կուսակցության պատմության հետ։ Այն դասավանդվում է բարձրագույն կուսակցական ու կուսակցական-սովետական դպրոցներում, մարքսիզմ-լենինիզմի երեկոյան մի շարք համալսարաններում, կուսակցության քաղաքային ու շրջանային կոմիտեներին կից գործող կուսակտիվի քաղաքային ու շրջանային դպրոցներում։ Կոմունիստները կուսշինարարության տեսության և պրակտիկայի իրենց գիտելիքները հարստացնում են գիտական սեսիաներում, կուսակցական լուսավորության ցանցի սիստեմում, մշտական գործող դասընթացներում, սեմինարներում, տեսական կոնֆերանսներում, երիտասարդ կոմունիստների դպրոցներում, կուսակցական ժողովներում և այլուր։*

*Կուսշինարարության խնդիրներն ու նպատակները լայն ու բազմակողմանի են, հետազոտության պրոբլեմները՝ բազմաթիվ։*

*ՍՄԿԿ Կենտկոմը, կենսագործելով կուսակցության XXIII համագումարի դիրեկտիվները, կուսկազմակերպությունների ուշադրությունը բևեռեց քաղաքական, տնտեսական ու գաղափարական հանգուցային պրոբլեմների, կուսակցական աշխատանքի ձևերի և մեթոդների, ղեկավարման ոճի կատարելագործման վրա։ Այդ են վկայում Օրեխովո-Զուևոյի՝ Կ. Նիկոլաևայի անվան բամբակե գործվածքեղենի կոմբինատի (1966 թ.), Վորոնեժի մարզի Զոնինսկի շրջանի Միխայլովսկի սովխոզի (1967 թ.) կուսկոմիտեների, ՍՄԿԿ Օմսկի մարզկոմի (1967 թ.), Լիպեցկի մարզի Դոբրինինսկի շրջկոմի (1969 թ.), Մոսկվայի պետհամալսարանի կուսկոմիտեի (1969 թ.) աշխատանքների վերաբերյալ կուսակցության Կենտրոնական կոմիտեի որոշումները։*

*ՍՄԿԿ Կենտկոմի 1969 թվականի դեկտեմբերյան պլենումը, խոր ու բազմակողմանի վերլուծելով երկրի տնտեսության վիճակն ու զարգացման հեռանկարները, նշեց կուսակցության քաղաքական ու կազմակերպական աշխատանքի խնդիրները կոմունիստական շինարարության ժամանակակից փուլում, երբ կոմունիզմի կառուցման կարևորագույն պայմանը նրա նյութատեխնիկական բազայի ստեղծումն է։ Կուսակցությունն առաջադրում է հասունացած նոր խնդիրներ, ժողովրդին մղում աշխատանքային նորանոր սխրանքների։ Այս տեսակետից հետզհետե բարդանում են մեր տնտեսական խնդիրները, աճում դրանց մասշտաբները, որոնք հրամայաբար պահանջում են փոխել ու կատարելագործել կուսակցական աշխատանքի մեթոդներն ու ձևերը, բարձրացնել կուսակցության շրջկոմների, քաղկոմների, սկզբնական կազմակերպությունների դերն ու ազդեցությունը աշխատավորների շրջանում։*

*Ինչպես ամբողջ Միության մեջ, այնպես էլ Հայաստանում, արմատավորվում է տնտեսական ռեֆորմը՝ արդյունաբերության պլանավորման և նյութական խթանման նոր սիստեմը։ Անշուշտ, տնտեսական ռեֆորմին անցնելուց հետո, կուսակցական շատ կազմակերպություններ ձեռք են բերել որոշակի հաջողություններ և զգալի ավանդ են ներդնում հանրապետության էկոնոմիկայի հետագա զարգացման գործում։ Կուսակցությունը նախազգուշացնում է, որ տնտեսական ռեֆորմը ինչ-որ մոգական գավազան չէ, որի շնորհիվ հաջողությունները հրաշքով ծնվեն, այն կապված է կազմակերպական, քաղաքական և գիտատեխնիկական կոմպլեքս միջոցառումների իրականացման հետ։ Տնտեսական ռեֆորմի իրագործման ամբողջ պատասխանա-*

[1] *Տես՝* **С. А. Смирнов** «Важнейшие проблемы партийного строительства, как науки» (№ 5). **Л. А. Слепов** «О некоторых методологических проблемах партийного строительства» (№ 6). **Г. С. Назаров** «Место и значение проблемы научного руководства обществом в курсе «Партийное строительство» (№ 8). **Г. К. Ковалев** «О некоторых вопросах методики преподавания партийного строительства» (№ 9). **А. А. Мирцхулава** «О принципе историзма в партийном строительстве» (№10). **П. М. Елнистратов** «О научном обобщении опыта местных парторганизаций» (№ 12).

տվությունն ընկնում է կուսկազմակերպությունների վրա։ Նրանք պետք է իրենց կազմակերպական, քաղաքական-մասսայական աշխատանքի մեթոդներն ու ձևերը համապատասխանեցնեն նոր խնդիրների մակարդակին։ Այժմ պահանջվում է առաջին պլանի վրա դնել արտադրության արդյունավետության բարձրացման հարցը։ Տնտեսական այնպիսի կատեգորիաներ, ինչպես՝ օգուտը, արտադրանքի իրացումը, շահութաբերությունը, ֆոնդահատույցը և այլն, այժմ դարձել են ամբողջ արտադրական կոլեկտիվի, նրա յուրաքանչյուր անդամի մտահոգության առարկան։ Այդ տեսակետից էլ կուսկազմակերպությունները պետք է լիովին իրականացնեն կանոնադրական այն պահանջները, որոնք վերաբերում են կոմունիստների պատասխանատվության բարձրացմանը, անողոք լինեն անտնտեսվարության, տեղայնության յուրաքանչյուր երևույթի, ձեռնարկության և պետության շահերի անտեսման նկատմամբ։

Կուսակցական օրգանները, սակայն, չպետք է փոխարինեն տնտեսական օրգաններին, միջամտեն նրանց գործնական ֆունկցիաներին։ Բայց դա չպետք է հասկանալ միակողմանի։ Ինչպես հայտնի է, քաղաքականությունը և էկոնոմիկան պայմանավորված են միմյանցով, հետևաբար, չտարվելով տնտեսական մանր, երկրորդական հարցերով, կուսակցական օրգանները չպետք է իրենց հեռու պահեն տնտեսական գործերից, թուլացնեն պահանջկոտությունը և վերահսկողությունը այդ օրգանների նկատմամբ։

ՍՄԿԿ կանոնադրությունը կոմունիստներին պարտավորեցնում է մշտապես պատասխանատու զգալ կուսակցության առաջ՝ իրենց աշխատանքի, հասարակական գործունեության, վարվեցողության համար, միշտ դրական օրինակ ծառայել աշխատավորական լայն մասսաներին։

Կոմկուսակցությունը, հենվելով կազմակերպական և քաղաքական աշխատանքի հսկայական փորձի վրա, իր անդամների, սովետների, կուսխմբերի, պետական հիմնարկությունների սկզբնական կուսկազմակերպությունների միջոցով անմիջականորեն իրագործում է ղեկավարման իր ֆունկցիաները, ապահովում պետական կառավարման օրգանների նորմալ գործունեությունը։

Միանգամայն օրինաչափ է, երբ կուսակցական աշխատանքից աշխատողներին տեղափոխում են պետական ապարատ և, ընդհակառակը։ Հասկանալի է, որ սովետական ապարատի աշխատողները կուսակցական ապարատում ձեռք են բերում քաղաքական անհրաժեշտ իմացություն, կուսակցական կոփվածություն և հասարակական գործունեության փորձ։ Բայց հաճախ սովետական աշխատողները իրենց հետ տանում են ղեկավարման պետական վարչական մեթոդներ և դաստիարակման, համոզման փոխարեն օգտագործում կառավարման վարչական ձևեր։ Այս տեսակետից շատ կարևոր է կուսակցական և սովետական կադրերի դաստիարակությունը. նրանց պետք է սովորեցնել ղեկավարման, մարդկանց հետ վարվելու, աշխատելու արվեստը։

Կուսկազմակերպությունները և նրանց ղեկավար օրգանները տնտեսական, պետական և կուլտուրական շինարարության գործերի բարելավմանը նպաստում են մասսաների մեջ կազմակերպական և քաղաքական աշխատանքի, կադրերը գործնական ու քաղաքական հատկանիշներով ընտրելու և առաջ քաշելու, ադմինիստրացիայի գործունեության նկատմամբ վերահսկողություն իրականացնելու, բոլոր կոմունիստներին կուսակցության գործի հանդեպ հավատարմության ոգով դաստիարակելու միջոցով։

Կուսակցության գործունեության մեջ գլխավորը հասարակության քաղաքական ղեկավարումն է։ Կուսակցությունն իր գործունեությունը խարսխում է



դեմոկրատական ցենտրալիզմի, դեմոկրատիայի, կոլեկտիվ ղեկավարության և հասարակության կառավարման խնդիրներն աշխատավորական լայն մասսաների հետ քննարկելու վրա։ Այդ տեսակետից կարևոր նշանակություն ունի կուսակցական ժողովների, բյուրոների, պլենումների, ակտիվների լավ նախապատրաստումը և հարցերի կոլեկտիվ քննարկումը։

Սակայն, որոշ կուսկազմակերպություններ, ղեկավար օրգաններ անհրաժեշտ ուշադրություն չեն նվիրում այդ կարևոր բնագավառներին, որի պատճառով հաճախ ժողովներում, կուսկոմիտեների ու բյուրոների նիստերում, նույնիսկ շրջկոմների պլենումներում հարցերի քննարկումը ձևական բնույթ է կրում, չի հասնում իր նպատակին։

Բազմաթիվ կուսկազմակերպություններում, ինչպես նաև առանձին շրջկոմներում վատ են օգտագործվում ակտիվի, հատկապես, շրջկոմի և նրա բյուրոյի անդամների ուժերը։ Հաճախ այդ ընտրովի օրգաններում ընդգրկված կոմունիստների նշանակալի մասը գրեթե չի մասնակցում հարցերի նախապատրաստմանն ու քննարկմանը. նրանցից շատերը գերադասում են միայն լսել ու լռել. այսպես ասած, «պատվավոր անդամներ» են։

Միության մի շարք կուսկազմակերպություններում հարցերը կոլեկտիվ նախապատրաստելու և քննարկելու, կոմունիստներին և ակտիվին այդ գործում ներգրավելու դրական փորձ կա, որը պետք է ընդօրինակել։ Օրինակ, Չելյաբինսկ քաղաքի Սովետական կուսշրջկոմը, նախապատրաստելով «Կուսկազմակերպությունների խնդիրները աշխատանքի գիտական կազմակերպման համար մղվող պայքարում» հարցը, ուսումնասիրել էր 16 կազմակերպության աշխատանքը, նիստից 10—12 օր առաջ նյութերն ընդհանրացրել և ուղարկել պլենումի բոլոր անդամներին։ Նրանք, իրենց հերթին, այդ նյութերին ծանոթացրել են սկզբնական կուսկազմակերպությունների քարտուղարներին, լսել նրանց խորհուրդները տվյալ հարցի մասին։ Դրանով շրջկոմի պլենումի անդամներին հնարավորություն է տրվել ավելի խոր ծանոթանալու քննարկվող հարցին և գործնական դիտողություններ ու առաջարկություններ անելու (Н. Родионов. Об эффективности партийной работы. М., 1969, стр. 77)։

Շատ կարևոր է կուսակցական հանձնարարությունների ճիշտ բաշխումն ըստ կոմունիստների պատրաստականության, փորձի, հակումների, անհատական ունակությունների։ Բայց հաճախ լինում են դեպքեր, երբ կոմունիստների մի մասը գերծանրաբեռնվում է հասարակական պարտականություններով, իսկ մյուսը երկար ժամանակ կուսակցական հանձնարարություններ չի ստանում։

Կուսակցական և պետական ղեկավարման արվեստին տիրապետելը, բարոյա-քաղաքական բարձր հատկանիշներով օժտված հմուտ ղեկավարների դաստիարակումն ու կոփումը կուսշինարարության առաջնահերթ խնդիրներից են։ Վ. Ի. Լենինը գտնում էր, որ «Ամբողջ աշխարհում լիակատար ազատագրության համար համառորեն պայքարող բանվոր դասակարգին հեղինակություններ հարկավոր են...» (Երկեր, հ. 11, էջ 518)։ Սակայն պաշտոնի բարձրացումով, մեխանիկորեն չի աճում ղեկավարի հեղինակությունը։ Բարձր հեղինակության կարելի է հասնել կուսակցությանն ու ժողովրդին անձնազոհ ծառայելով, կուսակցական և պետական կարգապահությունն ամրապնդելով, կոլեկտիվի վրա հենվելով, խոր գիտելիքներով, մեծահոգությամբ, կազմակերպական տաղանդով և անձնական այլ հատկանիշներով ու տվյալներով։

Ղեկավարը, քայլելով կյանքին համընթաց, պարտավոր է սովորեցնել
ու սովորել: Անձնական անսխալականության միտումը կարող է կործանել
նրան: Նա պետք է հանդուրժի քննադատությունը և չկարծի, թե միայն վերից
եկող քննադատությունն է դեղ ու դարման, իսկ ներքևից եկածը՝ թույն ու լեղի:
Կուսակցությունը սովորեցնում է ռեալ գնահատել տարբեր բնույթի բար-
դությունները, ունակ լինել տեսնելու ո՛չ միայն լավն ու հաճելին, այլև՝ վատն
ու տհաճը, ժողովրդին ասել ճշմարտությունը, որքան էլ այն դառը լինի: Ղե-
կավարի պարտքն է՝ նկատել իրականության պայծառ ու ստվերոտ կողմերը,
չիրագործվածը, զգալ անարդարն ու կանխել այն, ունկնդրել նրանց ձայնին,
ովքեր, ընդհանուր գործի շահերից ելնելով, բացահայտում են թերությունները:
Կանխատեսման համար ղեկավարը պետք է խորապես ուսումնասիրի իրա-
դրությունը, հասարակական զարգացման օրենքները, գիտականորեն թափան-
ցի կյանքի բարդ երևույթների խորքերը:
Ղեկավարվելով լենինյան ցուցումներով, կուսակցությունն աճեցրել և ղե-
կավար պոստերում առաջ է քաշել գաղափարապես կոփված, կրթված գործիչ-
ների, որոնք ի վիճակի են հաջողությամբ լուծելու կոմունիստական շինարա-
րության բարդ խնդիրները: Սակայն, անհրաժեշտ է ընդգծել, որ նրանց ընտ-
րության, առաջքաշման և դաստիարակության գործում դեռևս կան էական
թերություններ ու սխալներ: Ամենից առաջ, բոլոր դեպքերում չէ, որ անհրա-
ժեշտ պահանջկոտություն է ցուցաբերվում կուսակցական և սովետական կադ-
րերի ընտրության, առաջքաշման նկատմամբ: Երբեմն ղեկավար պաշտոնում
նշանակվում են իրենց գործնական և քաղաքական հատկանիշներով անհա-
մապատասխան կադրեր, որոնք շուտով ձախողում են աշխատանքը, վնասում
ընդհանուր գործին: Պատահում են դեպքեր, երբ այս կամ այն աշխատողին
թողնում են ղեկավար պաշտոնում, կամ առաջ քաշում ավելի բարձր աշխա-
տանքի ոչ թե նրա արժանիքների համար, այլ որոշ ղեկավարներ հովանավո-
րում, բարեհոգի վերաբերմունք են ցույց տալիս նրա հանդեպ: Իսկ թերու-
թյունների, սխալների նկատմամբ այդ հանդուրժողական վերաբերմունքը
վնասում է ոչ միայն ընդհանուր գործին, այլ տվյալ ղեկավար աշխատողին:
Պետք է արմատախիլ անել կադրային քաղաքականության ասպարեզում
դեռևս տեղ գտած ոչ-կուսակցական, միտումնավոր նկատառումները՝ անձնա-
կան նվիրվածությունը, հայրենակցությունը, ազգակցական կապերը, բարե-
կամական հարաբերությունները և այլն:
Կադրերի առաջքաշման կուսակցական սկզբունքի իրականացմանը լուրջ
վնաս է հասցնում նաև նրանց ընտրության միակողմանիությունը: Դեռևս
գոյություն ունի այն սխալ պրակտիկան, երբ կուսակցական, սովետական և
հասարակական աշխատանքի առաջքաշման ժամանակ հիմնական ուշադրու-
թյունը նվիրվում է կադրերի մասնագիտական կրթությանը՝ անտեսելով քա-
ղաքական ղեկավարի հիմնական հատկանիշը:
Վ. Ի. Լենինը բազմիցս ընդգծել է, որ եթե մարդուն առաջ են քաշում
ղեկավար պաշտոնի, ապա մասսան նրան պետք է տեսնի ինչպես իր ձեռքի
ափը, հակառակ դեպքում կոլեկտիվը, մասսան, չեն կարող ճանաչել իրենց
ղեկավարների անձնական ունակությունները, նրանց ուժեղ և թույլ կողմերը:
Մեր կարծիքով ճիշտ են վարվում այն կազմակերպությունները, որոնք
կուսօրգաններում ընտրվող կադրերի թեկնածությունները նախապես քննար-
կում են կուսակցական ակտիվի խորհրդակցություններում: Օրինակ, Մագնի-
տոգորսկի մետալուրգիական կոմբինատի կենտրոնական էլեկտրակայանի



կուսկազմակերպությունում հաշվետու-ընտրական ժողովից առաջ սովորաբար հրավիրվում է կուսակցական ակտիվի խորհրդակցություն՝ կոմբինատի կուսկոմիտեի ներկայացուցչի մասնակցությամբ, որտեղ առաջարկում են կուսբյուրոյի կազմի թեկնածուները: Մի քանի օրվա ընթացքում այդ թեկնածուների կազմը քննարկվում է կուսակցական խմբերում (տե՛ս «Магнитогорский рабочий», 26-ը նոյեմբերի 1965 թ.): Դա հնարավորություն է տալիս՝ մինչև հաշվետու-ընտրական ժողովը մտքեր փոխանակել յուրաքանչյուր թեկնածուի մասին, արդարացի գնահատել նրանց գործնական և քաղաքական հատկանիշները, որպեսզի կուսակցական կոմիտեում ընտրվեն արժանավորները: Ղեկավարը պետք է աղնվորեն ծառայի ժողովրդին, պրակտիկայում կատարելագործի ղեկավարման արվեստը, որի լենինյան սկզբունքներին տիրապետելու «գաղտնիքներին» է նվիրված շնորհալի կուսակցական ժուռնալիստ Ց. Պետրենկոյի արդեն երրորդ հրատարակությամբ լույս ընծայված Ղեկավարման գաղտնիքները արժեքավոր գիրքը, որի հայերեն հրատարակումը օգտակար կլինի կուսակցական և սովետական ակտիվի համար:

Մեր կուսակցության Կենտրոնական կոմիտեն, լուծելով տնտեսական և քաղաքական հասունացած շատ պրոբլեմներ, քննադատորեն վերլուծելով տնտեսության վիճակը, կուսակցական կազմակերպությունների գործունեությունը, իրական ուղիներ է նշում գոյություն ունեցող սխալներն ու թերությունները վերացնելու համար: Մարքս-լենինյան կուսակցությանը խորթ են սուբյեկտիվիզմի, շտապողականության, կյանքից կտրվածության, վարչարարության երևույթները: Կուսակցությունն իր գործունեության արդյունքները գնահատում է քննադատաբար և խոր սկզբունքայնությամբ, համարձակ վեր հանում սխալներն ու թերությունները:

Քննադատությունն ու ինքնաքննադատությունը իրավունքի ուժ են ստացել ՍՄԿԿ կանոնադրության մեջ: Դրանց անշեղ իրագործումը պարտադիր է յուրաքանչյուր կոմունիստի համար: Սակայն, հաճախ կուսակցական ու ակտիվի ժողովներում, պլենումներում, կոնֆերանսներում շատ կոմունիստներ խուսափում են ելույթ ունենալ, քննադատական խոսք ասել այս կամ այն հարցի, ղեկավարի, կոմունիստի մասին, չցանկանալով հարաբերությունները վատացնել: Բայց նրանք իրենց մտքերը «ամփոփում են» ժողովից հետո, ընկերների շրջապատում, նույնիսկ մեղադրական եզրակացություններ հանում: Կան նաև այնպիսի կոմունիստներ, որոնք հանդուրժում են մեր հասարակության խորթ երևույթները, չեն տեսնում կամ չեն ուզում տեսնել թերություններն ու բացերը, փորձում են հեռու մնալ դրանց դեմ մղվող պայքարից: Լինում են նաև դեպքեր, երբ գովեստի խոսքերի ընտելացած որոշ տնտեսական, սովետական ու կուսակցական ղեկավարներ տհաճությամբ են լսում ներքևից եկող սկզբունքային քննադատությունը, նույնիսկ հետապնդում դրա հեղինակներին: Հաճախ կուսակցական ժողովներում, շրջանային սովետի սեսիաներում տվյալ բնագավառը կառավարող ղեկավարը հաճույքով ընդունում է իր հասցեին եղած քննադատությունը, համաձայնում դրա հետ, ընդունում սխալներն ու թերությունները, բայց փոխանակ դրանք վերացնելու, իրականում ոչինչ չի անում գործերի վիճակը բարելավելու համար:

Կուսկազմակերպությունների ժողովների, շրջկոմ-քաղկոմների պլենումների և բյուրոների քննարկած հարցերի զգալի մասը վերաբերում է կուսակցական ու պետական կարգապահության բարձրացմանը, առևտրի, հասարակական սննդի կազմակերպությունների գործունեությանը: Հաճախ ընդունվել

են բազմաթիվ որոշումներ, սակայն դրանք իրենց նպատակին չեն հասել, քանի որ հարցերի քննարկմանը չի հաջորդել կազմակերպական ակտիվ աշխատանքը, չեն մոբիլիզացվել կոմունիստների, ամբողջ հասարակայնության ուժերը՝ տվյալ բնագավառում գոյություն ունեցող աղաղակող թերություններն ու սխալները վերացնելու համար։

Դեռևս մեծ չարիք է բյուրոկրատական, անտարբեր վերաբերմունքը կոմունիստների օգտակար խորհուրդների ու առաջարկությունների, թերությունների մասին նրանց արդարացի քննադատական դիտողությունների ու ահազանգերի նկատմամբ։

Կոմունիստական շինարարության բարդ ու բազմակողմանի խնդիրները թելադրում են կուսակցական-կազմակերպական, գաղափարական աշխատանքի նոր ձևեր ու մեթոդներ, որոնք ծնունդ են առնում մասսաների հետ սերտ կապի, կոմունիստների նախաձեռնության ու ստեղծագործական ակտիվության բարձրացման պայմաններում։ Անհրաժեշտ է, որ կուսակցական շինարարության հետազոտողները խոր և բազմակողմանի ուսումնասիրեն կուսակցական աշխատանքի նոր ձևերն ու մեթոդները, ընդհանրացնեն եղած փորձը։ Օրինակ, Լատվիայի կոմկուսի Կենտկոմը հիանալի նախաձեռնություն է հանդես բերել աշխատավորների հետ կապն ուժեղացնելու, նրանց առաջ քաշած հարցերն օպերատիվ լուծելու, դիմում-բողոքներին ժամանակին պատասխան տալու գործում։ Կենտկոմում գոյություն ունի աշխատավորների ընդունարան, որտեղ կարող է դիմել ամեն մի քաղաքացի՝ իրեն անհանգստացնող յուրաքանչյուր հարցով։ Աշխատավորների բարձրացրած շատ հարցեր անմիջապես լուծվում են տեղում, իսկ եթե անհրաժեշտություն է զգացվում, ապարատի աշխատողը, որն ընդունելություն է կատարում, դիմողին ուղարկում է համապատասխան կազմակերպություն։ Ռիգայում սահմանված է աշխատավորների ընդունելության միասնական օր։ Այդ օրը ոչ միայն կուսակցական օրգանները, այլև շրջանային և քաղաքային սովետների գործկոմները, մինիստրությունները, գերատեսչությունները ընդունում են աշխատավորներին։ Ընդ որում, այդ ժամանակ ընդունելությամբ զբաղվող պատասխանատու աշխատողները հեռախոսով կապվում են միմյանց հետ և համաձայնության գալիս՝ աշխատավորների բարձրացրած հարցերն անմիջապես լուծելու համար (տե՛ս «Коммунист», 1969, № 11, стр. 50):

Կուսակցական շինարարության խնդիրն է՝ մարքս-լենինյան մեթոդոլոգիայի հիման վրա ուսումնասիրել, հետազոտել և ընդհանրացնել ու գիտականորեն իմաստավորել ո՛չ միայն կուսկազմակերպությունների անցած հարուստ փորձը, այլև կուսակցական կյանքի լենինյան նորմերի և ղեկավարման սկզբունքների կոնկրետ իրականացումը ներկա ժամանակաշրջանում։

Հաշվի առնելով կուսակցական շինարարության կարևոր նշանակությունը կոմունիզմի կառուցման ներկա էտապում՝ ՍՄԿԿ Կենտկոմը 1968 թվականի հունիսի 15-ի որոշմամբ անհրաժեշտ համարեց մարքսիզմ-լենինիզմի ինստիտուտի կոլեկտիվի ջանքերը կենտրոնացնել կուսակցական շինարարության տեսության ու պրակտիկայի ուսումնասիրության հետևյալ խնդիրների վրա. նախապատրաստել աշխատություններ՝ նվիրված ՍՄԿԿ փորձի ընդհանրացմանը, լենինյան կազմակերպական սկզբունքների կենսագործմանը, կոմունիստական շինարարության բնագավառում կուսակցության ղեկավար դերի բարձրացման օրինաչափություններին, կուսկազմակերպությունների գործունեության ձևերի ու մեթոդների կատարելագործմանը, ինչպես նաև եղբայրական կոմունիստական ու բանվորական կուսակցությունների կուսակցական շինարարության պրակտիկային։

Կուսակցական շինարարության բնագավառի գիտա-հետազոտական աշխատանքների հաջող կատարման նպատակով մշտապես պետք է հաշվի առնել այն կարևոր հանգամանքը, որ տեղական կուսկազմակերպությունների փորձի ուսումնասիրությունը, օգտագործումը և տարածումը նշանակալից դեր կարող են խաղալ համակուսակցական խնդիրների հաջող լուծման գործում։

Մեր կարևոր խնդիրներից է՝ ավելի մանրամասն հետազոտել Հայաստանի կուսակցական կազմակերպությունների գործունեության յուրահատկությունները, որոնք բխում են տեղական պայմաններից՝ հաշվի առնելով բնակչության սոցիալ-տնտեսական պայմանները, ավանդույթները և կենցաղը։

Կուսակցական գրականության մեջ պատշաճ տեղ պետք է գրավեն սկզբնական կուսկազմակերպությունների կազմակերպական և գաղափարական ամրապնդման, նրանց ղեկավարման ձևերի, մասսաների հետ ունեցած կապերի հարցերը։

Կուսակցության շինարարության տեսության ու պրակտիկայի ուսումնասիրությունը կնպաստի բոլոր կուսկազմակերպությունների կազմակերպական ու գաղափարական աշխատանքի ոճի, ձևերի ու մեթոդների կատարելագործմանը, տնտեսական, կուլտուրական շինարարության ղեկավարման գործում նրանց դերի առավել բարձրացմանը։

Վերջին տարիներին Սովետական Միության կոմունիստական կուսակցության Կենտրոնական կոմիտեն մի շարք միջոցներ ձեռնարկեց՝ կոմունիստների ստեղծագործական նախաձեռնության ծավալման, կուսակցական, սովետական և տնտեսական կադրերի կոմունիստական գիտակցության, նրանց պատասխանատվության բարձրացման համար։ ՍՄԿԿ, հաջողությամբ գործելով կուսակցական աշխատանքի լենինյան ոճի ու մեթոդների արմատավորման ու զարգացման պայմաններում, խնդիր է դնում՝ մշտապես ուսումնասիրել մեր հասարակության զարգացման տենդենցները, համարձակորեն բացահայտել դժվարություններն ու հակասությունները, նշել դրանց հաղթահարման ուղիները, կատարելագործել, առաջ մղել կուսակցական շինարարության տեսությունն ու պրակտիկան։ Կուսակցությունը, սահմանելով կոմունիզմի կառուցման ուղիները, պահանջում է ավելի խոր բացահայտել հասարակական-քաղաքական կյանքի բարդ երևույթները, էական փաստերով հիմնավորել կոմունիստական շինարարության գործնականությունը։

ՍՄԿԿ XXIII համագումարի, Կենտկոմի պլենումների որոշումներում ընդգծվում է կուսակցական շինարարության տեսության ու պրակտիկայի կարևորությունը, կուսկազմակերպություններից պահանջվում է ներկուսակցական կյանքը կազմակերպել և ղեկավարել լենինյան նորմերին ու սկզբունքներին համապատասխան։

Վ. Հ. ՂԱՋԱՆՋՅԱՆ
ՍՄԿԿ ԿԿ կից ՄԼԻ-ի հայկական ֆիլիալի կուսշինարարության սեկտորի վարիչ, դոցենտ
Ա. Ա. ՍԱԴԱՂՅԱՆ
ՍՄԿԿ ԿԿ կից ՄԼԻ-ի հայկական ֆիլիալի կուսշինարարության սեկտորի ավագ գիտաշխատող, պատմական գիտությունների թեկնածու

# ԿՅԱՆՔԻՆ ՀԱՄԸՆԹԱՑ

Քաղաքական լուսավորության ցանցի անցած ուսումնական տարում Օրջոնիկիձեի շրջանի կուսկազմակերպությունները զգալի աշխատանք կատարեցին կուսակցական ուսուցման գաղափարական-տեսական մակարդակը բարձրացնելու, կոմունիստներին մարքսիզմ-լենինիզմի տեսական հարուստ գիտելիքներով զինելու համար։ Կուսշրջկոմը և կուսկազմակերպություններն ամեն կերպ ջանում էին ամրապնդել քաղաքական ուսուցման կապը պրակտիկ կյանքի, կուսակցության քաղաքականության, կոմունիստական շինարարության խնդիրների հետ։

ՍՄԿԿ XXIII համագումարը կուսկազմակերպությունների կենսական խնդիրը համարեց. «...լրջորեն բարելավել կուսակցության անդամների մարքս-լենինյան կրթությունը, նրանց, հատկապես երիտասարդ կոմունիստների, գաղափարական կոփվածքը... Կուսակցական լուսավորության ամբողջ սիստեմը պետք է բարձրացվի կոմունիստական շինարարության արդի փուլի խնդիրների մակարդակին» (ՍՄԿԿ XXIII համագումարի նյութերը, 1967, էջ 314)։ Համագումարի այս պահանջը մշտապես դրվել է կուսշրջկոմի և կուսկազմակերպությունների գործունեության հիմքում։ Այս տեսակետից միանգամայն օրինական է ու հասկանալի կուսկազմակերպությունների ձգտումը՝ խորությամբ վերլուծելու ուսումնական տարվա արդյունքները, պարզելու դրա ազդեցությունը կոմունիստների գաղափարական աճի վրա։

Ուսումնական տարին քաղլուսցանցում ավարտվում է եզրափակիչ պարապմունքներով։ Դրանց անցկացմանը մեծ կարևորություն ենք տալիս։ Մեր փորձով համոզվել ենք, որ ամփոփիչ պարապմունքներն օգնում են կոմունիստներին և անկուսակցական ակտիվին՝ ամրապնդելու տարվա ընթացքում ստացած գիտելիքները, տեսական հարցերը կապելու կոմունիստական շինարարության հետ, նշելու քաղաքական կրթության հետագա հեռանկարները։

Կուսկազմակերպությունները միաժամանակ լավ են գիտակցում, որ ամփոփիչ պարապմունքները քաղաքական ուսուցման բնագավառում հսկողության ձև են կուսակցության անդամների ու անդամության թեկնածուների նկատմամբ և բարձրացնում են նրանց պատասխանատվությունն իրենց կանոնադրական պահանջների կատարման հանդեպ։ Ահա թե ինչու շրջանային կոմիտեն դեռևս մայիսի սկզբներին հրավիրեց կուսկազմակերպությունների քարտուղարների, պրոպագանդիստների և կոնսուլտանտների խորհրդակցություն, որտեղ նրանց խորհուրդ տվեց ամփոփիչ պարապմունքները վարել այնպես, որպեսզի դրանք դառնան կոմունիստների ինքնահաշվետվություն՝ իրենց տեսական-քաղաքական մակարդակի բարձրացման մասին։

Ավարտված ուսումնական տարին, իրավամբ, համարվում է լենինյան ուսմունքի պրոպագանդման տարի։ Այն ընթացավ կուսակցության և ժողովրդի քաղաքական ու գաղափարական մեծ վերելքի պայմաններում։ Վ. Ի. Լենինի աշխատությունների, Լենինիզմը և նրա նշանակությունն արդի պայմաններում գրականության մասսայական տպաքանակով հրատարակումը, ինչպես նաև Վ. Ի. Լենինի ծննդյան 100-ամյակի կապակցությամբ ՍՄԿԿ Կենտկոմի թեզիսների, կոմունիստական և բանվորական կուսակցությունների Մոսկովյան խորհրդակցության նյութերի հրապարակումը հարստացրին քաղաքական ուսուցման տեսական հիմքը, բարձրացրին մարդկանց հետաքրքրասիրությունը մարքս-լենինյան տեսության արդիական պրոբլեմների, կոմունիստական շինարարության, համաշխարհային կոմունիստական շարժման ժամանակակից էտապում գաղափարական պայքարի հարցերի նկատմամբ։



Ամբողջ ուսումնական տարվա ընթացքում կուսակցական կրթության ցանցում հատուկ տեղ է գրավել լենինյան տեսական ժառանգության ուսումնասիրությունը։ Այդ գործում զգալի հաջողություններ են ձեռք բերել էլեկտրատեխնիկական, «Հիդրոհաղորդակ», մետաղյա կոնստրուկցիաների, լաքերի-ներկերի, համակցված կերի, պահածոների, գեղարվեստական ժամացույցների գործարանների և շատ այլ կուսկազմակերպություններ։ Նորմալ են գործել դրանց տեսական սեմինարները։ Ուսումնասիրելով ծրագրով նախատեսված նյութերը, կոմունիստները միաժամանակ խորությամբ ծանոթացել են մարքս-լենինյան տեսության առանձին պրոբլեմներին, ինչպես՝ «Սոցիալիստական հեղափոխության լենինյան տեսությունը և մեր ժամանակը», «Լենինը կոմունիստական շարժման ստրատեգիայի և տակտիկայի մասին», «Լենինը և սոցիալիստական պետության զարգացման հարցերը» և այլն։

Քաղաքական ուսուցման արդյունավետությունն ապահովելու նպատակով կուսշրջկոմը և կուսկազմակերպություններն օգտագործում են զանազան ձևեր։ Անցած ուսումնական տարում, օրինակ, շրջկոմը տեսական սեմինարներում ընդգրկված ղեկավար կոմունիստների համար կազմակերպեց տեսական և գիտական կոնֆերանսների մի ամբողջ ցիկլ։ Մեծ հետաքրքրությամբ անցան շրջանի մասշտաբով կազմակերպված գիտական կոնֆերանսները՝ «Վ. Ի. Լենինը և միջազգային հարաբերությունների զարգացումը», «Վ. Ի. Լենինը երիտասարդության պրոբլեմների մասին» թեմաներով։ Զեկուցումներով հանդես եկան շրջանի հիմնարկ-ձեռնարկությունների ղեկավարներ, կուսակցական կազմակերպությունների քարտուղարներ, մտավորականության ներկայացուցիչներ։ Գիտական և տեսական կոնֆերանսները ղեկավարեցին գիտության թեկնածուներ Ս. Պապյանը, Ս. Ստեփանյանը, Ա. Սիմոնյանը, դոկտոր-պրոֆեսորներ Ա. Մնացականյանը, Ա. Սիմոնյանը, ՀՍՍՀ գիտությունների ակադեմիայի թղթակից-անդամ Գ. Ղարիբջանյանը և ուրիշներ։

Կուսակցության շրջանային կոմիտեն մոտիկից զբաղվեց մարքս-լենինյան տնտեսագիտական տեսության, սոցիալիստական տնտեսավարման ուսուցման հարցերով։ Շրջանի ղեկավար կադրերն ուսումնասիրել են ՍՄԿԿ Կենտկոմի դեկտեմբերյան (1969 թ.) պլենումի նյութերը և ՍՄԿԿ Կենտկոմի, ՍՍՀՄ Մինիստրների սովետի, ՀԱՄԿԽ-ի, ՀամԼԿԵՄ Կենտկոմի՝ «Արտադրության ռեզերվների օգտագործումը բարելավելու և ժողովրդական տնտեսության մեջ խնայողության ռեժիմն ուժեղացնելու մասին» նամակը։ Ելնելով պլենումի և նամակի պահանջներից՝ կուսկազմակերպություններն իրենց ուշադրությունը բևեռեցին տեխնիկական պրոգրեսի, արտադրության կազմակերպման և ղեկավարման բարելավման, աշխատավորների աշխատանքային նա-

խաձեռնության զարգացման և նրանց գիտակցական կարգապահության ամրապնդման հարցերին։

Շրջանի կուսկազմակերպություններում կան մեծ թվով բարեխիղճ, իրենց գործին քաջահմուտ շատ պրոպագանդիստներ։ Նրանց ճնշող մեծամասնությունն ունի բարձրագույն կրթություն և պրոպագանդիստական աշխատանքի հարուստ և ուսանելի փորձ։ Էլեկտրատեխնիկական գործարանի դիրեկտոր Վ. Պարոնիկյանը մեր ճանաչված պրոպագանդիստներից է։ Նա ծրագրային նյութը սերտորեն կապում է գործարանի առջև ծառացած կոնկրետ խնդիրների հետ, վերլուծում ձեռնարկությունում չլուծված պրոբլեմները, առանձին արտադրամասերի պլանների թերակատարման պատճառները և ունկնդիրների հետ գտնում ուղիներ՝ դժվարությունները հաղթահարելու համար։ Նույն կերպ է վարվում նաև պրոպագանդիստ Ս. Մինասյանը, որը երկար տարիներ ղեկավարում է մետաղյա կոնստրուկցիաների գործարանի քաղխմբակը։ Ընկ. Մինասյանն իր պրոպագանդիստական բազմամյա ու անբասիր աշխատանքի համար, ի նշանավորումն Վ. Ի. Լենինի ծննդյան 100-ամյակի, պարգևատրվել է լենինյան հոբելյանական մեդալով։

Շրջանային կոմիտեն և սկզբնական կուսկազմակերպություններն անցած ուսումնական տարում ավելի լայնորեն օգտագործեցին պրոպագանդայի ժամանակակից տեխնիկական ձևերը։ Օրինակ, որպես կանոն ծրագրային նյութերը զուգակցելով լենինյան թեմատիկային՝ ցուցադրվել են առաջնորդի կյանքի ու գործունեության առանձին էտապները պատկերող գեղարվեստական և վավերագրական բազմաթիվ կինոնկարներ։ Շատ դեպքերում խմբակի և սեմինարների մասնակիցներն ունկնդրել են Լենինի՝ ժապավենի վրա գրանցված առանձին ճառերը և ելույթները։

Մեծ էր հետաքրքրությունը լենինյան թեմատիկայի նկատմամբ։ Այսպես, մայիսի սկզբներին շրջանային կոմիտեում հրավիրվեց կուսկազմակերպությունների քարտուղարների, պրոպագանդիստների ու սեմինարավարների խորհրդակցություն։ Այստեղ հարց ծագեց՝ ինչպիսի՞ պրոբլեմային, ակտուալ խնդիրներ քննարկել ամփոփիչ պարապմունքներում։ Խորհրդակցության մասնակիցների զգալի մասը նպատակահարմար գտավ 1—2 ամփոփիչ պարապմունք նվիրել այնպիսի թեմաների, ինչպես՝ «Լենինիզմը ժամանակակից դարաշրջանի մարքսիզմն է», «Լենինը նոր տիպի պրոլետարական կուսակցության և աշխարհում առաջին սոցիալիստական պետության հիմնադիրն է», «Սոցիալիզմի և կոմունիզմի կառուցումը կյանքում լենինիզմի գաղափարների ստեղծագործական իրագործումն է», «Տնտեսավարման լենինյան սկզբունքները և նրանց իրագործումը ժամանակակից պայմաններում» և այլն։ Դրանք բխում էին Վ. Ի. Լենինի ծննդյան 100-ամյակի առթիվ հրապարակված կուսակցական փաստաթղթերից։

Ինչպես անցյալում, այս տարի ևս, ամփոփիչ պարապմունքների ձևերը տարբեր էին։ Խմբակներում և դպրոցներում հիմնական ձևը ընկերական մթնոլորտում կազմակերպված զրույցն էր՝ ուսումնական տարում անցած թեմաների շուրջ։ Սեմինարներում ամփոփիչ պարապմունքներն անցկացվեցին տեսական կոնֆերանսների ձևով։ Օգտագործվեց նաև ստուգարքի ձևը։

Անցած ուսումնական տարում հատուկ ուշադրություն նվիրեցինք ինքնուրույն, անհատական պլաններով մարքս-լենինյան տեսությունն ուսումնասիրող կուսակցականների ու անկուսակցական ակտիվիստների աշխատանքի ամփոփմանը։ Տեսական սեմինարներ ունեցող կուսկազմակերպություններին



խորհուրդ տրվեց նրանց մասնակից դարձնել տեսական ամփոփիչ կոնֆերանսներին։ Ինքնուրույն ուսումնասիրողներն այդ կոնֆերանսներում հանդես եկան ռեֆերատներով և զեկուցումներով։ Դա անհրաժեշտ եղավ նաև այն տեսակետից, որ մեզ մոտ դեռևս կան ՍՄԿԿ անդամներ, որոնք անտարբեր վերաբերմունք են ցուցաբերում իրենց տեսական գիտելիքների խորացման նկատմամբ, հազվադեպ են ընթերցում սկզբնաղբյուրները, չեն մասնակցում կազմակերպված միջոցառումներին։ Նպատակ ունենալով ավելի ամուր հիմքերի վրա դնել մարքս-լենինյան տեսությունն ինքնուրույն, անհատական պլանով ուսումնասիրելու գործը՝ շրջկոմի բյուրոն վերջերս քննարկեց այդ հարցը և միջոցառումներ մշակեց այն կարգավորելու համար։ Ամփոփիչ պարապմունքները կոչված են բարձրացնելու և, իրոք, բարձրացրին այդպիսի կուսակցականների պատասխանատվությունն ու ակտիվությունը։

1969—70 ուսումնական տարում շրջանային կոմիտեն ավելի շատ և սիստեմատիկորեն զբաղվեց կոմերիտականների և երիտասարդության քաղաքական ուսուցման բարելավմամբ։ Ինչպես հայտնի է, անցած տարի կոմերիտական լուսավորության ցանցի աշխատանքները համընկան համամիութենական լենինյան ստուգարքի հետ։ Շրջանի յուրաքանչյուր կոմերիտական ժողովում, իր ընկերների առջև, զեկուցումով հանդես եկավ կամ ռեֆերատ կարդաց՝ լենինյան առանձին աշխատությունների շուրջ։ Հատկապես գաղափարական բարձր մակարդակով անցան լենինյան ստուգարքները № 3 կարի ֆաբրիկայում, «Հիդրոհաղորդակ», գեղարվեստական ժամացույցների գործարաններում, մանկավարժական գիտությունների գիտահետազոտական ինստիտուտում, շրջանի մի շարք դպրոցներում, տեխնիկումներում և այլ կազմակերպություններում։

Քաղաքական լուսավորության ցանցի անցած ուսումնական տարվա հաջողությունները մեծապես պայմանավորված էին լենինյան հոբելյանի տոնակատարությամբ։ Ամփոփիչ պարապմունքները համընկան նաև մեր հերոս ժողովրդի՝ ֆաշիստական Գերմանիայի դեմ տարած հաղթանակի 25-ամյակի տարելիցին։ Ուսումնական տարում կուսկազմակերպությունները, հաշվի առնելով հաղթանակի քառորդ դարը, ակտիվ պրոպագանդում էին սոցիալիստական հայրենիքի պաշտպանության լենինյան ուսմունքը, ցույց տալիս մեր ժողովրդի անմահ սխրանքները Հայրենական մեծ պատերազմում, մեր հաղթանակի սոցիալական և բարոյական գործոնները, ֆաշիզմի նկատմամբ Սովետական Միության տարած հաղթանակի պատմական, համաշխարհային նշանակությունը, ՍՍՀՄ արտաքին խաղաղասեր քաղաքականությունը և այլն։

Շրջանի կուսկազմակերպությունները, հանրագումարի բերելով կուսակցական քաղաքական ուսուցման արդյունքները, ամեն կերպ զարգացնում ու ամրապնդում են այն լավն ու դրականը, որ ձեռք է բերվել մարքսիզմ-լենինիզմի պրոպագանդման գործում։ Նրանք նպատակասլաց աշխատանք են տանում, որպեսզի բոլոր կոմունիստները, կոմերիտականները, անկուսակցական ակտիվը ավելի խոր տիրապետեն մարքսիզմ-լենինիզմին, պրակտիկ գործունեության մեջ ղեկավարվեն նրանով։

Ս. Ա. ԱՎԹԱՆԴԻԼՅԱՆ

ՀԿԿ Երևանի Օրջոնիկիձեի շրջկոմի քարտուղար



# ԼՐԱԳՐՈՂԻ ՏԵՍԱԿԵՏՈՎ

«Կուսկոմիտե»— կարդում եմ ու ՀԿԿ Կիրովականի քաղկոմի հրահանգիչ Հ. Խաչատրյանի հետ մտնում ներս: Գրասեղանի մոտ նստած է ատլետիկ կազմվածքով, հաղթանդամ երիտասարդ՝ հանրապետության երրորդ խոշոր քաղաքի շինարարական տրեստի կուսկոմիտեի քարտուղար Կարլեն Թումանյանը: Նախորդ օրն ենք ծանոթացել: Քաղկոմի ընկերները նրան բնութագրեցին որպես լավագույն, իր գործին գիտակ քարտուղարի:

— Լավ նախաձեռնությունների հեղինակ է,— ասաց պրոպագանդայի բաժնի վարիչը:

Ծանոթանում ենք կուսկոմիտեի գործունեությանը, աչքի անցկացնում կուսակցական փաստաթղթերը: Զգացվում է, որ կոմիտեի քարտուղարը շատ ջանքեր է թափել օրինակելի կուսակցական տնտեսություն ունենալու համար: Խնամքով ու ճաշակով կազմված արձանագրությունները և մյուս գործերն այդ են վկայում:

Մեզ մասնավորապես հետաքրքրում են շինարարների շրջանում տարվող քաղաքական-դաստիարակչական աշխատանքի և սոցմրցության հարցերը: Զրուցում ենք քարտուղարի հետ, հարց ու փորձ անում կուսակցական աշխատանքից, շինարարության վիճակից: Հեռախոսային ստեպ-ստեպ զանգերը և մարդկանց այցերը հաճախ են կտրում քարտուղարի մտքի թելը, ընդհատում մեր զրույցը: Քարտուղարը կարողանում է պատասխանել բոլորին, օգտակար լինել նրանց: Իր հերթին, Կ. Թումանյանն է անհանգստացնում ուրիշներին. «Գիտելիք» ընկերության քաղաքային բաժանմունքից դասախոս է խնդրում, պետթատրոնից՝ ներկայացման տոմսեր, կամ կոլեկտիվ կինոդիտման համար պայմանավորվում կինոթատրոնի աշխատողի հետ:

Այլ խոսքով, բազմաբեղուն է շինարարական այս խոշոր կազմակերպության կուսկոմիտեի քարտուղարի առօրյան, շատ են նրա հոգսերը: Նա կարողանում է նաև հոդվածաշարով հանդես գալ տրեստի բազմատիրաժ թերթում, զեկուցել շինարարների երեկոյին, ուսանել ՍՄԿԿ հեռակա բարձրագույն կուսդպրոցում, նամակագրական կապեր ունենալ մի շարք անվանի մարդկանց հետ, պարզել ինչ-որ կնճռոտ հարցեր և վերջապես... զբաղվել սպորտով՝ ծանրաձողով:

Լայն է կուսկոմիտեի քարտուղարի գործունեության ոլորտը: Ամբողջ քաղաքով մեկ շինհրապարակներ են. ամենուրեք վեր են հառնում բնակելի տուֆակերտ տներ, գործարանային, դպրոցական ու կուլտուր-կենցաղային շենքեր: Մի քանի հազար բանվոր է աշխատում նորակառույցներում, անհրաժեշտ



է քաղաքական-դաստիարակչական պատշաճ աշխատանք տանել նրանց հետ, բավարարել նրանց հոգևոր պահանջմունքները: Տրեստում հաշվվում է արտադրամասային 9 սկզբնական կուսկազմակերպություն՝ մոտ 400 կոմունիստներով. հարկավոր է գլխավորել, ուղղություն ցույց տալ նրանց, կազմակերպել քաղուսուցումը, ապահովել առաջադրված խնդիրների կատարումը: Կուսկոմիտեն, նրա քարտուղարն ու արտադրամասային կուսկազմակերպությունների բյուրոները ջանում են լուծել կոմունիստներին, շինարարների բազմահազարանոց կոլեկտիվին հուզող հարցերը: Թե որչափո՞վ է դա հաջողվել նրանց, կտեսնենք ստորև:

## ԴԱՍՏԻԱՐԱԿՈՒԹՅԱՆ ԿԱՐԵՎՈՐ ՄԻՋՈՑԸ

Երբ քիմկոմբինատի նոր արտադրամասի շինհրապարակում մտերմաբար զրուցում էինք շինարարների հետ, նրանք գոհունակությամբ ընդգծեցին, որ դասախոսները հաճախ են այցելում իրենց, ծանոթացնում միջազգային կյանքում տեղի ունեցող նորություններին, մեր երկրի ժողովրդական տնտեսության հաջողություններին, գիտության նորագույն նվաճումներին:

Կուսկոմիտեում ու շինհրապարակներում հետաքրքրվում ենք դասախոսական պրոպագանդայի կազմակերպման հարցով: Պատկերը վատ չէ: Դասախոսական պրոպագանդան այստեղ դիտվում է որպես մարդկանց դաստիարակության, նրանց գաղափարապես կոփելու կարևոր միջոց: Կուսկոմիտեն սերտ կապի մեջ է «Գիտելիք» ընկերության քաղաքային բաժանմունքի և քաղկոմի դասախոսական խմբի հետ: Բաժանմունքի ու քաղկոմի դասախոսները հաճախ են այցելում շինարարներին, տարբեր թեմաների շուրջ հետաքրքրական ու բովանդակալից զեկուցումներ ու դասախոսություններ կարդում, պատասխանում նրանց հուզող հարցերին: Դրանք միշտ էլ առնչվում են շինարարների առօրյա խնդիրների հետ, համեմվում կյանքից վերցրած կոնկրետ օրինակներով:

## ԼԱՎՆ ՈՒ ՎԱՏԸ ՔԱՂՈՒՍՈՒՑՄԱՆ ՄԵՋ

Կուսակցական լուսավորության անցած ուսումնական տարում շինտրեստի կուսկազմակերպությանը կից գործում էին 12 քաղխմբակ ու տեսական սեմինար: Դրանցում ընդգրկված էր 342 կոմունիստ: Կոմունիստների քաղաքական ուսուցման գործը վստահված էր բավարար փորձ ունեցող պրոպագանդիստներին: Կուսկոմիտեի քարտուղար Կ. Թումանյանը դրական է արտահայտվում պրոպագանդիստներ Վ. Մանուկյանի (№ 4 շինվարչություն), Գ. Վարդանյանի (շինբանվածքների կոմբինատ), Լ. Տեր-Սիմոնյանի (շինտրեստ) և ուրիշների մասին: Պարապմունքներ վարելու ուսանելի փորձ է կուտակել շինարարության էկոնոմիկան ուսումնասիրող սեմինարի պրոպագանդիստ, տրեստի գլխավոր ինժեներ Լ. Տեր-Սիմոնյանը: Այդ սեմինարում ընդգրկված են շինարարության պետերը և աշխղեկները: Պրոպագանդիստն ուսումնասիրվող նյութը կապում է տրեստի պրակտիկ աշխատանքի, մարքսիստական տնտեսագիտության համապատասխան բաժինների, շինարարության վերաբերյալ կուսակցության և կառավարության որոշումների հետ, օգտագործում օժանդակ գրականություն՝ մեր և արտասահմանյան երկրների շինարարության առաջավոր փորձի մասին:

Նիստերի արձանագրությունները վկայում են, որ կոմունիստների քաղաքական ուսուցումը մտահոգել է կուսկոմիտեին և նրա քարտուղարին։

Անցած ուսումնական տարում կուսկոմիտեն երկու անգամ անդրադարձել է այդ հարցին, բացահայտել լուրջ թերություններ և, կոմունիստների քաղաքական ուսուցումը վատ կազմակերպելու համար, զգուշացրել պրոպագանդիստներ Է. Էվոյանին, Ս. Ենոքյանին, Գ. Գաբրիելյանին։

Կուսկոմիտեն, սակայն, չի բարձրացրել արտադրամասային կուսբյուրոների պատասխանատվությունը քաղուսուցման կազմակերպման նկատմամբ։ Առանձին կազմակերպություններում այդ գործը կաղում է, նկատվում է ձևական մոտեցում, երբեմն ձևի համար են անդրադառնում այդ հարցին։ № 1 շինվարչության կուսկազմակերպության (բյուրոյի քարտուղար՝ Յու. Գրիգորյան) 1969 թ. նոյեմբերի 29-ի արձանագրությունում (№ 2) կարդում ենք. «Պատասխանատվության ենթարկել այն անձանց, որոնք անհարգելի պատճառով բացակայում են քաղպարապմունքներից, իսկ 1970 թ. հունվարի 24-ի որոշման մեջ՝ «Պարտավորեցնել կուսբյուրոյին պատասխանատվության ենթարկել այն անձանց, որոնք բացակայում են քաղպարապմունքներից»։ Պարզ է, այսպիսի ձևական մոտեցումն ու վերացական որոշումները գործին չեն օգնի։ Մինչդեռ կուսկոմիտեի 1969 թ. դեկտեմբերի 30-ի նիստն արձանագրել է, որ № 1 շինվարչությունում «ցածր է քաղպարապմունքների գաղափարական մակարդակը»։ Ինչպես ասում են, մեկնաբանությունն ավելորդ է։

## ԼԱՎ ՆԱԽԱՁԵՌՆՈՒԹՅՈՒՆՆԵՐ

1968-ի սկզբներին կուսկոմիտեի անդամները խորհրդի նստեցին, ծանր ու թեթև արեցին, և շուտով ծնվեց մի լավ նախաձեռնություն. ստեղծվեց «Հեղափոխական ավանդույթների պահպանման դպրոցը»։ Հետո դրան հաջորդեց «Մանուշակ» ակումբը։ Դրանց նպատակն է շինարարների կոլեկտիվին դաստիարակել ինտերնացիոնալիզմի ու ժողովուրդների բարեկամության, սովետական հայրենասիրության, կոմունիստական համոզվածության, սովետական ժողովրդի մարտական և աշխատանքային ավանդույթների ոգով։

«Հեղափոխական ավանդույթների պահպանման դպրոցի» կազմակերպած միջոցառումներն ունեն մեկ ընդհանուր թեմա՝ «Հոկտեմբերի բարիկադների վրա»։ Դա առաջավոր շինարարների յուրահատուկ հանդիպում է, որի ժամանակ նրանք հեղափոխական որևէ նշանավոր գործչի մասին զեկուցում են լսում և դիտում հեղափոխական թեմայով կինոնկար։

«Մանուշակ» ակումբն ստեղծվել է ծնողների համար։ Ակումբը կազմակերպել է մի շարք հետաքրքրական դասախոսություններ՝ «Ե՞վ տգեղ է, և՛ վնասակար» (ծխելու մասին), «Եթե դուք աշխատում եք» (կոսմետիկա), «Իմացիր քո մարմնի կառուցվածքը», «Հայ կանայք Հոկտեմբերի բարիկադների վրա», «Հայ կանայք Հայրենական պատերազմում»։ «Մանուշակ» ակումբի խնդիրներից մեկն էլ ծնողների և դպրոցի կապի ամրապնդումն է։ Նրա նախաձեռնությամբ անցած երկու տարում երեք անգամ հրավիրվել է ծնողական ընդհանուր ժողով, որտեղ քննարկվել են երեխաների կոմունիստական ու հայրենասիրական դաստիարակության հարցերը։ Այդ միջոցառումներին ակտիվորեն մասնակցել են քաղժողկրթբաժինը, № 1 և № 5 դպրոցները։

Շինարարների հոգևոր պահանջմունքների բավարարման նպատակն են



հետապնդում ներկայացումների, համերգների և կինոնկարների կոլեկտիվ դիտումները, տուրիստական արշավներն ու էքսկուրսիաները, մեկ և երկօրյա հանգիստը տուրիստական բազաներում և հանգստյան տներում։ Տասնյակ այդպիսի միջոցառումներ է կազմակերպել կուսկոմիտեն։ Շինհրապարակներում զրուցում ենք որմնադիրների ու հյուսների, բետոնագործների ու ծեփագործների հետ և յուրաքանչյուրի մոտ նկատում հետաքրքրություն կուլտուրմասսայական այդ միջոցառումների նկատմամբ։ Կուսկոմիտեում էինք, երբ քաղաքի պետթատրոնի ներկայացուցիչը ներս մտավ։ Հենց այստեղ էլ նրանք պայմանավորվեցին՝ առաջիկայում կազմակերպել ներկայացման կոլեկտիվ դիտում։

Կուսկոմիտեի լավ նախաձեռնություններից են նաև հանդիպումները շինարարության ու պատերազմի վետերանների, անվանի մարդկանց հետ։

## ԼԱՎ ԱՐԴՅՈՒՆՔՆԵՐ

Կիրշինտրեստը հանրապետության շինարարական խոշոր ու առաջավոր կազմակերպություններից է, ունի տեսակարար մեծ կշիռ, հայտնի է իր աշխատանքային հաջողություններով։ Անցած երկու տարում այս խոշոր կոլեկտիվը մի քանի անգամ հաղթող է դուրս եկել սոցիալիստական մրցությունում և նվաճել ՍՍՀՄ Մինիստրների սովետի փոխանցիկ կարմիր դրոշն ու դրամական առաջին կարգի մրցանակը։ Տրեստը 1968-ին շինմոնտաժային աշխատանքի պլանը կատարեց 124 տոկոսով, հաջորդ տարում, ճիշտ է, նահանջեց, բայց աշխատանքի արտադրողականության բարձր աճ ապահովեց։ Ընթացիկ տարվա առաջին եռամսյակի պլանի կատարողականը հասավ 119,8 տոկոսի։ Հատկանշական են նորարարական շարժման հաջողությունները։ Անցած երկու և կես տարում շինարարական արտադրության մեջ ներդրվել են 205 առաջարկություն, որոնց պայմանական օգուտը կազմում է 351,6 հազար ռուբլի։ Անժխտելի է քաղաքական-դաստիարակչական աշխատանքի դերն այս հաջողությունների մեջ։

## ԽՈՑԵԼԻ ԿՈՂՄԵՐ

Թերթում ենք կուսկոմիտեի 1969 և ընթացիկ տարվա արձանագրությունները, ծանոթանում քննարկված հարցերին։ Դրանք իրենց բնույթով տարբեր են, շոշափում են կուսակցական աշխատանքի գրեթե բոլոր բնագավառները։ Արտադրության հետ կապված և քաղաքական աշխատանքի հարցերը հավասարապես արժանացել են կուսկոմիտեի և նրա քարտուղարի ուշադրությանը, դարձել գործարար քննարկման առարկա։

Սոցիալիստական մրցության կազմակերպումը կուսկոմիտեին հուզող առանցքային հարցերից է, նրա մտահոգության առարկան։ Յուրաքանչյուր եռամսյակի վերջում կոմիտեի նիստերում քննարկվել են շինարարական պլանների և սոցիալիստական պարտավորությունների կատարման արդյունքները։ Տրեստի 1970 թ. սոցմրցության պայմանագիրը հրապարակվել է առանձին թերթիկով և փակցվել շինվարչությունների ու մյուս կազմակերպությունների վարչական շենքերում։ 1967 թ. ստեղծվել է պատվո գիրք, որտեղ գրանցվում են առաջավոր շինարարների անունները, փակցվում լուսանկարները։ Կան նաև պատվո տախտակներ։

Զգացվում է, որ կուսկոմիտեի ընկերները և նրա քարտուղար Կ. Թումանյանը լավ են ըմբռնում սոցմրցության նշանակությունը։ Այդ համոզմանն ենք գալիս նաև քննարկված մյուս հարցերի վերաբերյալ արձանագրություններն ընթերցելիս։ Կուսկոմիտեն տարբեր ժամանակներում լսել է շինտրեստի արհմիության կոմիտեի, № № 1, 3, 7 շինվարչությունների, հատուկ մասնագիտացված վարչության կուսբյուրոների հաշվետվությունները, ընդգծել սոցմրցության կարևորությունը, այդ գործի լուրջ թերությունները։

Լավ է, իհարկե, որ կուսկոմիտեն հաճախ պատշաճի անդրադարձել է սոցիալիստական մրցության հարցերին։ Սակայն խնդիրը միայն հարցի քննարկումը չէ կամ այն ըմբռնելն ու դրան կարևորություն տալը։ Եթե ընդհանուր գնահատական տալու լինենք, կարող ենք ասել, որ կուսկոմիտեն սոցմրցությունը կազմակերպելու գործում խոցելի կողմեր շատ ունի։ Սոցիալիստական մրցության գործի հիմնական բացերը, մեր կարծիքով, նրա ոչ-գործարար բնույթն է, ոչ-հրապարակայնությունը, ոչ-մասսայականությունը։ Շինտրեստի ստորին օղակները չունեն սոցպարտավորություններ, եթե ունեն էլ, չեն երևում։ Անհատական սոցմրցության մասին խոսք անգամ չի կարող լինել։ Մրցության արդյունքները հարկ եղած չափով չեն հրապարակվում։

Այդ համոզմանը եկանք № № 1, 3, 4 շինվարչություններում, շինբանվածքների կոմբինատում, շինհրապարակներում կատարած ուսումնասիրություններից հետո։ Շինբանվածքների կոմբինատի կուսկազմակերպությունը, օրինակ, անցած 6 ամսում միայն մեկ անգամ է անդրադարձել սոցմրցությանը, իսկ № № 1, 4 շինվարչություններինը՝ ոչ մի, կառույցներում սոցմրցությունը հիշեցնող ոչինչ չկա, շինարարներն անտեղյակ են դրան։

Կիրովականի խոշոր կառույցներից մեկում ենք։ Բազմահարկ հանրախանութի շրջանաձև շենքն է դա, որ կառուցում է № 4 շինվարչության՝ Ալիկ Պետրոսյանի աշխղեկությունը։ Մայիսի առաջին օրերն են։ Զրուցում ենք աշխղեկի հետ։

— Ի՞նչ ասեմ,— դժգոհում է նա,— ցեմենտ չկա, ավազ չկա, անտառանյութ չկա, բանվորներ չկան։ Աշխատանքը ձմռանն ենք կատարում։ Ձմեռը 45 բանվոր ունեինք, հիմա՝ 10-ը։ Երրորդ հարկի ծածկը մարտի վերջին պետք է ավարտեինք, բայց ցեմենտի պատճառով ձգձգվում է։

Հետաքրքրվում ենք արտադրական նորմաներով, սոցմրցությամբ։

— Հույս չունենք, թե շինանյութերով կապահովվենք, դրա համար էլ առաջադրանք չենք տալիս,— արդարանում է աշխղեկը։

Երրորդ հարկի հատակն են բետոնապատում Սուրեն Քամալյանի ղեկավարած կոմպլեքսային բրիգադայի բետոնագործ-հյուսներ Սերգեյ Հարությունյանն ու Գարեգին Պապիկյանը։ Աշխատանքային եռանդով լեցուն, ջլապինդ երիտասարդ մարդիկ են նրանք, ինչպես ասում են, եթե ուզեն, սարեր շուռ կտան, բայց...

— Բետոնաշաղախն ստանում ենք ընդմիջումներով, գործը դանդաղում է,— դժգոհում է բրիգադավարը։

Բետոնագործներն ափսոսանքով են նշում, որ պլան-առաջադրանք չեն ստանում, հնարավոր չի լինում լավ ու վատ աշխատողին զատել իրարից։

— Խրախուսման ոչ մի միջոց չենք ձեռնարկում, որովհետև մրցության արդյունքները չենք քննարկում,— մոտավորապես այսպիսի միտք արտահայտեց № 3 շինվարչության տեղկոմի նախագահը։

Եթե կուսկոմիտեի նիստերում քննարկված հարցերին նայում ենք ժամա-



նակագրական առումով, ցցուն կերպով երևում են սոցմրցության կազմակերպման գործում կուսկոմիտեի թերացումները, աչքի է զարնում այն իրողությունը, որ այդ առթիվ ընդունած որոշումները մնացել են թղթի վրա։

Կուսկոմիտեն ստիպված իր տարբեր նիստերում արել է նույնանման եզրահանգումներ, ընդունել որոշման միանման կետեր, որոնք ինկուբատորային ճտերի նման այնքան շատ են նման իրար։ «Առանձին տեղամասերում, աշխղեկություններում, բրիգադաներում բավարար չափով չի ծավալվում սոցիալիստական մրցությունը»։ Կուսկոմիտեի 1969-ի հունիսի նիստի № 13 արձանագրության մեջ տեղ գտած այս միտքը նշվել է նաև նույն տարվա հունիսի (№ 14), հուլիսի (№ 15), օգոստոսի (№ 17) նիստերի որոշումներում։ Սոցմրցության անբավարար կազմակերպման մասին է խոսվում նաև սեպտեմբերին և հոկտեմբերին տեղի ունեցած նիստերի որոշումներում։

Նույնպիսի նմանությամբ տարբեր նիստերի որոշումներում որպես թերություն նշվում է նաև, որ ժամանակին չեն ամփոփվում վերցրած պարտավորությունների կատարման արդյունքները, բավարար չափով չեն գործում կամ անգործության են մատնվել մշտական գործող արտադրական խորհըրդակցությունները, պատվո տախտակները, չի տարածվում և արմատավորվում առաջավոր փորձը, ցածր է աշխատանքային կարգապահությունը և այլն։

Ճիշտ է, կուսկոմիտեն քննարկում է կենսական նշանակություն ունեցող հարցեր, սակայն հետամուտ չի լինում իր որոշումների կատարմանը։ Դրա հետևանքով էլ սոցմրցությունը, օրինակ, ձևական բնույթ է կրում, մասսայականություն չի ստանում։ Որպես վերջին մտքի հաստատում՝ դիմենք 1970-ի մարտի 27-ին կայացած կուսկոմիտեի նիստի որոշմանը, ուր ասվում է. Շին–վարչությունները գործարար մրցություն չեն կազմակերպում կամ՝ ... ստանձնած պարտավորությունները չեն քննարկում։ Ըստ էության, № № 1, 4 շինվարչությունների դատարկ պատվո տախտակները ևս այդ են վկայում։

Ասել է, թե կուսկոմիտեն, մեկ ու կես տարի քաջատեղյակ լինելով սոցմրցության գործի թերություններին, վճռականություն հանդես չի բերել դրանք մեկընդմիշտ վերացնելու, իր որոշումը հարգելու համար։

## ԱՆՏԵՍՎԱԾ ԲՆԱԳԱՎԱՌ

Ագիտացիոն-մասսայական աշխատանքում ևս աններելի թերություններ կան։ Առանձին կառույցներում ագիտատորներ ու քաղինֆորմատորներ գրեթե չեն երևում։ Ըստ էության, այդպիսիք չկան։ Կուսկոմիտեի մեկուկես տարվա արձանագրություններից ոչ մեկում ագիտկոլեկտիվի և քաղինֆորմատորների խմբի հաստատման մասին հիշատակություն չկա։ Նույնը նկատվեց նաև № № 1, 4 շինվարչությունների, շինբանվածքների կոմբինատի կուսկազմակերպությունների արձանագրություններում։ Ո՛չ կուսկոմիտեի քարտուղարը, ո՛չ էլ կուսբյուրոների քարտուղարները չկարողացան հիշատակել լավագույն ագիտատորի անուն։

№ 4 շինվարչության կուսբյուրոյի քարտուղար Ա. Դանիելյանը «ագիտատորների» թվում հիշատակեց նաև աշխղեկ Փ. Օհանյանին։ Եղանք վերջինիս աշխղեկության կառույցում (էլեկտրալամպերի գործարան), զրուցեցինք նրա հետ։ Փ. Օհանյանը գործից անտեղյակ մարդու տպավորություն թողեց։ Կուսբյուրոյի քարտուղարը փորձեց հուշել նրան, որ ագիտատոր է և հիմնական պարտականությունը բանվորների համար թերթ կարդալն է։ Բայց աշխղեկն

ավելի ճշմարտախոս գտնվեց և ժխտեց իր կողմից ագիտացիոն աշխատանք տանելու փաստը։

— Մեր ագիտատորները,— ասաց հանրախանութի աշխղեկ Ա. Պետրոսյանը,— СУ-ից են՝ Ենոքյանն ու Լոռյանը։

Ենոքյանը № 7 շինվարչության պետն է։ Նա, իրականում, ոչ թե ագիտատոր է, այլ՝ պրոպագանդիստ (հիշեցնենք, որ պրոպագանդիստական անբավարար աշխատանքի համար զգուշացվել է)։

Մեր այցելած կառույցներում շինարարների հետ ունեցած զրույցից են պարզվեց, որ ագիտացիոն աշխատանքն անտեսված է։

Ասել, թե կուսկոմիտեին չեն հետաքրքրել ագիտացիայի հարցերը, ճիշտ չի լինի։ Կուսկոմիտեն և կուսբյուրոները տարբեր առիթներով և տարբեր ժամանակներում գումարած նիստերում ու ժողովներում անդրադարձել են այդ հարցերին, համապատասխան որոշումներ ընդունել, սակայն, ցավոք, չեն հետևել դրանց կատարմանը։ Ինչպես ժողովրդական իմաստությունն է ասում. սայլը տեղից չի շարժվել։

* * *

Քաղաքական-դաստիարակչական աշխատանքը պետք է ծառայի տնտեսական խնդիրներին, նպաստի դրանց լուծմանը։ Իսկ Կիրշինտրեստում լուծման կարոտ շատ խնդիրներ կան։ Տակավին նկատվում են աշխատանքային կարգապահության, սոցիալիստական համակեցության կանոնների խախտումներ, առանձին օբյեկտներ շահագործման են հանձնվում մեծ ուշացումներով ու թերություններով։ Այդ և մյուս հարցերի կարգավորումը մեծ ջանքեր է պահանջում նաև տրեստի կուսկոմիտեից ու արտադրամասային կուսկազմակերպություններից։ Նրանք լավ ավանդույթներ ունեն, հարկավոր է շարունակել ու զարգացնել դրանք, սոցիալիստական մրցությանը տալ գործարար բնույթ, բարձրացնել քաղաքական-դաստիարակչական աշխատանքի մակարդակը։

Ա. Մ. ՍԱՔԱՆՅԱՆ



# ԷԿՈՆՈՄԻԿԱՅԻ ՀԱՐՑԵՐ

Ակադեմիկոս Վ. Մ. ԳԼՈՒՇԿՈՎ

## ԿԱՌԱՎԱՐՄԱՆ ԼԾԱԿՆԵՐԸ

Խարկովի տրակտորի գործարանում ունեցած իր ելույթում ՍՄԿԿ Կենտկոմի գլխավոր քարտուղար Լ. Ի. Բրեժնևը պլանային կառավարման կատարելագործման խնդիրը համարեց ծայրաստիճան ակտուալ, որը լուծելիս չի կարելի բավարարվել միայն հին փորձառությամբ։ «Նոր ձևերով ենք այժմ,— ընդգծեց նա,— մենք մոտենում, մասնավորապես, նաև ինֆորմացիայի հավաքման, արագ մշակման ու վերլուծման հետ կապված աշխատանքին։ Այստեղ լայնորեն կիրառվում է նորագույն էլեկտրոնա-հաշվողական և կազմակերպական տեխնիկան։ Ինֆորմացիայի սիստեմների ու էլեկտրոնա-հաշվողական տեխնիկայի զարգացման տեմպերի արագացմանը մենք մեծ նշանակություն ենք տալիս»։

«Литературная газета»-ի («ЛГ») թղթակիցներ Ա. Սմիռնով-Չերքեզովը և Վ. Մոևը հանդիպում ունեցան ՈւՍՍՀ ԳԱ կիբեռնետիկայի ինստիտուտի դիրեկտոր, ակադեմիկոս Վ. Գլուշկովի հետ և էլեկտրոնա-հաշվողական տեխնիկայի բազայի վրա հիմնված տնտեսության կառավարման կատարելագործմանը վերաբերող մի քանի հարցեր տվին նրան։

### 1 ԳՈՐԾԱՐԱՆՈՒՄ ՈՒ ՆՐԱ ՇԵՄԻՑ ԴՈՒՐՍ

— Վիկտոր Միխայլովիչ, մենք եղանք Լվովի հեռուստատեսային գործարանում, տեսանք Ձեր կոլեկտիվի ջանքերով ստեղծված արտադրության կառավարման ավտոմատացված սիստեմը՝ «Լվով» ԱԿԱՍ-ը։ Այն մեծ տպավորություն է թողնում։ «ЛГ» ընթերցողներին պատմել է կառավարման այդ հաջող փորձի մասին, որի ընթացքում օգտագործվում են ԷՀՄ։ Երբ չենք սխալվում, գործարանի կոորդինացիոն-կառավարող կենտրոնը երեսունից ավելի արտադրատեխնիկական խնդիր է վճռում. սկսած նյութատեխնիկական մատակարարման հաշվառքից ու պլանավորումից մինչև պատրաստի արտադրանքի իրացման պլանավորումը և, հարկավ, ամենագլխավորը— կենտրոնն օպերատիվ կառավարում է արտադրության ողջ ընթացքը։ Սակայն «Լվով» սիստեմը դեռևս խիստ արդյունավետությամբ չի օգտագործվում, որովհետև գործարանի աշխատանքները կախված են նաև արտաքին բազում կապերից, հազարավոր մատակարարներից, որոնց վրա ԱԿԱՍ-ը չի կարող ներգործել։ Դուք գտնո՞ւմ եք արդյոք, որ դա էական սահմանափակում է։ Եվ, ընդհանրապես, Լվովի սիստեմի շնորհիվ որքանո՞վ են իրացվել Ձեր ծրագրերը։

*— Մեր շատ մտահղացումներն են դրա միջոցով իրացվել։ Ամենևին հեշտ չէր հասնել այն բանին, որ ԱԿԱՍ-ը բաներ նույնիսկ գործարանի պարիսպների սահմաններում։ Ձեռք բերված արդյունքը զարմացնում էր Լվով ժամանած արտասահմանյան շատ մասնագետների։ Մենք այդ սիստեմը համարում ենք տիպային, այն կարելի է օգտագործել նաև մեքենաշինական այլ գործարաններում— ամեն տեղ, ուր մասսայական արտադրանք է թողարկվում։*

*Ո՞րն է ԱԿԱՍ-ի ուժը։ Այն հնարավորություն*

— Մեր հասարակարգում տնտեսության կառավարման նպատակը, այդ կառավարման վերջնական արդյունքը յուրաքանչյուր մարդու անձնական վիճակն է: Այդ բառը— հենց վիճակը, այլ ո՛չ բարեկեցությունը, հարկավոր է շեշտել, որը, սովորաբար, հաճախ է հիշատակվում: Ես բնավ տրամադիր չեմ ճղնավորություն քարոզել: Իմ պատկերացումներում մարդու վիճակը ենթադրում է նաև բարեկեցության աճ, բայց որ դա անպատճառ զուգորդվի, այսպես ասած, հոգեկան բարձր կոմֆորտին, անձնական երջանկությանը, կյանքի լիակատարության զգացմանը, որն անհնար է առանց աշխատանքից, դրա ստեղծագործական բնույթից բավարարված լինելու: Երբեմն այսպես են մտածում. իբր, գոյության այս երկրորդ կողմն առաջանում է ինքնին, որպես անվճար հավելված, հարստությունից ստեղծված հասարակ ածանցյալ: Իրականում այդպես չէ: Նյութական բարիքն ու հոգեկան կոմֆորտը, մեկը և մյուսն ստեղծվում են ծախքերի շնորհիվ: Եվ, քանի որ, հասարակությունը սահմանափակ միջոցներ ունի, դրանք պետք է ներդաշնակորեն բաշխել մեկին և մյուսին:

Բայց այստեղ հնարավոր են և՛ կոնֆլիկտներ, և՛ վեճեր՝ ծախքերի համամասնության վերաբերյալ:

Մեր հասարակությունն ընձեռում է բոլոր հնարավորությունները մարդու ներդաշնակ զարգացման համար: Եվ մենք պետք է դրանք օգտագործենք կառավարման ընթացքում: Երբեմն անհրաժեշտ են լինում հոգեկան կոմֆորտի համար ծախքեր կատարել, նույնիսկ եթե դրանք «ձեռնտու չլինեն»: Վերցրեք հասարակ օրինակ: Աշխատանքի բովանդակության նկատմամբ այժմյան խստապահանջության պայմաններում հազիվ թե որևէ երիտասարդի դուր գա բեռնակրի աշխատանքը: Ուրեմն, անհրաժեշտ են համապատասխան մեքենաներ: Թո՛ղ դրանց ներդրումը թանկ նստի, քան ձեռքի աշխատանքն է: Դրա փոխարեն քանիսի՜ մոտ կբարձրանա աշխատանքից բավարարվածության զգացումը:

Ի միջի այլոց, երբեմն հեշտ չի լինում ճշտիվ որոշել այդպիսի բավարարվածության մակարդակը:

— Այսինքն: Մենք Ձեզ լավ չենք հասկանում...

— Ի՞նչ ենք անում, երբ մարդուն աշխատանքը դուր չի գալիս, օրինակ, երբ այն սկըսում է ձանձրույթ պատճառել նրան: Նման դեպքերում մենք հաճախ ենք ասում. «Ձեր աշխատանքն անհրաժեշտ է հասարակությանը: Գիտակից քաղաքացին պետք է դա հաշվի առնի»: Իսկ սովետական մարդն իսկապես բարձր գիտակցությամբ է օժտված. նա, որպես կանոն, դյուրազգացորեն արձագանքում է հասարակության կարիքներին և մի կողմ դնելով հույզերը, անձնվիրաբար շարունակում իր գործը: Դա հրաշալի է: Բայց ինչպիսի՞ն են կողմնակի արդյունքները: Անբարեպատեհ հույզերի ազդանշանն ուշանում է, ժամանակին չի հասնում կառավարման սիստեմին: Այնուհետև, հավանաբար, ամեն բան պարզ է. կառավարման սիստեմին շատ անհրաժեշտ են հետադարձ կապի ազդանշանները: Ստանալով և վերլուծելով դրանք, կառավարման սիստեմում կարելի է միջոցներ նախանշել, որոնք առավելապես նպաստեն հոգեկան կոմֆորտի (հարմարավետության) զգայության բարձրացմանը:

— Եվ այսպես, Վիկտոր Միխայլովիչ, կառավարման նոր մեթոդները, էլեկտրոնային տեխնիկան ո՛չ միայն ժողովրդական տնտեսության տնտեսական արդյունավետության բարձրացում են խոստանում: Դրանք, ինչպես մենք ձեզ հասկացանք, կարող են մեծ դեր խաղալ նաև սոցիալական պրոբլեմների լուծման գործում: «Էլեկտրոնային ուղեղը» հաճախ են դեռևս համարում մարդու մրցակիցը, եթե ոչ ախոյանը: Ուրեմն, դուրս է գալիս, այն մեր հավատարիմ օգնականն է ո՛չ միայն նյութա-կուլտուրական զարգացման, այլև մեր հոգևոր հզորության բազմապատկմա՞ն գործում:

— Միանգամայն ճիշտ է:

«Литературная газета».
6 մայիսի 1970 թ., № 19





# ՀԱՆՈՒՆ ԱՇԽԱՏԱՆՔԱՅԻՆ ԲԱՐՁՐ ԿԱՐԳԱՊԱՀՈՒԹՅԱՆ

Աշխատանքային ու արտադրական կարգապահությունն ամեն մի կոլեկտիվի հաջող գործունեության կարևորագույն նախապայմանն է: Հանրահայտ է, որ այն ձեռնարկություններում, որտեղ բարձր է գիտակցական կարգապահությունը, արդյունավետ են օգտագործվում կոլեկտիվի տնօրինությանը հանձնըված արտադրամիջոցները, նվազ են լինում աշխատաժամանակի կորուստները և, իբրև կանոն, համաչափ է խփում նրա աշխատանքային զարկերակը: Արտադրանքի որակի ապահովումը, ինչպես և արտադրողականության բարձրացումը բացառվում է առանց պատշաճ աշխատանքային կարգապահության:

Արդյունաբերության մեջ այժմ կիրառվող տնտեսական ռեֆորմը, ինչպես նաև ձեռնարկությունների տնտհաշվարկային իրավունքների զգալի ընդլայնումը, առավել բարենպաստ պայմաններ են ստեղծում աշխատանքային կարգապահության հետագա ամրապնդման, աշխատաժամանակի անթերի օգտագործման ու արտադրության արդյունավետության աննախընթաց բարձրացման համար: Դրա լավագույն ապացույցն ընթացիկ հնգամյակում արդյունաբերության առջև դրված նոր ու վիթխարի խնդիրների հաջող կատարումն է՝ աշխատողների նյութական բարեկեցության հետագա բարձրացմամբ հանդերձ:

Սակայն, ուսումնասիրությունները ցույց են տալիս, որ առանձին տընտեսական ղեկավարներ ո՛չ միայն լիովին չեն ապահովում բանվորական ուժի ու աշխատաժամանակի արդյունավետ օգտագործման նոր հնարավորությունները, այլև արտադրության անբավարար կազմակերպման հետևանքով տեղիք են տալիս հսկայական կորուստների ու վատնումների: Պարապուրդները, անհամաչափ աշխատանքը, մեքենասարքավորումների տեխնիկական ցածր վիճակը, աշխատանքային անբարենպաստ պայմաններն աստիճանաբար թուլացնում են կարգապահությունը և նպաստում բանվորական ուժի հոսունությանը:

Այդ տեսակետից բնորոշ է Երևանի նուրբ բրդյա գործվածքների կոմբինատի աշխատանքային գործունեությունը: Այստեղ տարեցտարի չեն կատարվում արտադրանքի որակի, իրացման, շահույթի, աշխատանքի արտադրողականության և այլ կարևոր ցուցանիշներ: Այս կոմբինատը մեր հանրապետության խոշոր տեքստիլ ձեռնարկություններից մեկն է: Այն տալիս է թեթև արդյունաբերության մինիստրության իրացվող արտադրանքի մոտ 15 տոկոսը: Կոմբինատը հագեցված է հայրենական ու արտասահմանյան ժամանակակից տեխնիկայով, բավարար է մատակարարման գործը, մեծ է բրդյա գործվածքների ու ապրանքային մանվածքի պահանջարկը, հետևապես և՝ դրանց իրացման հնարավորությունը:

Իր գոյության 17 տարվա ընթացքում ձեռնարկության կոլեկտիվը պատրաստել է մեծ թվով մասնագետներ, ձեռք է բերել աշխատանքի զգալի փորձ և բոլոր նախադրյալներն ունի ո՛չ միայն բավարար, այլև բարձր ցուցանիշներով աշխատելու համար։ Բայց, ինչպես արդեն նշեցինք, կոմբինատի արտադրատնտեսական գործունեությունը դեռևս բավարար չէ։ Բավական է ասել, որ բրդյա գործվածքների հսկայական պահանջարկի պայմաններում, շատ սպառողներ հրաժարվում են դրա արտադրանքից. գործվածքների և ապրանքային մանվածքի որակի հետ կապված բողոքներն ու տուգանքները մասսայական են։ Արդյունավետ չեն օգտագործվում մեքենաներն ու սարքավորումները, թանկարժեք հումքն ու օժանդակ նյութերը։ Եթե Միության այլ ձեռնարկություններում 1 ռուբլու ապրանքային արտադրանքի ծախսերը կազմում են 88—90 կ., ապա Երևանի կոմբինատում, 1969 թ. կազմեցին 97,03 կոպ., որն արտադրանքի ներկա ծավալի դեպքում համազոր է տարեկան մոտ 5 միլիոն ռուբլու կորստի։

1969 թ. վերջերին ՀԿԿ Երևանի քաղկոմի բյուրոն այդ կապակցությամբ համապատասխան որոշում ընդունեց։ Ներկայումս կոմբինատի նոր ղեկավարությունը, կուսակցական ու հասարակական կազմակերպությունների օգնությամբ, ձգտում է ծանր վիճակից դուրս բերել ձեռնարկությունը։ Որո՞նք են այն չլուծված հիմնական խնդիրներն ու թողտվությունները, որ կոմբինատին դրել են նման ծանր կացության մեջ։ Մինչև այժմ ձեռնարկության պատասխանատու շատ աշխատողներ այն կարծիքին են, որ բոլոր չարիքները թաքնված են բանվորական ուժի պակասության մեջ, իսկ որոշ գիտական աշխատողներ իրենց հոդվածներում դրան ավելացնում են նաև մանկական հիմնարկությունների պակասը, երեքհերթյա աշխատանքը, բնակավայրերի հեռավորությունը և այլն։

Առանց իրավիճակի խոր վերլուծության, աշխատանքները բարելավելու նպատակով, արվում են ամենաբազմազան առաջարկներ, ընդհուպ մինչև կանանց կեսհերթ աշխատանքի փոխադրելը, այսինքն՝ կանայք 4 ժամ աշխատելու համար (ստանալով աշխատավարձի կեսը) պետք է նույնքան ժամանակ կորցնեն քաղաքի արվարձաններից ձեռնարկություն գնալու ու վերադառնալու համար։

Չժխտելով վերոհիշյալ անհարմարությունների որոշակի բացասական ազդեցությունը կոլեկտիվի աշխատանքների վրա, այն համոզմունքին ենք, որ կոմբինատի արտադրա-տնտեսական գործունեության ձախողման հիմնական պատճառները արտադրության կազմակերպման ցածր մակարդակն է, աշխատանքային կարգապահության անկումը, ինչպես նաև դաստիարակչական աշխատանքի բացակայությունը բանվորների շրջանում:

Նման եզրակացության է բերում ո՛չ միայն կոմբինատի հաշվետվությունների ուսումնասիրությունը, որը, ի դեպ, իրավիճակի մասին տալիս է մակերեսային պատկերացում, այլ առանձին արտադրությունների ու արտադրամասերի վերջին մի քանի տարվա գործունեության վերլուծությունը։ Այդ նպատակով մանրամասն ուսումնասիրվել է կոմբինատի երեք արտադրություններից ամենախոշոր և ավելի ծանր վիճակում գտնվող մանարանային արտադրությունը։ Համեմատության համար հետազոտվել են նաև Միության նույնատիպ առաջավոր ձեռնարկությունները և, մասնավորապես, դրանց մանարանային արտադրությունները։

Աշխատանքային կարգապահությունը. Կոմբինատի ու մանարանի ղեկավար աշխատողներն ընդունում են, որ այդ արտադրությունը չի փայլում իր աշխատանքային կարգապահությամբ, բայց նրանք ամենևին էլ այն կարծիքին չեն, որ կարգապահությունը հասել է տագնապալի աստիճանի, և որ տեխնիկա-տնտեսական ցուցանիշների ներկա անհանդուրժելի վիճակը հետևանք է ո՛չ թե բանվորական ուժի պակասի, այլ հենց այդ ուժի ոչ շրջահայաց ու անարդյունավետ օգտագործման։

Կոմբինատի պաշտոնական հաշվետվությունների համաձայն, մանարանային արտադրությունում բանվորների ու աշակերտների միջին տարեկան թիվը 1969 թ. կազմել է 1135 մարդ, իսկ գրանցված գործալքումներինը՝ 9335 մարդ-օր։ Այլ կերպ ասած, տարվա ընթացքում մանարանի ամեն մի բանվոր, միջին հաշվով, աշխատանքը լքել է 8,2 օր, իսկ 2,7 օր աշխատանքի չի ներկայացել ադմինիստրացիայի թույլտվությամբ, 14,1 օր հիվանդության պատճառով և այլն։

Հաշվետու տարում գրանցված պարապուրդները կազմել են 91523 մարդ-ժամ։ Եթե ելնենք այն բանից, որ մեկ բանվորի օգտակար ժամանակի տարեկան ֆոնդը պլանով նախատեսված էր 2079 ժամ, ապա ստացվում է, որ պարապուրդների հետևանքով մանարանում 44 մարդ ամբողջ տարին ներկայացել են ձեռնարկություն, բայց չեն աշխատել։ Շատ են նաև աշխատանքից ուշանալու կամ մինչև աշխատանքի վերջանալը գործի դադարեցման դեպքերը, ինչպես նաև երեկոյան հերթափոխություններին աշխատանքից կես կամ մի ժամ շուտ տուն գնալը։

Գործալքություններն ու կարգապահության մյուս կանոնների խախտումները մեծ չափերի են հասել. կոլեկտիվը, ինչպես և ղեկավարները, կարծես հաշտվել են այդ դրության հետ։ Բանվորական ուժի ու աշխատաժամանակի նման վատնումների պայմաններում բանվորական ձեռքերի պակասության մասին խոսք լինել չի կարող։

Հաճախակի են դեպքերը,— նշում է Լ. Ի. Բրեժնևը,— երբ թանկարժեք աշխատաժամանակը ծախսվում է ապարդյուն, մարդիկ ուշանում են, աշխատանքի չեն ներկայանում անհարգելի պատճառով, թույլ են տրվում գործալքություններ, որոնք երբեմն կապված են հարբեցողության հետ։ Չեմ թաքցնի, որ մենք ստանում ենք նամակներ, որոնցով բանվորները, կոլտնտեսականները, ինժեներներն առաջարկում են ուժեղացնել պայքարը արտադրությունը կազմալուծողների, գործալիքների, հարբեցողների և խոտանարարների դեմ։ Դրանք միանգամայն ճիշտ պահանջներ են. չի կարելի ներողամտություն ցուցաբերել այն մարդկանց նկատմամբ, որոնց մեղքով մեր հասարակությունը լուրջ վնաս է կրում, վիժեցվում է ձեռնարկությունների և արտադրամասերի պլանների կատարումը, իսկ բարեխիղճ աշխատողներն ավելի քիչ են վաստակում։

Պարտադիր են գործալքումների թվի վերաբերյալ հաշվետվությունները: Բարվոք չէ նաև գործալքումների ու կարգապահական մյուս խախտումների սկզբնական հաշվառքը։ Իսկ ինչ վերաբերում է հաշվետվություններին, ապա դրանք առանձնապես չեն անհանգստացնում թեթև արդյունաբերության մինիստրության ղեկավարությանը։ Արտադրության անբավարար կազմակերպման ու աշխատանքային կարգապահության անկման հետևանքով մեծ չափերի է հասել նաև բանվորական ուժի հոսունությունը։ Ամեն տարի այստեղ աշխատանքից ազատվում է բանվորների մոտ 35 տոկոսը։

Բանվորական ուժի հոսունությունն իր բացասական ազդեցությունն է

թողնում ձեռնարկության գործունեության վրա (սկսած հումքի մշակումից, վերջացրած արտադրանքի որակով)։ Ուսումնասիրությունները ցույց են տալիս, որ չնայած արտադրական ու աշխատանքային օրինակելի կարգապահությանը, մեծ է աշխատանքից ազատվողների թիվը նաև Միության առաջավոր տեքստիլ ձեռնարկություններում։ Բայց բոլորովին այլ են դրանց բանվորների աշխատանքից ազատվելու պատճառները։ Այսպես, 1968 թվականին Իվանովոյի նուրբ բրդյա գործվածքների կոմբինատից մոտ 1000 բանվորուհի աշխատանքից ազատվել են ամուսնության ու ծննդաբերության կապակցությամբ, 205-ը՝ սովորելու և բանակ զորակոչվելու, 309-ը՝ աշխատանքային պայմանագրերով նախատեսված ժամկետները լրանալուց հետո, իսկ 199 հոգի բանվորական կարգից կոմբինատի ներսում տեղափոխվել է այլ, ոչ բանվորական աշխատանքների։ Ազատվողներից շատերը չեն խզում կապերը կոլեկտիվի հետ և իրենց ընտանեկան հարցերը կարգավորելուց հետո վերադառնում են նախկին տեղը։ Այս բանը չկա Երևանի կոմբինատում։

Չնայած իվանովցիների մոտ գործալքության մակարդակը 68 անգամ ցածր է երևանցիներից, այնուամենայնիվ, այս հանգամանքը խիստ մտահոգում է Իվանովոյի կոմբինատի դիրեկցիային ու կուսկազմակերպությանը։ Այնտեղ գիտակցական կարգապահության ամրապնդման նպատակով ձեռնարկվում են նորանոր միջոցառումներ, քննում են գործալքության ամեն մի դեպք։

**Աշխատանքային կարգապահության բարձրացման եղանակները.** Իվանովոյի, Մոնինոյի, Կալինինի, Կրասնոդարի և նուրբ բրդյա գործվածքների առաջավոր այլ կոմբինատներում աշխատանքային ու արտադրական կարգապահության բարձրացման նպատակով անընդհատ բարելավում են բանվորների աշխատանքային պայմանները, ապահովում մեքենասարքավորումների տեխնիկական բարձր մակարդակն ու արտադրության համաչափ աշխատանքը, հոգում են աշխատավորների նյութական ու կուլտուր-կենցաղային պահանջները։ Այս միջոցառումները (պարգևատրումների չափերը, վճարման պայմանները, ժամկետները, դրամական միջոցների համամասնությունն ըստ աղբյուրների) անընդհատ կատարելագործվում են ու վերանայվում, ելնելով արտադրության «նեղ» տեղերից ու պլանային ցուցանիշների կատարման մակարդակից։

Արտադրության բարելավման ու նյութական խրախուսման կազմակերպման տեսակետից նման գործնականություն չկա Երևանի կոմբինատում։ Համեմատենք Իվանովոյի և Երևանի կոմբինատների արտադրությունների վիճակը։

Սանիտարական առումով Իվանովոյի կոմբինատում, սկսած դարպասներից, վերջացրած ամենափոշոտ արտադրամասով, հիրավի, նախանձելի է։ Կարգ ու կանոնը բարձր մակարդակի վրա պահելու նպատակով նրանք տառացիորեն մտածել են բոլոր «մանրուքների» մասին, այստեղ դիմազրկությունը տեղ չունի և արդյունքները հիանալի են։

Այստեղ անհրաժեշտ է հիշել Վ. Ի. Լենինի այնքան պարզ ու իմաստուն խոսքերը. «Մեծին հասնելու համար պետք է սկսել փոքրից» (Երկեր, հ. 30, էջ 662)։ «Փոքրի» մեծությունն առանձնապես ակնառու է նուրբ բրդյա մանրանային ու գործվածքային արտադրություններում, երբ նկատի ունենք, որ խոտանից խուսափելու ու բարձրորակ մանվածք ու գործվածքներ ստանալու ամենակարևոր պայմաններից մեկն արտադրական տարածությունների ու մեքենաների կատարյալ մաքրությունն է։



1969 թ. Երևանի կոմբինատը պայմանագրային տարբեր խախտումների համար վճարել է 700,7 հազար ռուբլի տուգանք, որից 290 հազարը՝ որակի համար։ Իհարկե, հնարավոր չէ մաթեմատիկական ճշտությամբ հաշվարկել, բայց, որ այդ գումարի մի մասը սանիտարական ու կլիմայական նորմաների խախտման հետևանք է, չեն ժխտում նույնիսկ արտադրության մասնագետները։ Էլ չենք ասում, որ սանիտարական բարվոք պայմաններում աշխատելը բանվորների համար և՛ հաճելի է, և՛ արդյունավետ։

Ի տարբերություն Միության առաջավոր ձեռնարկությունների, Երևանի կոմբինատի արտադրություններում լավ չեն գործում օդափոխիչները, չի ապահովվում ջերմաստիճանի ու օդի խոնավության անհրաժեշտ ռեժիմը։ Համարյա ոչինչ չի արվում աշխատատար պրոցեսների մեքենայացման նպատակով։

Իվանովոյում պարզ ու սպառիչ են հրահանգավորվող ու յուրաքանչյուրի պարտականությունները ցույց տվող փաստաթղթերը։ Պատշաճ մակարդակի վրա են սկզբնական հաշվառումը, հաշվետվությունն ու հսկողությունը։ Նրանք, որպես կանոն, այցելում են հիվանդներին, նրանց աշխատավարձն ուղարկում տուն և այլն։ Մեզ մոտ ոչ միայն այդ բոլորը չկա, այլև հաճախ հիվանդները գնահատվում են իբրև գործալիքներ։

Ահա այն «փոքր» միջոցառումների մի մասը, որոնք ապահովում են ձեռնարկության աշխատողների գիտակցական կարգապահությունը, փոխադարձ հարգանքն ու ուշադրությունը, ինչպես նաև կոլեկտիվի առջև դրված արտադրական խնդիրների օրինակելի լուծումը։

Իվանովոյում նյութական խրախուսման հետ մեծ արդյունավետությամբ օգտագործվում են նաև բարոյական խթանման միջոցները՝ պատվոտախտակներ, պատվոգրեր, գործարար սոցիալիստական մրցություն ու արդյունքների հանդիսավոր մասսայականացում, ելույթներ թերթերում, ռադիոյով, հեռուստատեսությամբ, նամակներ առաջավորների հարազատներին և այլն։

Արտադրության կազմակերպումը մեզ մոտ հիմնականում, եթե ոչ ամբողջովին, կապում են նյութական խրախուսման հետ։ Բայց այդ միջոցների օգտագործումը, անկախ դրա մեծությունից, գրեթե վեր է ածվել լրացուցիչ աշխատավարձի։

Ինչպես հայտնի է, բանվորներն ընթացիկ պարգևատրումներն ստանում են երկու աղբյուրից՝ աշխատավարձից ու շահույթից գոյացող նյութական խրախուսման ֆոնդերի (ՆԽՖ) հաշվին։ Իվանովոյում այդ միջոցները, ընդհանրապես, օգտագործվում են շատ հաշվենկատ։ Բերենք մի օրինակ։ Որոշակի ցուցանիշների հասնելու համար բրիգադները ՆԽՖ-ից ամեն ամիս ստանում են պարգև, բայց եթե բրիգադայի անդամներից թեկուզ մեկը լքի աշխատանքը, ամբողջ բրիգադան զրկվում է պարգևատրումից։ Յուրաքանչյուրի եռակի ուշացումը համազոր է մեկ գործալքման. լավ է մտածված, լավ են և արդյունքները։

Մեզ մոտ չկան պարգևատրման նման ճկուն ձևեր։

Մի այլ օրինակ. նրանց մոտ աշխատանքային արձակուրդներից օգտվելու հերթականությունը որոշում ու գրաֆիկները կազմում են բանվորները, իհարկե, հետագա համապատասխան հաստատումներով։ Մեզ մոտ գրաֆիկները իջեցվում են «վերևից»։ Ստացվում են միանգամայն հակադիր արդյունքներ։

Արտադրության հաջող կազմակերպման ու խթանումների օգտագործման

ուսանելի շատ օրինակներ կարելի է բերել, բայց բավարարվենք այսքանով։

Որո՞նք են Երևանի նուրբ բրդյա գործվածքների կոմբինատի աշխատանքների ձախողման պատճառները։ Փաստերը ցույց են տալիս, որ դրա պատճառները հարկավոր է փնտրել աշխատանքային կարգապահության անկման, արտադրության վատ կազմակերպման, բանվորների հետ տարվելիք քաղաքական-դաստիարակչական անբավարար աշխատանքների և խթանման տարատեսակների անհաջող օգտագործման մեջ։ Ահա որտեղից պետք է սկսել այդ մեծ ու բարդ տնտեսության կարգավորման շնորհակալ գործը, իհարկե, աչքաթող չանելով նաև նոր բնակարանների հատկացման խնդիրը Լենինյան շրջանում (և ոչ թե Նորքի զանգվածներից), տրանսպորտի անկանոն աշխատանքը, հասարակական սննդի անմխիթար վիճակը, մանկական հիմնարկությունների ընդլայնումը և կենսական այլ հարցեր։

«Կառավարելու համար,— նշում է Վ. Ի. Լենինը,— հարկավոր է ձեռնհաս լինել, հարկավոր է լիովին և մանրամասնորեն գիտենալ արտադրության բոլոր պայմանները, հարկավոր է գիտենալ այդ արտադրության տեխնիկան՝ նրա ժամանակակից բարձրությամբ, հարկավոր է ունենալ գիտական որոշ կրթություն» (Երկեր, հ. 30, էջ 547)։

Ելնելով գործերի դրությունից, կարելի է ասել, որ այստեղ կադրերը տեղաբաշխելիս ոչ բոլոր դեպքերում են լիովին ղեկավարվել լենինյան սկզբունքով։

Գ. Գ. ԴԱՎԹՅԱՆ



# Գիտությունը և կյանքը

## ԲԺԻՇԿԸ ԵՎ ԱՇԽԱՏԱՆՔԻ ԳԻՏԱԿԱՆ ԿԱԶՄԱԿԵՐՊՈՒՄԸ

Աշխատանքի կազմակերպման հարցերին նվիրված համամիութենական խորհրդակցությունից հետո (1967 թ. հունիսի 26—29) մեր արդյունաբերության, գյուղատնտեսության, շինարարության մեջ ստեղծվեցին ԱԳԿ մի շարք խմբեր, լաբորատորիաներ, բաժիններ, որտեղ կան տարբեր որակավորում և մասնագիտություն ունեցող բազմաթիվ աշխատողներ։ Հենց այդ տարբեր մասնագետների առկայությունն էլ ցույց է տալիս, որ ԱԳԿ ոչ թե միակողմանի, այլ կոմպլեքսային, զուգակցված, բազմակողմանի գործ է։

Բացի ԱԳԿ խմբերից, կան նաև տարբեր ստեղծագործական բրիգադաներ, նորարարների, ռացիոնալիզատորների մի հսկա բանակ։ Միայն տեղարդ մինիստրության ցանցում հազարից ավելի մարդիկ են ընդգրկված այդ խմբերում, իսկ ամբողջ հանրապետությունում՝ ավելի քան մի քանի տասնյակ հազար։ Նրանց գործունեության նպատակն է՝ աշխատանքը կազմակերպել այնպես, որ հաճելի լինի այն, կենսական անհրաժեշտությունից վերածվի կենսական պահանջի։ Այդ խնդրում առանձնապես մեծ անելիքներ ունեն աշխատանքային հիգիենայի, ֆիզիոլոգիայի և հոգեբանության բնագավառի մասնագետները։ Աշխատանքային հիգիենան ուսումնասիրում է աշխատանքային պայմանները, միկրոկլիման, օդի ջերմաստիճանը, խոնավությունը, շարժումը, փոշոտվածությունը, թունավոր նյութերի առկայությունն օդում, աղմուկը, ցնցումը, տարբեր ճառագայթումները, դրանց հարուցած վնասակար ազդեցությունները մարդու օրգանիզմի վրա և մշակում դրանց դեմ մղվող պայքարի միջոցներ։

Աշխատանքային ֆիզիոլոգիան ուսումնասիրում է մարդու մարմնի գործունեությունն աշխատանքի ընթացքում, աշխատունակության և հոգնածության հարցերը, խորհուրդ տալիս՝ ինչպես կազմակերպել գործը, որպեսզի այն օգտակար լինի ո՛չ միայն հասարակության, այլև աշխատողի համար։

Կարևոր է նաև աշխատանքային հոգեբանությունը, որն ուսումնասիրում է աշխատանքի ազդեցությունը մարդու հոգեբանության վրա. այն ԱԳԿ կազմի մեջ մտնող գիտությունները կապող օղակն է։ Պատշաճ ուշադրություն նվիրելով աշխատանքային հոգեբանությանը, կարելի է բարձրացնել մարդու տրամադրությունը, նպաստել տվյալ աշխատանքի նկատմամբ համապատասխան վերաբերմունքի ձևավորմանը։ Վատ հոգեբանական միջավայրն ավելացնում է նևրոզների, ներվային հիվանդությունների թիվը, իսկ լավ միջավայրը բարձրացնում աշխատունակությունը, ավելացնում որակյալ արտադրանքը։ ԱԳԿ լիարժեք կարող է լինել միայն այն դեպքում, երբ այն հենվի աշխատանքային հոգեբանության, ֆիզիոլոգիայի և հիգիենայի օրինաչափությունների վրա։ Մինչդեռ, ցավոք, ԱԳԿ խմբերում չկան բժիշկներ, հիգիենիստներ, ֆիզիոլոգներ, հոգեբաններ։

Երբ 1968 թ. հանրապետության ԱԳԿ 40 խմբերի 120 հաստիքներից

ծառ արեգակի ջերմ ճառագայթները կտաքացնե՞ն մարդու տանջահար հոգին:

Մռայլ տափաստանը լուռ է... Պատասխան չկա, և թախիծն ավելի ուժգին է ճնշում հոգիս...

Երկինքը պարուրվում է ամպերով... Քամին բարձրացավ... Ծայթեց ամպրոպը, և երկինքը, ասես, լաց եղավ...

Արդյոք անկենդան տափաստա՞նը հուզեց նրան, սև մռայլ ամպերում կորած մենության զգացո՞ւմը խոսեց նրա մեջ— միայն թե արցունքի առատ հեղեղներ դարձած՝ այն երկիր իջավ, և մենյալ տափաստանի վրա, իբրև երկնքի խուլ հեկեկանք, հորիզոնից-հորիզոն տարածվեց ամպրոպի որոտը...

Ջրի լայն, խիտ զանգվածի նման տեղում էր անձրևը, և դրա յուրաքանչյուր կաթիլն աղմուկով ընկնում էր գետնին, ասես շշնջալով, թե երկնքի արցունքներով ողողված տափաստանը հարություն կառնի, նորից կբարձրանա խոտը, կփթթեն բազմաթիվ թարմ ծաղիկներ, և ինքը՝ տափաստանը, կենդանություն կստանա, և ամեն ինչ այնտեղ կշնչի կյանքով...

Բայց առայժմ քայլելն ավելի դժվարացավ...

Ոտքերս խրվում են ցեխի մեջ, քամին շուրջս ամեն ինչ պոկում է և թափանցում հոգնաբեկ մարմնիս մեջ...

Ես դանդաղ շարժվում եմ ու մտածում, որ չեմ տեսնի այն կյանքը, որի մասին շշնջում են անձրևի կաթիլները, որ այն ժամանակ, երբ կծաղկի տափաստանը, երբ կծագի արևը և հազարավոր ճառագայթներ կփռի այժմյան մենյալ տափաստանի վրա, ուրիշները կապրեն...

Եվ ես չեմ կարողանում որոշել, թե իմ մեջ ո՞ր զգացմունքն է ավելի ուժեղ՝ արդյոք նախանձի՞ նրանց, ուրիշների հանդեպ, ովքեր ապրելու են իմ փոխարեն, թե՞ ուրախության, որ գեթ մի օր կլինի թե՛ լույս, թե՛ կյանք. և որ իմ այժմյան տառապանքներով ես հատուցում եմ ուրիշների՝ ինձ անծանոթ մարդկանց ապագա երջանկության համար...

Դժվար է քայլել...

Եվ, այնուամենայնիվ, ես գնում եմ, չիմանալով, թե ուր և ինչու... չգիտեմ, թե ինչ է սպասում ինձ այս տափաստանի սահմաններից դուրս, չգիտեմ, թե ինչ կյանք է սպասում ինձ առջևում և արդյոք կա՞ այնտեղ որևէ կյանք:

Ես գնում եմ հոգնած, տանջված, հոգիս լի թախիծով ու տառապանքով...

Լուռ նայում է լայն, անծայրածիր ու մենյալ տափաստանը, կարծես պատրաստվում է ամեն րոպե հարություն առնել... Այնպես, ինչպես և ես, կարոտով սպասում է կյանքի ու լույսի և չգիտե, կսպասի՞ մինչև...

Ես գնում եմ... խոժոռ, պաղ տափաստանը լուռ է:

Ս. ՍԵՄՅՈՆՈՎ.

«Новое обозрение» № 5223
19-ը սեպտեմբերի 1901 թ.



*Ստ. Շահումյանի չհրապարակված նկարը՝ ընկերների հետ, որոնց մեծ մասի ով լինելը մինչ օրս հայտնի չէ: Ճանաչողներին խնդրվում է հայտնել խմբագրությանը:*

# ԵՐԻՏԱՍԱՐԴ ԳԻՏԱԿԱՆ ԱՇԽԱՏՈՂԻ ամբիոն

## ՀԱՎԱՏԱՐԻՄ ԼԵՆԻՆՅԱՆԸ

*1917 թվականի փետրվարյան հեղափոխությունն իր ոլորտն առավ նաև Անդրկովկասը: Վերացավ կովկասյան փոխարքայությունը: Երկրամասի քաղաքներում ու գյուղերում և Կովկասի բանակի զորամասերում ստեղծվեցին բանվորների, զինվորների և գյուղացիների դեպուտատների սովետներ:*

*Ընդհատակից դուրս եկան և կուսակցական-քաղաքական բացահայտ աշխատանք ծավալեցին Անդրկովկասի բոլշևիկները: Երկրամասի բոլշևիկյան կազմակերպությունների վերականգնման ու ամրապնդման գործում խոշոր դեր կատարեցին աքսորից ու վտարանդիությունից վերադարձած կուսակցության ականավոր գործիչներ, Անդրկովկասի բոլշևիկների ճանաչված ղեկավարներ Ս. Շահումյանը, Փ. Ջափարիձեն, Մ. Ցխակայան, Ֆ. Մախարաձեն, Գ. Կորգանովը, Ի. Ֆիոլետովը, Մ. Ազիզբեկովը, Ս. Քավթարաձեն, Ս. Կասյանը, Ա. Մռավյանը, Ս. Տեր-Գաբրիելյանը, Հ. Նազարեթյանը, Ս. Էֆենդիևը և ուրիշներ:*

*Անդրկովկասյան բոլշևիկների այդ ղեկավար խմբի մեջ էր և 1902 թ. ՌՍԴԲԿ անդամ Դանուշ Ալեքսանդրի Շահվերդյանը, որը դուրս գալով ընդհատակից՝ եռանդուն գործունեություն ծավալեց Թիֆլիսում և Անդրկովկասի այլ քաղաքներում:*

*Թիֆլիսի բանվորները բաց գիտենալով Շահվերդյանի հեղափոխական անցյալը, 1917 թ. նրան ընտրեցին Թիֆլիսի բանվորական դեպուտատների սովետի և նրա գործադիր կոմիտեի անդամ: Այդ սովետում մեծամասնությունը կազմում էին մենշևիկները, ուստի և գործադիր կոմիտեում աշխատելը նրա համար շատ դժվար էր: Սովետի կազմում նա պայքարում էր մենշևիկների դեմ և աշխատում անցկացնել բոլշևիկյան հետևողական գիծ: Պատկերացնելու համար, թե ինչպիսի հեղինակություն ուներ Շահվերդյանը բոլշևիկ ղեկավար գործիչների շրջանում, բերենք այն ժամանակ ՌՍԴԲԿ Թիֆլիսի կոմիտեի քարտուղար Ա. Ի. Միկոյանի Բաքվի կոմունայի օրերի մասին հիշողությունները, ուր նա գրում է.*

*Մարտի կեսերին, կուսակցության Թիֆլիսի կոմիտեի նիստի ժամանակ, Բաքվից ստացվում է Ստ. Շահումյանի նամակը Ա. Մռավյանին Բաքու աշխատանքի ուղարկելու մասին: Նկատի ունենալով, որ Ա. Մռավյանը Բաքու գնալու հնարավորություն չուներ, ինքը նիստից հետո այցելում է Դանուշ Շահվերդյանին. վերջինս ժամանակին աջակցել էր նրան՝ կուսակցության մեջ ընդունվելու. «...Ես հարցրի նրան՝ չե՞մ կարող արդյոք ինքս մեկնել այնտեղ (Բաքու): Չէ՞ որ դու ինձ լավ գիտես... Նա պատասխանեց. «Իհարկե, դու լիովին գլուխ կհանես, եթե ցանկանաս մեկնել»: Ես շատ էի ուզում մեկնել, բայց վախենում էի՝ կարդարացնե՞մ Շահումյանի սպասելիքները: Շահվերդովն ինձ հանգստացրեց, ասելով, թե ինքը շատ լավ գիտե և՛ Բաքվի պայմանները, և՛ իրեն՝ Շահումյանին, որն իր հին ընկերն է, և ինքը կգրի նրան իմ մասին: Իր այցետոմսի վրա նա անմիջապես մի քանի տող գրեց, տոմսը դրեց ծրարի մեջ, փակեց և տվեց ինձ, որպեսզի այն հանձնեմ Շահումյանին»:*

*Ահա Շահվերդյանի այցետոմսը.*

# ՀԿԿ ԱՇԽԱՐՀԱԶՈՐԻ ԿԱԶՄԱԿԵՐՊԻՉ

Մարդկությունն իր գոյության ընթացքում շատ պատերազմներ է տեսել, սակայն դրանցից ոչ մեկն այնքան ժողովրդական չի եղել, որքան մեծ հայրենականը։ Սոցիալիստական հայրենիքի ազատության ու անկախության համար մղվող պայքարում զենք վերցրին Սովետական Միության բոլոր ժողովուրդները։ Ռազմաճակատի ու թիկունքի անխախտ միասնությունն արտահայտվեց բազում փորձություններում։ Հայրենիքը վտանգի մեջ է— կոմունիստական կուսակցության կոչին արձագանքեցին սովետական հասարակության համակ զանգվածները։ Պատերազմի օրերին կուսակցությունը, նրա տեղական կազմակերպությունները քաղաքական-կազմակերպական վիթխարի աշխատանք ծավալեցին և բոլոր միջոցները մոբիլիզացրին՝ Հոկտեմբերյան հեղափոխության նվաճումները պաշտպանելու համար։

1941 թվականի հունիսի 22-ին ՀԿ(բ)Կ Կենտկոմի բյուրոյի արտակարգ նիստում ընդունվեցին մի շարք կարևոր և անհետաձգելի որոշումներ, որոնք վերաբերվում էին պատերազմի պայմաններում մարդկային և նյութական ռեզերվների մոբիլիզացման, բնակչության շրջանում քաղաքական-բացատրական աշխատանքի ծավալման և այլ հարցերին։

Նույն օրը հրավիրվեցին նաև կուսակցության քաղաքային և շրջանային կոմիտեների նիստեր, ուր քննարկվեցին պատերազմի հետ կապված հարցեր։ Կուսակցական ակտիվը գործուղվեց տեղական կազմակերպությունները՝ օգնելու մոբիլիզացիայի գործին, ագիտացիոն-բացատրական աշխատանքի կազմակերպմանը։

Այդ օրերին սկիզբ առավ հայրենասիրական մի մեծ շարժում, որը վճռական դեր խաղաց մեր հայրենիքի պաշտպանության գործում։ Մոսկվա քաղաքի Լենինյան շրջանի աշխատավորության նախաձեռնությամբ կազմակերպվեց ժողովրդական աշխարհազորի առաջին գունդը։

1941 թվականի հուլիսի 4-ին պաշտպանության պետական կոմիտեն և ՀամԿ(բ)Կ Կենտկոմը որոշում կայացրին՝ «Մոսկվայի և նրա մարզի աշխատավորներից ժողովրդական աշխարհազորի դիվիզիաների կամավոր մոբիլիզացիայի մասին»։ Չորս օրվա ընթացքում ընդունող հանձնաժողովներին և կուսակցական օրգաններին դիմեցին 168470 հոգի։ Այդպիսով, կազմակերպվեց մայրաքաղաքի 12 աշխարհազորային դիվիզիա, որոնք Մոսկվայի պաշտպանության համար մղած մարտերում հերոսության բազմաթիվ օրինակներ ցույց տվին։

«Յուրաքանչյուր քաղաքում,— այդ օրերին գրում էր «Правда»-ն,— որին սպառնում է թշնամու արշավանքի վտանգը, պետք է ժողովրդական աշխարհազոր կազմակերպենք, պետք է պայքարի հանենք բոլոր աշխատավորներին, մեր կրծքով պաշտպանենք մեր ազատությունը, պատիվը, հայրենիքը» (7 հուլիսի, 1941 թ.)։

Կոմունիստական կուսակցության կոչին ջերմորեն արձագանքեցին մեր լայնածավալ հայրենիքի բոլոր անկյուններում։ Աշխարհազորային ստորաբաժանումներ ստեղծվեցին Լենինգրադում, Կիևում, Օդեսայում և մյուս այն



քաղաքներում, ուր կարող էր ոտք դնել թշնամին։ Այդ շարժումը լայն տարածում գտավ նաև մեր հայրենիքի արևելյան մասերում՝ Ուրալում, Սիբիրում, Միջինասիական հանրապետություններում, ինչպես նաև Վրաստանում, Ադրբեջանում և Հայաստանում։ Չնայած վերջիններս հեռու էին ռազմի դաշտից, սակայն ստեղծված վտանգավոր իրավիճակը հրամայաբար պահանջում էր ուժեղացնել հարավային սահմանը։

Հայաստանում կուսակցության կոմիտեները կազմակերպական-բացատրական լայն աշխատանք ծավալեցին ժողովրդական աշխարհազորի ստեղծման համար։ Այդ առթիվ բազմամարդ միտինգներ և ժողովներ կայացան գրեթե բոլոր արտադրական ձեռնարկություններում, կոլտնտեսություններում ու սովխոզներում։

Կիրովի անվան սինթետիկ կաուչուկի կոմբինատի աշխատավորները 1941 թվականի հուլիսի 7-ին միաձայն ընդունած բանաձևում նշեցին. «Մենք բոլորս մեկ մարդու նման մտնում ենք աշխարհազորի շարքերը, հերոսական Կարմիր բանակին աջակցություն ցույց տալու և թշնամուն մինչև վերջ ջախջախելու համար» («Սովետական Հայաստան», 8-ը հուլիսի, 1941 թ.)։

Հուլիսի 7-ին Հայֆիլհարմոնիայի ամառային դահլիճում տեղի ունեցավ Երևանի ինտելիգենցիայի միտինգը՝ նվիրված աշխարհազորին։ Հայրենասիրական ջերմ ելույթներ ունեցան՝ ՍՍՀՄ ժողովրդական դերասանուհի Հայկանուշ Դանիելյանը, պրոֆեսորներ՝ Վահան Արծրունին, Մելիք-Ադամյանը, բանաստեղծ Նաիրի Զարյանը, ժողովրդական ուսուցիչ Սիմակը և ուրիշներ։ Նրանք միահամուռ կոչ էին անում պայքարի ելնել համաշխարհային քաղաքակրթության թշնամիների՝ գերմանական ֆաշիստների դեմ։ Ժողովրդական դերասան Վաղարշ Վաղարշյանը իր ելույթն ավարտեց հետևյալ խոսքերով. «Ես 25 տարի է, ինչ ծառայում եմ ժողովրդին, իսկ այսօր, երբ մեր հայրենիքին վտանգ է սպառնում, կվերցնեմ զենքը և կկռվեմ նենգ թշնամու դեմ՝ հանուն իմ ժողովրդի երջանկության»։

Աշխարհազորի ջոկատներում ցուցակագրվեցին քաղաքի և գյուղի տասնյակ հազարավոր մարդիկ։ Երևանում աշխարհազորայինների թիվն անցնում էր 10000-ից, Լենինականում՝ 5000 էր, Կիրովականում (գյուղերի հետ միասին) 6475, Ղափանում՝ 4257 և այլն։ Իսկ ողջ Հայաստանում աշխարհազորայինները հարյուր հազարից ավելի էին[1]։

1941 թվականի հուլիսի 12-ին ՀԿ(բ)Կ Կենտկոմի բյուրոն որոշում ընդունեց՝ «Ժողովրդական աշխարհազորի կազմակերպական հարցերի վերաբերյալ»։ Այդ որոշմամբ ստեղծվեց ժողովրդական աշխարհազորի հանրապետական շտաբ, որտեղ ընդգրկվեցին ռազմական գործի մասնագետներ, կուսակցական և սովետական ղեկավար աշխատողներ։ Հանրապետության տերիտորիան բաժանվեց 10 տեղամասի, որտեղ ստեղծվեցին աշխարհազորային տեղամասային շտաբներ։ Դրանք գտնվում էին Երևանում, Էջմիածնում, Աշտարակում, Լենինականում, Կիրովականում, Դիլիջանում, Սևանում, Արտաշատում, Եղեգնաձորում և Գորիսում։ Ամեն մի տեղամաս իր մեջ ընդգրկում էր ավելի քան 3—4 շրջան։

Կուսակցության քաղաքային և շրջանային կոմիտեների անմիջական օգնությամբ, կարճ ժամանակամիջոցում կոմպլեկտավորվեց տեղամասային շտաբների, աշխարհազորային ստորաբաժանումների հրամանատարական և քաղաքական կազմը, որոնց հաստատում էին ՀԿ(բ)Կ Կենտկոմը և քաղաքային ու շրջանային կոմիտեները։ Տեղամասային շտաբները ձեռնամուխ եղան աշխարհազորային ստորաբաժանումների ձևավորմանը։ Այն կազմվեց տերիտորիալ-արտադրական սկզբունքով։ Հիմնարկ-ձեռնարկություններում ստեղծվեցին դրուժինաներ և ջոկատներ, որոնք իրենց հերթին միավորվելով կազմում էին գունդ կամ բրիգադա։ Ամեն մի տեղամասային շտաբի մեջ ընդգրկված էին 1—2 բրիգադա կամ գունդ։

Դրուժինայի հրամանատարի քաղաքական գծով տեղակալը նշանակվում էր շրջկոմի ղեկավար աշխատողներից։ Աշխարհազորային ջոկատները կոմպլեկտավորելիս, մարտիկներին ներկայացվում էին բարձր պահանջներ։ Նրանք

[1] ՍՄԿԿ ԿԿ-ին առընթեր ՄԼԻ հայկ. մասնաճյուղի արխիվ, ֆ. 1, ց. 31, գ. 302, էջ 107։

տվությունը, որով և հիմնականում գնահատվում է նրա աշխատանքը, այնուհետև նա իր ուշադրությունը կենտրոնացնում է հենց դրա վրա: Պլանները կատարելու համար վարորդները, ուրիշներին զրկելու գնով, ձգտում են աշխատել առավել շահավետ երթուղիներում, դիմում զանազան միջոցների՝ երթուղիներում առջևից ընթացող տրանսպորտից առաջ անցնում, խախտում գրաֆիկները, յուրաքանչյուր երթուղու համար սահմանված նորմաները և այլն: Այդ ամենը որոշակիորեն խաթարում է քաղաքային տրանսպորտի նորմալ աշխատանքը, դրա դիսպետչերավորումը, որը, վերջին հաշվով, բացասաբար է անդրադառնում բնակչության կուլտուրական սպասարկման, տրանսպորտի աշխատանքի անվտանգության վրա: Վարձատրման գոյություն ունեցող սիստեմում, պլանից զատ, անշուշտ, կան նաև խրախուսման այլ ձևեր. զգալի տոկոս է կազմում գրաֆիկների պահպանումը, բայց գործնականում դրանք բոլորը վարորդի համար լրացուցիչ են և ոչ գլխավոր:

Երբ վարորդի աշխատանքը պայմանավորված է միայն երթևեկության սահմանված գրաֆիկների խստիվ պահպանմամբ, ապա այն գնահատվում է միայն տվյալ միակ ցուցանիշով. այդ տրանսպորտի վարման մյուս բոլոր պարագաները մեխանիկորեն ինքնին վերանում են հօգուտ քաղաքային տրանսպորտի կարգապահության ամրապնդման, ուղևորների շահերի: Բնական է, գրաֆիկների խստիվ պահպանման համար անհրաժեշտ է, որ երթևեկող կազմը լինի հարկ եղածին չափ տեխնիկապես կանոնավոր վիճակում: Այդ հանգամանքն, իր հերթին, վերանորոգող-տեխնիկական անձնակազմի մեջ պատասխանատվության խիստ զգացում է արթնացնում՝ շահագործման ծառայության, առանձնապես վարորդների հանդեպ: Որպեսզի վերջիններս կատարեն իրենց առաջին պատգամը՝ պահպանեն երթևեկության գրաֆիկը, պետք է պահանջեն, որ իրենց տրամադրվեն միայն տեխնիկապես սարքին ավտոբուսներ:

Վարորդների աշխատանքի կազմակերպման տվյալ սկզբունքի մասին, իհարկե, խոսվեց ընդհանուր գծերով: Ըստ երևույթին, այդ սկզբունքը միմյանց հետ փոխկապակցված բոլոր խնդիրների, հատկապես եկամուտների պլանների կատարման, վարորդների անձնակազմի նյութական շահագրգռվածության, նրանց աշխատավարձի սիստեմի, լուծում է պահանջում:

Ինչ վերաբերում է քաղաքային տրանսպորտի եկամուտների պլաններին, ապա ԳԴՀ-ում դրանք ամենուրեք կատարվում են: Իսկն ասած, այդ գործում առանձին հարցեր չեն ծագում: Այստեղ, ամենից առաջ, արժանին պետք է հատուցել ուղևորների ինքնակարգապահությանը, որոնց ճնշող մեծամասնությունը ճշգրիտ կատարում է քաղաքային տրանսպորտից օգտվելու, մասնավորապես ինքնատոմսավորման, կանոնները: Այդ գործում մեծ նշանակություն ունի լավ կազմակերպված մշտական տոմսերի նախնական վաճառքի սիստեմը, որի տեսակարար կշիռն ընդհանուր եկամտի մեջ, օրինակ, Լայպցիգում 35—40 տոկոսի է հասնում: Համեմատության համար ասենք, որ դրա բաժինը Երևանում մի քանի անգամ պակաս է:

Ի տարբերություն մեզ մոտ կիրառվող մշտական տոմսերի վաճառքի պրակտիկայի, ԳԴՀ-ում կան մշտական տոմսերի շատ տեսակներ: Դա հնարավորություն է ընձեռում ուղևորին ձեռք բերելու այնպիսի մշտական տոմս, որն իրեն առավել ձեռնտու է: Լայպցիգում մշտական տոմսեր կան միայն մի երթուղու համար՝ 8 մարկ արժողությամբ, երկու երթուղու՝ 11 մարկ, երեք երթուղու՝ 13 մարկ և այլն: Կան նաև մի շաբաթից մինչև չորս շաբաթվա մշտական տոմսեր: Բոլոր երթուղիների մշտական տոմսերն արժեն 20 մարկ: Բնակչության մշտական տոմսերի իրացման նման համարավետ սիստեմը նպաստում է դրանց լայն տարածմանը:

Քաղաքային ավտոտրանսպորտի կազմակերպման գործում հույժ կարևոր է դիսպետչերական ծառայությունը: Այն կազմակերպված է կենտրոնացման եղանակով, ըստ յուրաքանչյուր քաղաքում սպասարկող երթուղիների որոշակի խմբերի բաժանված բրիգադաների: Այդ ծառայության հիմնական նպատակը քաղաքային տրանսպորտի ուղերթի կարգավորումն է՝ գերատեսչական ենթակայությունից անկախ: Այդ գործը ռադիոֆիկացված ու հեռախոսավորված է, որը հնարավորություն է ընձեռում հիշյալ ֆունկցիան պատշաճ ձևով կատարելու: Ի դեպ, դիսպետչերական ծառայության աշխատանքի այդ ոլորտը մեզ մոտ իր բարձրության վրա չի դրված: Այն հիմնականում գրանցվում է ավտոբուսների ժամանման ու մեկնման վերջին կանգառում՝ հաստատված գրաֆիկի համեմատ:

Ինչպես հայտնի է, մարդատար տրանսպորտի համար վարորդների պատրաստման խնդիրը կարևորագույն, վճռական պրոբլեմ է: Բանն այն է, որ մարդատար երթուղում աշխատող վարորդին պետք է հատկապես պատրաստել, քանի որ վարորդական որակավորումից բացի, անհրաժեշտ է, որ նա ունենա բարոյա-կուլտուրական պատշաճ մակարդակ: Այդ գործի դրվածքը ԳԴՀ-ում, մեր կարծիքով, արժանի է ուսումնասիրման ու ընդօրինակման: Լայպցիգի քաղաքային տրանսպորտի վարչությունը քաղաքային տրանսպորտի բոլոր ձևերի վարորդներ պատրաստող հատուկ դպրոց ունի: Այն տարեկան պատրաստում է 200 վարորդ: Ավարտելով դպրոցը, յուրաքանչյուր վարորդ-շրջանավարտ մեկամսյա պրակտիկա է անցկացնում երթուղագծում: Ուսման ընթացքում սովորողներն



ստանում են վարորդի համար սահմանված մեկ ամսվա աշխատավարձ: Դպրոցն ավարտելուց հետո միլիցիայի օրգանները նրան հատուկ վկայական են տալիս՝ քաղաքային տրանսպորտի համապատասխան ձևը (ավտոբուս, տրամվայ, տրոլեյբուս) վարելու: Այդ վկայականն անվավեր է տրանսպորտի մյուս ձևերում աշխատելու համար: Մի բնորոշ առանձնահատկություն ևս— ավտոբուսի վարորդներ կարող են լինել 23-ը, իսկ տրամվայի՝ 18-ը լրացրած անձիք:

Միջքաղաքային և մերձքաղաքային երթուղիների ուղևորների սպասարկման ողջ ֆունկցիան, ինչպես և տոմսերի վաճառքը, վարորդների պարտականությունների մեջ են մտնում: Դրանով հսկայական միջոցներ են տնտեսվում, քանի որ այդ ուղեգծերում հսկիչների և սպասարկող այլ անձնակազմի կարիք չի զգացվում:

Մարզերում ու շրջաններում ուղևորների և բեռների տեղափոխման գործը ԳԴՀ-ում հետևյալ կերպ է կազմակերպված. յուրաքանչյուր մարզում կա մարզային ավտոտրանսպորտի վարչություն, որն զբաղվում է երեք տիպի փոխադրումներով՝ ավտոբուսների, մարդատար տաքսիների, բեռնատարների: Մարդատար ու բեռնատար բոլոր ավտոմեքենաները կենտրոնացված են մարզային այդ վարչության տրամադրության տակ: Դրանով է մեծ չափով պայմանավորված ժողովրդական տնտեսության նպատակների համար ավտոտրանսպորտի արդյունավետ օգտագործման կազմակերպումը:

Մարզային վարչությունների բեռնատար ավտոտրանսպորտը մասնագիտացված է ըստ կլիենտուրային սպասարկման ճյուղերի— շինարարության, գյուղատնտեսության, արդյունաբերության, առևտրի և այլն: Մարզային ավտոտրանսպորտի վարչություններն ունեն ավտոտրանսպորտային տնտեսություններ, որոնցից յուրաքանչյուրն սպասարկում է որոշակի թվով շրջանների, ինչպես նաև մարզային կենտրոնին: Օրինակ, Լայպցիգի մարզային վարչությունն իր տրամադրության տակ ունի վեց խոշոր ավտոտնտեսություն, իսկ նրանցից յուրաքանչյուրը, միջին հաշվով, սպասարկում է չորս շրջան:

Մարզային ավտոտրանսպորտի վարչության անմիջական ենթակայության տակ են գտնվում նաև ավտովերանորոգման ձեռնարկությունները, որոնց շնորհիվ նրանք հնարավորություն են ունենում կազմակերպելու շարժակազմի հիմնական և ընթացիկ պլանային վերանորոգման գործը: Ուշագրավ է, որ ԳԴՀ-ում ձգտում են անհրաժեշտ արտադրատեսակներով հագեցած բազմաճյուղ տրանսպորտային խոշոր ձեռնարկությունների ավարտուն սիստեմներ ստեղծել: Օրինակ, Բեռլինի բեռնատար փոխադրամիջոցների բոլոր կարիքները բավարարում է Ավտոտրանս-Բեռլին կոմբինատը: Այն իր տրամադրության տակ ունի 3000 ավտոմոբիլ, 6.5 հազար աշխատող, այդ թվում՝ 3000 վարորդ: Դրանք բաշխված են երեք ավտոբազաների, որոնցից յուրաքանչյուրում կա 1000 ավտոմոբիլ: Առանձնակի ուշադրություն է նվիրվում կցանքների և կիսակցանքների օգտագործմանը, ավտոգնացքներով բեռների տեղափոխմանը: Շարժակազմի 90 տոկոսն աշխատում է կցանքով: Կոմբինատն ունի նաև ավտովերանորոգման ձեռնարկություն: Բեռլինի տրանսպորտի ձեռնարկության կոմբինատում են կենտրոնացած քաղաքային ուղևորների փոխադրմամբ զբաղվող բոլոր ձեռնարկությունները: Ավտոտնտեսություններում այնպիսի կարգ է սահմանված, որ համաձայն վարորդներն իրենք ամեն օր իրենց վարած ավտոմոբիլները վավերագրական-տեխնիկական ստուգման են ենթարկում: Ավտոտնտեսության տեխնիկական ծառայությունն ամիսը երկու անգամ յուրաքանչյուր ավտոմեքենայի տեխնիկական ստուգում է անցկացնում: Բացի այդ, տարին մեկ անգամ էլ հիմնական տեխնիկական ստուգում է կատարվում, որն իրականացվում է ո՛չ թե ավտոտնտեսություններում, այլ կենտրոնացված ձևով:

Տեխնիկական սպասարկմանը լուրջ ուշադրություն նվիրելու արդյունք է նաև այն փաստը, որ ավտոտնտեսություններում հարաբերակցությունը վերանորոգման անձնակազմի և վարորդների ու շարժակազմի քանակի միջև խիստ բարձր է: Իսկ այդ կատեգորիաների բանվորների աշխատավարձը մոտավորապես նույնն է: Վերանորոգողների միջին աշխատավարձը գրեթե այնքան է, որքան վարորդներինը: Բեռլինի տրանսպորտի ձեռնարկությունների կոմբինատի ավտոբուսի բաժանմունքում 600 վարորդին ընկնում է 200 վերանորոգող բանվոր, իսկ Լայպցիգի քաղաքային տրանսպորտի վարչությունում այդ հարաբերակցությունն առավել բարձր է: Վերանորոգող բանվորների այդպիսի խիստ հագեցվածությունը հնարավորություն է ընձեռում առավել նպատակահարմար կազմակերպելու տեխնիկական սպասարկման ու շարժակազմի ընթացիկ վերանորոգման գործը: Ավտոտնտեսություններում ստեղծված են վերանորոգման բրիգադաներ, որոնց կցված են որոշակի թվով ավտոմոբիլներ: Յուրաքանչյուր բրիգադա պարտավոր է իրեն հանձնարարված մեքենաները երթուղագիծ ճանապարհել: Խոշոր ավտոձեռնարկություններում, ուր շարժակազմը բավական տարատեսակ է, կազմակերպված են մասնագիտացված վերանորոգող բրիգադաներ: Ավտոձեռնարկություններում տեխնիկական սպասարկման գործը իր բարձրության վրա է դրված, որն ամեն օր մեծ թվով ավտոմոբիլներ երթուղագծեր ճանապարհելու կարևոր պայմաններից մեկն է:

## ԱԶԳԵՐԻ ԼԻՆԵԼՈՒԹՅԱՆ ՍՈՑԻՈԼՈԳԻԱՆ




Գրքեր կան, որոնք լույս տեսնելուց հետո ապրում են կարճատև և շուտով հանգչում դարակների վրա: Բայց կան գրքեր, որոնք ապրում են մարդկանց սերունդների հետ, մշտապես օգնելով նրանց՝ ճիշտ ընկալելու և իմաստավորելու հարափոփոխ առօրյան, գոհացուցիչ պատասխաններ գտնելու հուզող հարցերին: Նման գրքերից է վերջերս լույս տեսած փիլիսոփայական գիտությունների դոկտոր Մեհենդակ Մելիքյանի **Սոցիալիզմը և ազգերը**[1] ստվարածավալ հետազոտությունը:

Սա այն գիրքն է, որի մասին խղճի մտոք կարելի է ասել. հեղինակն իր **ծանրակշիռ և արժեքավոր լուման է մուծել մարքսիստական սոցիոլոգիայի գանձարանը:**

Գրքի ստեղծագործական հենքը և ներդաշնակ մտահղացումն ինքնին հույժ արժեքավոր են: Հեղինակը նպատակ է ունեցել մեր օրերի առումով լուծելու հանգուցային երկու խնդիր. նախ՝ լուսաբանել **ազգային հանրության գոյավորման** մարքս-լենինյան ուսմունքը և ապա՝ բացահայտել ու համակարգել **ազգերի զարգացման բարդ օրինաչափությունները սոցիալիզմի օրոք:** Պրոբլեմի տեսական մասի շարադրանքը պարփակված է գրքի առաջին մասում, իսկ մնացած 300-ից ավելի էջերում հիմնավորապես վերլուծված է սովետական ազգերի ավելի քան կեսդարյա լինելության ընթացքը:

Նախաբանում հեղինակն իրավացիորեն ասում է, որ ազգային հարցի լուծման սովետական պրակտիկան, աշխարհում կատարվող սոցիալ-քաղաքական, ինչպես և ազգային-ազատագրական բախումները հրամայական են դարձրել այդ հարցի նորագույն էտապի համապարփակ և գիտական հետազոտությունը, այդ մարզում կուտակված հարուստ փորձի մարքս-լենինյան ընդհանրացումը:

Գրախոսվող աշխատության առաջին մասում, պրոբլեմի դրական շարադրանքին զուգընթաց, մի կողմից հիմնովին քննադատվում են ազգային հարցի բուրժուական տեսաբանների ռեակցիոն հայացքները (ներառյալ և դաշնակցության մամուլի հոդվածները), մյուս կողմից՝ աշխույժ բանավեճ է մղվում սովետական այն գիտնականների հետ, ովքեր, հեղինակի տեսակետով, միակողմանի և դոգմատիկաբար են մեկնաբանում ազգային հարցի լենինյան ուսմունքը, խեղաթյուրում դրա ոգին:

Համառոտակի շարադրելով ազգային հանրության մարքս-լենինյան ըմբռնման նշանակությունն ազգերի առաջընթացի համար, նա գրում է. «...մարքսիզմի հիմնադիրներն ընդունել են, որ բուրժուազիայի տիրապետության պայմաններում պրոլետարիատը ոչ միայն ազգային է՝ այս կամ այն ազգին պատկանելու, նրա կազմի մեջ մտնելու իմաստով, այլև ձգտում է տապալել ազգային շահագործող իշխանությունը և ինքը դառնալ ազգի առաջատար ուժը» (էջ 14—15):

Ս. Մելիքյանը հատկապես ընդգծում է պրոլետարիատի պայքարի միջազգային բնույթը և նրա գլխավոր նպատակը՝ ամեն կարգի կեղեքման վերացումը: Նա չի մոռանում հիշատակել այն կարևոր հանգամանքը, որ երբ լենինյաններն են վարում այդ պայքարը, ապա դա «Եթե ոչ ըստ բովանդակության, ապա ըստ ձևի՝ պրոլետարիատի պայքարն ընդդեմ բուրժուազիայի՝ սկզբից ազգային պայքար է հանդիսանում: Յուրաքանչյուր երկրի պրոլետարիատ պետք է, իհարկե, նախ և առաջ իր սեփական բուրժուազիայի հետ հաշիվ մաքրի» (էջ 15):

Մարքսիզմի կլասիկների այս թեզն, անշուշտ, ուղղված է այն «ձախերի» դեմ, ովքեր աղավաղելով հարցի լենինյան ըմբռնումը, փաստորեն ձայնակցում են բուրժուական տեսաբաններին: Ամբողջ գիրքը տոգորված է մարքսիստական այն ծրագրային գաղափարով, որ **ազգային հարցի լուծումը հնարավոր է լոկ պրոլետարիատի դասակարգային կռվի հաղթությամբ և մարդու շահագործման վերացմամբ:** Ուստի, համոզիչ է հեղինակի այն հետևությունը, որ պրոլետարիատի գերիշխանության հաստատմամբ վերանում են **ո՛չ թե ազգերը** (ինչպես կարծում են «ձախերը»), այլ նրանց **թշնամանքն ու շահագործումը** (տե՛ս էջ 16—17):

Հայտնի է, որ սոցիալիստական հեղափոխությամբ է սկսվում իրական դեմոկրատական, ինչպես և ազգային հարաբերությունների վերափոխումների դարաշրջանը, որի կենսագործման պլանը ժամանակին մշակվել է Լենինի կողմից, որպես «...հասարակության կոմունիստական վերափոխման ծրագրի բաղկացուցիչ մաս» (նույն տեղը): Մեկնելով ՍՄԿԿ ծրագրից, հեղինակը հերքում է ազգերի բռնի ձուլման բուրժուական հերյուրանքները, շեշտելով, թե այդ «...ծրագիրն ազգային տարբերությունների» անհետացումը սեպում է «...հեռավոր ապագայի երևույթ, բայց **ո՛չ որպես այսօրվա խնդիր, ո՛չ որպես քաղաքականություն**» (նույն տեղը): ՍՍՀՄ արդի ժամանակահատվածը գրքում իրավամբ բնորոշվում է «... սովետական բոլոր ազգերի ու ազգությունների, տնտեսության ու մշակույթի, նրանց լեզուների հետագա զարգացմամբ, ազգային պետականության ձևերի կատարելագործմամբ» (էջ 20):

Համակողմանի բացահայտելով ազգային հանրության պրոբլեմի էությունը, հեղինակը սահմանազատում է դասակարգային հանրության գաղափարը ազգայինից, եզրակացնելով. «Դասակարգային ընդհանրությունը, մի կողմից, ավելի լայն է, քան ազգայինը, որովհետև մարդիկ այս կամ այն դասակարգին են պատկանում, անկախ նրանց էթնիկական ու ազգային պատկանելությունից, այսինքն՝ դասակարգերը համամարդկային երևույթ են, սակայն, մյուս կողմից՝ ավելի նեղ է, քան ազգայինը, որքանով որ ամեն մի ազգային ընդհանրություն ներքուստ բաժանվում է դասակարգերի» (էջ 21—22):

Հիմնականում համամիտ լինելով այս դրույթին, նշենք, որ դասակարգերի **«համամարդկայնությունը» համոզիչ չէ:** Թերևս դա ասված է այն իմաստով, որ այն հատուկ է բոլոր ազգերին: Դա արդեն այլ բան է: Ազգը, նմանապես և դասակարգը, **պատմական են և ոչ համամարդկային:** Հնադարյան հասարակությունը ո՛չ ազգ և ո՛չ դասակարգ է ունեցել: Դասակարգեր չեն լինի նաև կոմունիզմի ժամանակ, երբ ամենից շատ կլինեն համամարդկային երևույթները:

Այս առումով նշենք, որ խոսելով ազգի մասին՝ որպես բնապատմական իրողության, հեղինակը վկայակոչում է Ս. Շահումյանի այն հայացքը, թե ազգությունը և ազգը միայն կապիտալիստական ֆորմացիայում չեն կազմավորվում, այլև տոհմատիրության քայքայման շրջանում, երբ առաջանում են ցեղային միությունները, որոնցից «հետզհետե առաջացան ժամանակակից ազգերը»: Սա կատարվել է «վերջին հազարամյակի ընթացքում», ըստ Շահումյանի (էջ 30): Բայց որքան կարևոր, նույնքան և հետազոտման կարոտ է այս հարցը: Արդյոք «նախնադարյան համայնական հարաբերությունների դասակարգային հասարակության անցնելու շրջանո՞ւմ» է գոյավորվում ազգային հանրությունը, ինչպես կարծում է հեղինակը (էջ 39): Դա ազգայի՞ն, թե՞ ժողովրդային հանրություն է:

Այս կարևոր հարցի վերաբերյալ արդի գրական աղբյուրներում դեռևս չկա պատշաճ հստակություն: Մեզ թվում է տոհմի, ֆրատրիայի ու ցեղի հազարամյա էվոլյուցիան

---

[1] *Մ. Ա. Մելիքյան, Սոցիալիզմը և ազգերը, Երևան, 1969 թ., 492 էջ:*

նախ և առաջ հարուցել է **ժողովրդի և ոչ թե ազգի գոյավորում**: Էնգելսը քանիցս շեշտել է, որ Հոմերոսի օրոք «հունական ցեղերին գտնում ենք մեծ մասամբ միացած և մանր **ժողովուրդներ կազմած**, որոնց մեջ տոհմերը, ֆրատրիաներն ու ցեղերը այնուամենայնիվ դեռ լիովին պահպանում են իրենց **ինքնուրույնությունը...** Առանձին փոքրիկ **ժողովուրդները** անընդհատ պատերազմում էին միմյանց դեմ լավագույն հողերի գրավման, ինչպես նաև, իհարկե, ռազմական ավարի համար. ռազմագերիների ստրկացումը արդեն ճանաչված ինստիտուտ էր» (Ֆ. Էնգելս. Ընտանիքի, մասնավոր սեփականության և պետության ծագումը, Երևան, 1965 թ., էջ 141): Մի այլ տեղում նա վերստին հիշատակում է, թե **«ցեղերի միությանը փոխարինեց միաձույլ ժողովուրդը»**, որն Էնգելսը համարում է Աթենքի առավելությունն Ամերիկյան ցեղերի նկատմամբ:

Ճիշտ է, որ տոհմատիրության անկումից հետո առաջ են գալիս մանր հողատերեր և ապրանքափոխանակություն, որը ծավալվում է տարբեր տերիտորիաների վրա: Պարզ է նաև, որ ժողովուրդները գոյավորվել են արենակցական կապերի վրա հիմնված ցեղախմբերի դաշնադրությունից ու համաձուլումից: Սակայն պարզ չէ և մինչև օրս հիմնովին չի ուսումնասիրված **ժողովրդի՝ ազգի ներաճման** հույժ տևական ընթացքը: Անկասկած, ժողովրդի ու ազգի գոյավորման ոլորտներում վճռական դեր են խաղացել ներքին (փոխանակություն) և արտաքին (ռազմագերիներ) գործոնները, որոնք հարուցել են և ցեղախմբերի համաձուլման թթխմորը:

Ճիշտ է նկատում հեղինակը, որ ավատատիրական կարգերի զարգացման որոշ աստիճանում է միայն գլուխ գալիս ազգային ֆերմենտների դարավոր համաձուլումը, որի դանդաղությունն ու արագությունը հետեվանք են ո՛չ միայն ապրանքա-դրամային հարաբերությունների արմատավորման, այլև ուրիշ ժողովուրդների հետ ունեցած **այլազան կապերի** ու առնչությունների: Ինչ խոսք, իրավացի է նա, երբ ազգերի դարավոր ողբերգությունը համարում է շահագործողական հարաբերությունների արգասիք:

Ազգերը սեպելով հասարակական զարգացման բուրժուական դարաշրջանի անխուսափելի հետևանք, Լենինը, ինչպես ճիշտ հիշատակում է Մ. Մելիքյանը, խոսել է նաև «ճնշված ու կապիտալիստորեն չզարգացած ազգերի» մասին: Ուստի, ճիշտ է նա, ընդգծելով, որ **նոր, կապիտալիստական ազգերի** կազմավորումն Ասիայում ու Եվրոպայում սկսվում է ֆեոդալիզմի ծաղկման դարաշրջանում: Պրոբլեմի այս կարևոր կողմի հիմնավոր արծարծմամբ և փաստալի մշակմամբ մեծապես շահել է աշխատությունը: Այն կարևորոտ ակնարկը, որ վերաբերում է ժողովուրդների **ազգավորման** հիմնական փուլերին (էջ 38—87), հարցադրումների նորությամբ ու համոզչականությամբ հետազոտության շեշտված ինքնուրույն և արժեքավոր մասն է:

Քննադատելով այն տեսաբաններին, ովքեր տարբեր առումներով նեղացնում են ժողովուրդների ազգավորման դարավոր ընթացքը ու խեղաթյուրում Լենինի հայացքները, հեղինակն իրավամբ եզրակացնում է. «...մարքսիզմ-լենինիզմն ազգային ընդհանրությանը մոտենում է որպես պատմական երևույթի ոչ թե այն առումով, որ նա կազմավորվել է «բարձրացող կապիտալիզմի հաղթական երթի ժամանակ» և ոչ էլ այն առումով, որ կապիտալիզմից առաջ սոսկ նրա «տարրերն» են կազմավորվել, այլ այն առումով, որ ազգային ընդհանրությունը, պատմականորեն ծագելով տոհմացեղային կարգերի քայքայման և դասակարգային հասարակության կազմավորման պրոցեսում, ամեն մի հաջորդ հասարակարգում նոր աստիճանի է հասել՝ և՛ իր սոցիալ-տնտեսական, հասարակական բնույթը փոխելով, և՛ իր բնապատմական ընդհանրությունների զարգացման մի նոր աստիճանի հասնելով: Այս իսկ իմաստով կարելի է խոսել տարբեր հասարակարգերում ազգային ընդհանրության տարբեր աստիճանների մասին» (էջ 50):

Ուշագրավ են Մ. Մելիքյանի պրպտումները «նարոդնոստ» տերմինի էության շուրջ, որից նա եզրակացնում է, թե այդ «նարոդնոստ» ասածը մեր ազգությունն է: Վերջինս համարելով ազգի **նախորդ աստիճանը**, հեղինակն ասում է, սխալ է ազգային ընդհանրությունը **միայն** կապիտալիզմի արգասիք համարել: Սրանից հետո եզրակացնում. «Անհրաժեշտ է... ավելի արմատական դնել հարցը, տոհմից ու ցեղից հետո գոյություն ունեցող մարդկանց սոցիալ-էթնիկական բոլոր ընդհանրությունները անվանել ազգ տերմինով...» (էջ 72):

Իսկ արդյոք ավելի ճիշտ չի՞ լինի այդ բնույթի հանրությունները կոչել ժողովուրդ տերմինով: Այստեղ ավելորդ չենք համարում նշել, որ **ցեղերի ներաճումը ժողովրդի համեմատաբար տևական և շատ դանդաղ պրոցես է, քան ժողովրդի ներաճումն՝ ազգի:**

Ճիշտ է վարվել հեղինակը, երբ հատուկ ենթագլխում պատմական ծանրակշիռ փաստարկներով շոշափել է ազգերի ասիմիլյացիայի հարցը, գրելով. «Վ. Ի. Լենինը, ազգերի ասիմիլյացիայի, ձուլման մասին գրելիս միշտ նկատի է ունեցել ոչ թե նրանց համաձուլումը, նրանց ասիմիլյացիան **մեկ ազգի մեջ**, այլ նրանց միավորումը, սերտ համախմբումը, մերձեցումը կյանքի բոլոր բնագավառներում, նրանց առանձնացվածության, մեկուսացման ու հակադրման վերացումը, եղբայրական միասնությունը և այլն» (էջ 87): Հետևաբար, կոմունիստական հանրակարգից առաջ բոլոր ազգերին ձուլող «ձախլիկ» տեսաբանները հարցի ճիշտ ըմբռնումից շատ են հեռու:

Գրախոսվող աշխատության առաջին մասի Բ գլուխը նվիրված է սոցիալիզմի դարաշրջանի ազգերի զարգացման պրոբլեմին: Ընդգծելով ազգերի միանգամայն տարբեր գոյավիճակները մեր և կապիտալիստական կարգերում, ինչպես և սոցիալիզմի ընձեռած առավելությունները ազգերի ռեալ հավասարության համար, Մ. Մելիքյանը պնդում է, թե սոցիալիզմի պայմաններում ազգային հանրությունները պետք է կոչել ազգեր և ոչ «նարոդնոստներ»:

Կանգնած լինելով այն ճիշտ տեսակետին, որ սոցիալիզմի օրոք նոր ազգեր չեն գոյանում, հեղինակը քննադատում է այն գիտնականներին, ովքեր պնդում են, թե «ուզբեկները, տաջիկները, թուրքմենները, կիրգիզները, բաշկիրները, մորդվաները, ղազախները, օսերը դարձել են ազգ միայն սոցիալիզմի օրոք» (էջ 93): Սա, անշուշտ, պատմական իրականության անգիտություն է: Հեղինակը տեղին է հիշատակում, որ Լենինը սովետական բոլոր ժողովուրդներին ազգ է կոչել, շեշտելով, թե բոլոր ազգերն էլ ամեն ինչում հավասար են:

**Ազգերի սոցիալիստական վերափոխում**, ահա թե որն է նոր, սովետական կարգերում ազգերի զարգացման բնորոշ կողմը, էությունը: Սակայն այդ վերափոխման բարդ պրոցեսը պահանջում էր ՍՍՀՄ ազգերի ավելի քան կեսդարյա զարգացման համակողմանի հետազոտություն, կուտակված հարուստ փորձի վերլուծություն, համակարգում և ընդհանրացում, որն այնպես հաջողությամբ դրսևորվում է գրախոսվող աշխատության մեջ:

Ճշգրտելով սոցիալիստական ազգերի լինելության ընթացքը, հեղինակը գրում է. իրավացի չէր Ստալինն ասելով, թե «կապիտալիզմի լիկվիդացումով կլիկվիդացվեն հին, բուրժուական ազգերը» (էջ 99): Իրականում սոցիալիստական հեղափոխության հաղթանակից հետո նման բան տեղի չի ունենում: «Փաստն այն է,— գրում է Մելիքյանը,— որ սոցիալիստական վերափոխման ընթացքում գոյություն ունեցող ազգերից ոչ մեկը չի լիկվիդացվում, չի անհետանում, ավելին, նրանք մնում ու պահպանվում են որպես ռուս, ուկրաինացի, թաթար, վրացի, հայ և այլ ազգեր: Հետևաբար, այստեղ ավելի տեղին է գործածել «ազգերի սոցիալիստական վերափոխում» արտահայտությունը, որը ճիշտ է բնութագրում իրականում կատարվող պրոցեսը» (էջ 100):

Համոզիչ այս հետևությունից ելնելով, նա չի մոռանում նշել նաև ՍՄԿԿ XIX համագումարում արտահայտված ստալինյան այն դրույթը, թե «Այժմ բուրժուական երկրներում պրոլետարիատն է դառնում ազգի առաջատար ուժը»: Այնուհետև հեղինակն ընդգծում է, որ Լենինը երբեք այն կարծիքին չի եղել, թե ազգը **միայն կապիտալիզմի դարաշրջանի կատեգորիա է** (ինչպես կարծում են ոմանք), որ նա զուտ բուրժուական երևույթ է, որ նա նույնանում է բուրժուական պետության հետ և որ կապիտալիզմի վերացումով անմիջապես վերանում են ազգերը (տե՛ս էջ 108—109):

Աշխատության մատնանշված գլխում հեղինակը համոզիչ փաստարկումներով հերքում է որոշ տեսաբանների նույնանման մեխանիստական հայացքները, շեշտելով, որ սոցիալիզմը նշանավորվում է ազգերի բուռն ծաղկմամբ և նրանց հարաճուն մերձեցմամբ: Իր այս հայացքը հեղինակը հիմնավորում է Լենինի ասույթով, թե համաշխարհային մասշտաբով պրոլետարիատի դիկտատուրայի իրագործումից հետո էլ երկար ժամանակ կըպահպանվեն ազգությունների որոշ հատկանիշներ և որ «...կոմունիստական ու բանվորական շարժման ինտերնացիոնալ տակտիկայի միասնությունը պահանջում է **ոչ թե բազմազանության վերացում, ոչ թե ազգային տարբերությունների ոչնչացում (դա անմիտ ցնորք է ներկա մոմենտի համար)**, այլ կոմունիզմի **հիմնական** սկզբունքների... այնպիսի կիրառում, որը **մասնավորություններում ճիշտ ձևափոխեր** այդ սկզբունքները, դրանք ճիշտ հարմարեցներ, կիրառեր ազգային ու ազգային պետական տարբերությունների նկատմամբ» (էջ 120—121):

Այսպես էր լուծում պրոբլեմն ազգային հարցի մեծագույն տեսաբան Լենինը:

Ընթերցողն աշխատության բազմաթիվ էջերում հանդիպում է այն հստակ համոզմանը, որ **ազգերի ձուլումը սոցիալիզմի զարգացման նկրտումը չէ:** Ահա թե ինչու ամփոփելով իր ասելիքն այդ առթիվ, Մելիքյանը գրում է. «Բանն այն է, որ մեկ երկրում կոմունիզմի հաղթանակի ժամանակ ազգերի համաձուլման հարցադրումը, ինչպիսի վերապահություն էլ որ արվի, նշանակում է այդ երկրում ապրող բոլոր ազգերի ձուլում մեկ, առավել խոշոր ազգի մեջ: Սա ոչ թե բոլոր ազգերի համաձուլում է, այլ ազգերի ասիմիլյացիա, կլանում

մեկ ազգի կողմից: Իսկ այդպիսի հարցադրումն իր բուն իսկ էությամբ խորթ է կոմունիստական **ուսմունքին**, որի հիմնաքարն ազգերի լիակատար հավասարության, նրանց իրավական ու փաստական հավասարության, նրանց բուռն ծաղկման ու անշեղ մերձեցման սկզբունքներն են» (էջ 126):

Գրքում էական տեղ գրավող ազգերի ասիմիլյացիայի պրոբլեմը,— գրում է հեղինակը,— շատերի կողմից սխալ է արծարծվում: «Կոմունիստական գրականության մեջ առաջ քաշվող ազգերի ապագա ձուլման գաղափարն այժմ գոյություն ունեցող ազգերի համար կարող է ընդունելի լինել այնքանով, որքանով նա նկատի ունի **ոչ թե այս կամ այն ազգի պահպանումը**, իսկ մյուսների ձուլումը նրա մեջ, որը կնշանակեր նրանց լիակատար հավասարության և ազատ զարգացման կոմունիստական սկզբունքի կոպիտ խախտում, այլ **բոլոր գոյություն ունեցող ազգերի համաձուլում** մեկ միասնական մարդկության մեջ, որը ոչ մի ազգի առավելություն կամ ավելի երկարատև գոյություն չի նշանակում, այլ նրանց բոլորի ազգային առանձնահատկությունների միաժամանակյա աստիճանական մահացում:

Այնուհետև, աշխարհում կատարվող այժմեական պրոցեսները դեռևս բավարար հիմքեր չեն տալիս նման եզրակացությունների համար» (էջ 127):

Անառարկելի է հեղինակը, ասելով որ **կոմունիզմի կառուցման ժամանակաշրջանում ազգերը չեն համաձուլվում, այլ ծաղկում են ու մերձենում** (էջ 129): Այսպիսով, աշխատության առաջին մասը, որն ըստ էության «զուտ տեսական» պրոբլեմների խոր մշակումն է, որքան այժմեական, նույնքան և գիտական է: Խոստովանենք, որ հեղինակին հաջողվել է գիտությամբ հիմնավորել քաղաքականությունը և քաղաքականության լուսաբանմամբ արմատավորել գիտությունն ընթերցող զանգվածների շրջաններում:

Հետազոտության երկրորդ մասում բազմակողմանի ու կոնկրետ լուսաբանված են ազգերի զարգացման օրինաչափությունները ՍՍՀՄ-ում: Սոցիալ-տնտեսական և կուլտուր-քաղաքական երկու տասնյակից ավելի լուրջ պրոբլեմների հանգամանալի վերլուծմամբ հեղինակը կարողացել է վեր հանել սովետական ազգերի ու ժողովուրդների սոցիալիստական վերափոխման դժվարընթաց ուղին ո՛չ միայն ողջ երկրի, այլ առանձին հանրապետությունների մասշտաբով: Իբրև կանոն, հեղինակը ո՛չ միայն բարեխղճորեն հիշատակում է իր օգտագործած բոլոր աղբյուրները և նույնիսկ հարկ եղած դեպքում՝ տողերը, այլև երբ համաձայն չէ իր գրչակիցների հետ, տեղն ու տեղն առարկում, շտկում կամ լրացնում է նրանց մտքերը:

Բացահայտելով սոցիալիստական ազգերի պետական-քաղաքական վերափոխման հիսնամյա ընթացքի օրինաչափությունները, հեղինակը քանիցս շեշտում է, թե միայն պրոլետարիատի դիկտատուրայի հաստատմամբ է հնարավոր դառնում հետևողականորեն կենսագործել ազգերի ինքնորոշման լենինյան սկզբունքը, **«համատեղ լուծելու** սոցիալական և ազգային-ազատագրության խնդիրները»: Ընդ որում, այս առնչությամբ նա ամենից առաջ վկայակոչում է 1917 թ. նոյեմբերի 17-ին հրապարակված պատմական վավերագիրը՝ «Ռուսաստանի ժողովուրդների իրավունքների դեկլարացիան», որի լույսի տակ և վերլուծում սոցիալիստական ազգերի վիթխարի հասումները:

Բնորոշելով սոցիալիստական ազգերի պետականության զարգացման տարբեր եղանակները (էջ 149—170)՝ հեղինակը հանգամանալի շարադրում է այն ուրույն գծերը, որոնք հատուկ են սոցիալիստական համաշխարհային սիստեմում միավորված ինքնիշխան ազգային պետությունների էվոլյուցիային: Հերքելով բուրժուական տեսաբանների հայացքները սոցիալիստական ազգերի պետականության նկատմամբ, նա, միաժամանակ, լուրջ կռվաններով հիմնավորում է այդ պետականության զարգացման առաջընթացը, որպես ՍՄԿԿ քաղաքականության արգասիք: «Ազգային **պետականության գոյությունն** ու դրա **հետագա զարգացումը**, կարդում ենք գրքում, բոլոր ազգերի աշխատավորների կոմունիստական համախմբման ու մերձեցման կարևորագույն պայմաններից են» (էջ 150): Ելնելով սոցիալիզմի պայմաններում ազգային պետականության անընդհատ կատարելագործման մարքսիստական տեսակետից, հեղինակն այդ պետականության զարգացման էական կողմերից է համարում սովետական ազգերի ինքնիշխան պետությունների իրավասությունների հետագա ընդլայնումը (էջ 151):

Ի դեպ, Մ. Մելիքյանի ուսումնասիրությունը, լինելով գիտահետազոտական, նաև շեշտված բանավիճային է: Նա վիճարկում է այն գիտնականներին, ովքեր միակողմանի, քարացած ու գրքային են մեկնաբանում լենինյան հայացքներն ազգային հարցի վերաբերյալ և հակված են կարծելու, թե մեր երկրում տեղի է ունենում ազգային պետական միավորների **ապազգայնացում**: Հեղինակի այս թեզի իրավացիությունն են հաստատում նրա վկայակոչած երկու աղյուսակները (էջ 168, 170): Ընդսմին աշխատության 174—175 էջերում զետեղված աղյուսակի վերլուծությունից



հեղինակը հանգում է այն եզրակացության, թե ազգերի համաձուլումը սոցիալիզմի օրոք **մասնակի փաստ է, բայց ո՛չ օրինաչափություն**: Լինելով անաչառ, Մ. Մելիքյանը չի զլանում նշել, որ այդ մասնակի համաձուլման պրոցեսը, հիրավի, նկատվել է կալմիկների, կարելների, մորդվաների, յակուտների մոտ, որոնց մի մասը ժամանակավոր հանգամանքների բերումով համաձուլվել է էթնիկապես խոշոր ազգերի մեջ (էջ 176):

Հեղինակը հանգամանալի անդրադարձել է ՍՍՀՄ-ում գոյություն ունեցող **ազգային պետականության զարգացման հակասություններին** և փորձել նշել դրանց լուծման ուղիները: Միաժամանակ նա բացահայտել է այդ զարգացման օրինաչափությունների մի շարք խախտումներ, որոնք կատարվել են Ստալինի անձի պաշտամունքի տարիներին.

Աշխատության Դ գլխում հետազոտված են ՍՍՀՄ տնտեսական հիմունքները և դրա հիման վրա ծավալված սովետական ազգաշինարարությունը: Ազգությունների տնտեսական կյանքի փոփոխությունները, նրանց իրավական հավասարության հաստատման ուղիները, ազգերի եղբայրական համագործակցության եղանակներն ու գործոնները, նրանց տնտեսական մակարդակների համահարթումը և, վերջապես, այդ ամենից բխող սոցիալ-տնտեսական մի շարք լուրջ հարցեր բազմակողմանի լուսաբանվել են գրախոսվող գրքում: Չի կարելի անտեսել հեղինակի համոզիչ առարկությունները նրանց դեմ, ովքեր պետականության առկայությունը համարում են ազգի բնորոշ հատկանիշը:

Բացահայտելով և սահմանելով ՍՍՀՄ ազգերի ու ժողովուրդների սոցիալական էվոլյուցիայի էական փուլերը, վիճակագրական ցայտուն տվյալներով հեղինակը հիմնավորել է սոցիալիստական ազգերի նյութահոգեկան բարգավաճման կեսդարյա նկրտումը, բնորոշել սովետական հանրապետությունների բովանդակալի վերընթացի դիալեկտիկան: Ընդ որում, այս գլխում զետեղված տասը աղյուսակներն իրոք հերքում են բուրժուական թեորետիկների հակագիտական փաստարկումները, որոնք ամեն կերպ պարսավում են ՍՄԿԿ ազգային քաղաքականությունը: Այս խնդրում ևս գրախոսվող գիրքը հարուստ նյութ է տալիս մեր պրոպագանդիստներին ու ժուռնալիստներին:

Աշխատության Ե գլխում արտացոլված են սոցիալիզմի տարիներին կատարված այն վիթխարի փոփոխությունները, որոնք իրենց դրոշմն են դրել սովետական ազգերի զարգացման հոգևոր ու նյութական վիճակի վրա: **Գիտակցության վերափոխումը** ենթագլխում առանձնապես ակնառու են հեղինակի հարցադրումների ինքնատիպությունն ու համարձակությունը, սովետական և բուրժուական ազգերի հոգևոր աշխարհների ներհակությունների և զանազանությունների վերհանումը, նրանց սոցիալ-քաղաքական և ազգային-մտավոր իմպուլսների դրական ու բացասական դրսևորումները կյանքի տարբեր ոլորտներում: Ի միջի այլոց, Մ. Մելիքյանի նպատակը չի եղել հետազոտել հասարակական գիտակցության վերափոխման համապարփակ ընթացքը, այլ գիտականորեն զննել այդ գիտակցության մեկ տարրը՝ **«ազգային հոգեբանությունը»**, բացահայտել վերջինիս էական փոփոխությունները սոցիալիստական հասարակարգում:

Հիրավի, չարաչար սխալվում են բուրժուական կարգերի ջատագովները, անդուլ փորձելով կոմունիզմը ներկայացնել որպես մարդկային մի հոտ, ուր չկան ինտելեկտուալ զանազանություններ: Մինչդեռ Լենինը պնդում էր, որ սոցիալիզմի հաղթանակով **ոչ թե կնվազի, այլ միլիոն անգամ կավելանա** մարդկության **շերտավորումը հոգևոր կյանքի բազմազանության**, գաղափարական հոսանքների, ձգտումների ու դրանց **նրբերանգների հարըստության** առումով: Լենինյան այս «պատրանքի» կենսագործման լավագույն ապացույցը ՍՍՀՄ ժողովուրդների գրականության, արվեստի և ստեղծարար տենչերի բուռն ծաղկումն է:

Գրքում սահմանված են ազգային հոգեբանության օրգանական տարրերը՝ բնորոշված է ազգային պատկանելության գիտակցությունը, որը կազմավորվում է սոցիալական միջավայրում: Ճիշտ է վարվում հեղինակը՝ զգուշացնելով ընթերցողին՝ չշփոթել ցեղային ու ազգային պատկանելության գիտակցությունները, թեև դրանք շաղկապված են: Ազգային պատկանելության գիտակցության տարրն է նաև տերիտորիալ պատկանելության գիտակցումը: Ապա նա եզրակացնում է. «Ազգային պատկանելության գիտակցությունը, միավորվելով ազգային հպարտության կամ, ինչպես ընդունված է ասել, ազգային զգացմունքի հետ, դրսևորվում է որպես ազգային ինքնագիտակցություն: **Սոցիալիզմը ո՛չ միայն չի վերացնում ազգային ինքնագիտակցությունը, այլև զարգացնում**, ավելի բարձր աստիճանի է հասցնում այն» (էջ 273): Տեղին է նշված, թե սովետական քաղաքացիների ազգային ինքնագիտակցությունը հետզհետե բյուրեղանում է և մաքրվում կեղեքչական հասարակությունների ժառանգված արատներից: Ճիշտ է վարվում նա, երբ շեշտում է, որ ազգային պատկանելությունը սերտորեն առնչվում է

տվյալ պետության քաղաքացիության գիտակցությանը: Նա հայրենասիրությունը համարում է առավել լայն ու բարդ երևույթ, քան ազգային ինքնագիտակցությունը, թեև, ասում է նա, որոշ իմաստով, դրանք հաճախ համընկնում են (էջ 277): Հեղինակի կարծիքով, դասակարգային հասարակության մեջ հայրենասիրական գիտակցությունը դասակարգային որոշակի երանգ ունի: Իհարկե, չի կարելի պատկերացնել հայրենասիրություն՝ առանց ազգային հպարտության: Մի հոգեվիճակ, որն ըստ Լենինի, հատուկ է ազգի բոլոր դասակարգերին ու խավերին՝ ուրույն դրսևորումներով հանդերձ (էջ 275):

Այստեղ նշենք, որ Լենինը խոշոր դեր էր հատկացնում հայրենասիրական զգացմունքին, որի սոցիալ-հոգեբանական արմատները թաղված են պատմության խորքերում: Այդ իսկ պատմության դասերն ասում են, որ շահագործվողների հայրենասիրությունն ավելի խոր ու տևական է և միտում է հասարակական արդարության թագավորության հավերժացմանը: Լենինը քանիցս հիշեցրել է, որ ազգային անիրավությունների գոյությունը մեծապես խանգարում է պրոլետարների դասակարգային համերաշխությանը: Պատմության մեջ հաճախ օտար զավթիչների հարձակումը և հայրենիքի պաշտպանության շահը, չնայած դասակարգային շահերի ներհակությանը, հայրենասիրական տենչերին նոր լիցք են հաղորդում, որն իր էությամբ նշանակում է համազգային շահերի գիտակցում: Ահա թե ինչու իմպերիալիզմի դեմ մղվող ազգային-ազատագրական մարտերում իրենց ազգերի ամենապրոգրեսիվ և անձնուրաց մարտիկները կոմունիստներն են. նրանք են առավելապես կրում ազգի ազատագրման մեծագույն հոգսը:

Մելիքյանի ուսումնասիրության երկրորդ մասի, Ե գլխի երրորդ ենթագլուխը նվիրված է սոցիալիստական ազգերի ու ժողովուրդների բարեկամության քաղաքական իմաստավորմանը: Սոցիալական համագործակցությունը համարելով գերազանցապես աշխատավոր դասակարգին հատուկ կենսագործունեություն, նա իրավամբ դրա շարժառիթները որոնում է մարդկանց նյութական ու հոգևոր բարիքների, արտադրության՝ **աշխատանքային գործունեության** ոլորտներում: Կյանքում առաջացած շահերի միասնությունը ճնշվողներին ու կեղեքվողներին տակավին հեռավոր անցյալում հանել է կեղեքիչների դեմ և պատմությունն ընթացել է դասակարգային ու ազգային զոռ մարտերի հունով: Սակայն, ասում է հեղինակը, բանվոր դասակարգի հանդես գալով պատմության մեջ հասարակական նոր որակ է գոյանում. «Ճնշող և ճնշվող ազգությունների աշխատավորների միջև միասնության գիտակցությունը մեծ ծավալ է ստանում», որը սակայն, չի զարգանում բուն կերպով՝ դասակարգային ներհակությունների, ազգամիջյան բախումների ու ազգայնական-թշնամական հոգեբանության առկայության հետևանքով: Մարդկության փրկության միակ ելքը կեղեքչական հասարակության դժոխքից տարբեր ազգերի բանվորների հեղափոխական միասնական կազմակերպվածությամբ նվաճվող դասակարգային կովի հաղթանակն է: Պայքարելով բուրժուազիայի դեմ, բանվորները ձերբազերծվում են իշխողներին հատուկ նացիոնալիստական հոգեբանությունից, տոգորվում ինտերնացիոնալ գիտակցությամբ, ի վերջո որդեգրում կոմունիստական գաղափարախոսությունը, որի դրոշով և խորտակում կապիտալիզմը:

Սոցիալիստական հեղափոխության հաղթությամբ,— ասված է գրքում,— սկսվեց ժողովուրդների ազատ համագործակցության և եղբայրական բարեկամության դարաշրջանը (էջ 302): Այնուհետև հեղինակը հանգամանալի վերլուծում է տարբեր ազգերի ու ժողովուրդների եղբայրական դաշինքի կոման ու կոփման ասպարեզում ՍՄԿԿ դերը, եզրակացնելով, որ առանց կոմունիստների ղեկավար ուժի անհնար է պատկերացնել ազգային հարցի վերջնական լուծումը (էջ 303):

Հեղինակը քանիցս վկայակոչում է Լենինի այն ծրագրային սկզբունքը, որ կապիտալիզմին բնորոշ են թշնամական երկու պրակտիկա և ըմբռնումներ՝ **բուրժուական նացիոնալիզմ և պրոլետարական ինտերնացիոնալիզմ**: Հիմնավորապես վերլուծելով այս հարցի շուրջ եղած տարբեր հայացքները՝ նա շեշտում է դրանց անհաշտելիությունը և սոցիալ-քաղաքական իրարամերժ հիմքերը:

Հեղինակի ամբողջ ուսումնասիրության առանցքը լենինյան վերոհիշյալ թեզն է, որի ստեղծագործական մարմնավորմամբ մեծապես շահում է գրքի գաղափարական մակարդակը: Հիրավի, անդրադառնալով պրոլետարական ինտերնացիոնալիզմի ու բուրժուական նացիոնալիզմի միջև մղվող պայքարի դասակարգային բնույթին, հեղինակը հետևողականորեն բացահայտել է շովինիզմի, ազգային սահմանափակության ու պարծենկոտության այն երևույթները ու նախապաշարումները, որոնք խանգարում են սոցիալիստական ժողովուրդների եղբայրության ամրապնդմանը: Նա առանձնապես ընդգծել է, որ սոցիալիզմի օրոք լայն հնարավորություններ կան ճիշտ զուգակցելու ժողովուրդների ազգային ու միջազգային շահերը, ոչ գերագնահատելու և ոչ էլ թերագնահատելու ազգային յուրահատկությունների ու շահերի տեղը ընդհանուր առաջխաղացման ոլորտում: Հիրավի, սովետական երկրում կան ռեալ հնարավորություններ գիտակցելու և շտկելու անհատների թույլ տված սխալներն ու սայթաքումները, ինչպես, օրինակ, դա կատարվեց ՍՄԿԿ XX համագումարից հետո, երբ պրակտիկայում վերականգնվեցին մի շարք ազգերի ինքնավարական իրավունքները և նրանք վերահաստատվեցին հայրենի հողի վրա: Հեղինակն իրավամբ պնդում է, որ նման սուբյեկտիվ խախտումներն ամենևին **չեն բխում սոցիալիզմի էությունից** (էջ 283):

Իրավացի է Մ. Մելիքյանը, երբ վկայակոչելով Լենինին հիշեցնում է, թե անհրաժեշտ է առանձնակի զգույշ լինել մարդկանց ազգային զգացմունքի նկատմամբ և հոգատարությամբ կիրառել ազգերի հավասարության սկզբունքը: Չպետք է մոռանալ, կարդում ենք գրքում, որ սովետական մարդկանց միջազգային հայրենասիրությունը մի ինչ-որ անդեմ, **ապազգային** զգացմունք չէ: Դա ազգային է, սակայն **բովանդակությամբ սոցիալիստական**: Հասկանալի է, որ դրա հիման վրա էլ «ազգային հպարտության զգացմունքը սոցիալիզմի պայմաններում ո՛չ միայն չի վերանում, այլև ավելի է զարգանում որպես և՛ ազգային արժանապատվության, և՛ սոցիալական առաջադիմության համակարգին պատկանելու հպարտության գիտակցություն» (էջ 286): Տեղին ու ճիշտ է ազգային հարցի հունգար տեսաբան Զոլտան Կոմոչինի ուշագրավ դատողության վկայակոչումը. «Ինտերնացիոնալիզմն ազգային զգացմունքին տալիս է այնպիսի բովանդակություն, որը որևէ այլ բանով փոխարինելն անհնար է: Զգացմունքների, մտածողության, գործողության մեջ ազգին պատկանելը մարդկային վեհագույն զգացմունքներից մեկն է, իսկ ազգային պատկանելությունից ու քեզնից անկախ բոլոր սոցիալիստական երկրների, աշխարհի բոլոր աշխատավորների հետ համախմբվել ու նույնանալն ազգային գիտակցությունն զգալիորեն բարձրացնող, մեծ գործերի իրականացմանը նպաստող զգացմունք է» (էջ 288):

Ահա թե ինչու Մ. Մելիքյանը սխալ է համարում այն հեղինակների հայացքը, ովքեր ազգային բնորոշ գծերից բացառում են հոգեկանն ու բնավորության տարրերը: Մինչդեռ, ասում է նա, յուրաքանչյուր ազգ ունի իրեն հատուկ բնավորության ու ազգային նկարագրի բնորոշ տարրեր, որոնց անտեսումը անպայման վնասում է ժողովուրդների լենինյան բարեկամության ամրապնդմանը:

Կարևոր մի դրվագ է գրքի 297—313 էջերի շարադրանքը, ուր խոսվում է ՍՍՀՄ ազգերի լենինյան բարեկամության առաջացման ու զարգացման տարբեր փուլերի մասին:

Ուսումնասիրության վերջին՝ Զ գլուխն ամբողջովին նվիրված է ազգային լեզուների ու կուլտուրաների զարգացման կենսահույզ պրոբլեմին: Այստեղ կուռ և հակիրճ շարադրված է ազգային լեզուների ու կուլտուրաների զարգացման կեսդարյա ընթացքը ՍՍՀՄ-ում: Ելնելով անցյալի կուլտուրական արժեքների գնահատման լենինյան ըմբռնումից՝ Մ. Մելիքյանը հիմնական գծերով վերլուծում է մեր կուսակցության քաղաքականության ակնառու արդյունքները հոգևոր աշխարհի մի շարք մարզերում: Չմոռանանք ասել, որ այս գլուխը կարդացվում է առավել լարվածությամբ, հավանաբար այն պատճառով, որ շոշափվող խնդիրները խիստ կենսական լինելով, վերաբերում են մեր ժողովուրդների այսօրվա հոգսերին:

Սովետական ազգերի ու ժողովուրդների բարգավաճումն իրականում ապացուցեց լենինյան ազգային քաղաքականության ճշմարտացիությունը: Տնտեսական հավասարության հիման վրա ծաղկեցին բոլոր ազգերի սոցիալիստական կուլտուրաները: Այս առնչությամբ ևս հեղինակը քննադատում է դոգմատիկների սխալ հայացքները, կուլտուրայի ու լեզուների ոլորտում գոյություն ունեցող ազգային յուրահատկությունների անտեսումը: Այստեղ, ինչպես և գրքի նախորդ գլուխներում, պարզ երևում է Մ. Մելիքյանի՝ որպես կոմունիստ գիտնականի իմացությունների հարըստությունը, շարադրվող նյութի կատարյալ տիրապետումը և, մանավանդ, նրա հետևողական գաղափարական պայքարը հանուն սովետական ազգաշինարարության անխափան զարգացման:

Մ. Մելիքյանի ուսումնասիրությունը, որը հանդիսանում է հետազոտվող բնագավառում լենինյան մեթոդոլոգիայի հաջող մարմնավորում, մեր կարծիքով, ունի հետևյալ անկապտելի արժանիքները.

ա) նա կարողացել է բազմաթիվ փաստերի ու առտնին երևույթների կույտից զննել և ընտրել էականները, կարևորագույնները.

բ) բոլոր հարցերը քննվում են կոնկրետ իրավիճակներում՝ մնացյալների հարակցություններով հանդերձ.

գ) աշխատության հիմքում ընկած է հանգուցային այն թեզը, որ ազգ ասած հանրությունն ունի **հարաբերական ինքնուրույնություն**, որն արտահայտվում է ազգային շահերի առկայությամբ (որոնք որոշ դեպքերում և որոշ չափով հանդիսանում են նաև մի քանի դասակարգի շահերը), օտար լծից ազատվելու և ինքնորոշվելու համազգային ձգտմամբ, միջ-

պետական կյանքի վրա ունեցած ազգային նիստուկացի ազդեցությամբ, ազգային ավանդույթների, ինքնագիտակցության, ազգային իդեոլոգիայի՝ հանրակեցության վրա ունեցած ներգործմամբ, վերջապես՝ ազգային կուլտուրայի, լեզվի, հոգևոր նկարագրի յուրահատկությունների դրսևորմամբ.

դ) ամենուր բացահայտված են քննվող խնդիրներին ներհատուկ հակասությունները, դրանց նկրտումները՝ պատշաճ ընդհանրացումներով և գործնական եզրակացություններով.

ե) սոցիալիզմի օրոք ազգերի բազմահարուստ նյութական ու հոգևոր կյանքի արգասալի զարգացման նկրտումի մերհանմանը զուգընթաց, սոցիոլոգիական ու պատմական փաստարկումներով ապացուցված է նրանց բարգավաճման ու մերձեցման վերընթացը սովետական կարգերում:

զ) հստակ սահմանելով սոցիալիստական ազգերի զարգացման բնորոշ կողմերը՝ հեղինակը հարակից վերլուծել է նրանց անցած պատմական փուլերի որակական զանազանությունները.

է) Մ. Մելիքյանն իր ուսումնասիրության մեջ մշտապես ելնում է ազգերի կյանքի փոփոխված պարագաներից, հասարակական ֆորմացիաների, զանազան հասարակարգերի կենսառլորտից առնված մեծաթիվ փաստերի վերլուծությունից, և ոչ «մարքսիզմի հին սահմանումներից».

ը) սեփական խորհրդածություններն ու եզրահանգումները փաստարկված են սովետական ազգաշինարարության հարուստ պրակտիկայից քաղված վավերագրերով, մարքսիզմ-լենինիզմի դասականների հայացքների, կուսակցության ծրագրի և պետական այլ վավերագրերի վկայակոչմամբ, ինչպես և իր մշակած ու համակարգած վիճակագրական տվյալներով:

Ահա թե ինչու գիրքը կոչեցինք **ազգերի լինելության սոցիոլոգիա:**

Այս հետազոտությունը, որին վաղուց էր սպասում հետաքրքրասեր ընթերցողը, հիրավի, նոր է և հիմնարար, կուռ ու բովանդակալի, շեշտված այժմեական և միտք սնուցող: Անվարան կարելի է ասել, որ այն ՍՄԿԿ վարած ազգային քաղաքականության իրոք գիտական դրվատումն է, ազգային հարցի լենինյան լուծման լավագույն պրոպագանդումը:

Ցանկանք, որ այն լույս տեսնի նաև ռուսերեն:

**Ս. Գ. ԱԳՈՅԱՆ**




ԽՄԲԱԳՐԱԿԱՆ ԿՈԼԵԳԻԱ

ԱԳՈՅԱՆ Ս. Գ. (գլխավոր խմբագիր), ԱՎԵՏԻՍՅԱՆ Վ. Ս., ԳԵՎՈՐԳՅԱՆ Վ. Հ. (պատասխանատու քարտուղար), ԹԵԼՈՒՆՑ Ս. Մ., ՂԱՐԻԲՋԱՆՅԱՆ Գ. Բ., ՄԻՔԱՅԵԼՅԱՆ Ս. Ս., ՆԱԼԲԱՆԴՅԱՆ Ս. Ս., ՍՏԵՓԱՆՅԱՆ Ս. Հ., ՍԻՄՈՆՅԱՆ Ա. Ս., ՍԱՐՈՅԱՆ Է. Մ., ՎԱՐԴԱՆՅԱՆ Ս. Հ.:

Адрес редакции,—Ереван-33, Барекамутян 59 г.

Խմբագրության հասցեն՝ Երևան—33, Բարեկամության 59 գ.: Հեռախոսներ՝ պատ. քարտուղար՝ 57—37—80, տնտեսության և էկոնոմիկայի բաժիններ՝ 57—25—29, կուսակցական կյանք և կուլտուրայի բաժիններ՝ 57—19—80, գրական աշխատող՝ 57—60—64:

ՎՖ 03146 Պատվեր 1248 Թղթի չափսը 70×108 1/16: Տիրաժ 12800 Գինը 25 կոպ.:

Տպ. 7 մամուլ, մամուլում 68840 նիշ: Ստորագրված է տպագրության՝ 13/VII 1970 թ.:

ՀԿԿ Կենտկոմի հրատարակչության տպարան, Ալ. Խասհակյանի փող. № 28:


# ՁԵԶ ՀԱՄԱՐ ԸՆԹԵՐՑՈՂՆԵՐ

## ՆՈՐ ԳՐՔԵՐ

ԼԵՆԻՆ Վ. Ի.— *Երկեր. Հատոր 42: Հոկտեմբեր 1917—1923: Թարգմանված է չորրորդ հրատարակությունից: «Հայաստան» հրատ., 1969, 790 էջ:*

ԼԵՆԻՆ Վ. Ի.— Կուսակցական կյանքի նորմերի և կուսակցական ղեկավարության սկզբունքների մասին: *Մ., Քաղհրատ, 1969, 424 էջ:*

ԼԵՆԻՆ Վ. Ի.— Սոցիալիզմի և կոմունիզմի կառուցման հարցեր: *Մ., Քաղհրատ, 1969, 365 էջ:*

*Այս ժողովածուում զետեղված են սոցիալիզմի և կոմունիզմի կառուցման հարցերին նվիրված Իլյիչի աշխատությունները կամ քաղվածքներ աշխատություններից:*

ԼԵՆԻՆ Վ. Ի.— Լ. Ն. Տոլստոյի մասին: *Մ.,* «Художественная литература» *հրատ., 1969, 190 էջ:*

Բժիշկների հուշերը Վ. Ի. Լենինի մասին, «Медицина» *հրատ., 1969, 246 էջ:*

Վ. Ի. Լենինը և գիտական կոմունիզմի պրոբլեմները: *Մ., Քաղհրատ, 1969, 494 էջ:*

*ՍՄԿԿ ԿԿ առընթեր մարքսիզմ-լենինիզմի ինստիտուտի հրատարակած ներկա ժողովածուի հեղինակները Վ. Ի. Լենինի երկերի հիման վրա վերլուծել են լենինյան տեսական ժառանգությունը՝ սոցիալիստական հասարակության ազդեցության շրջանները, սոցիալիզմից կոմունիզմին անցնելու օրինաչափությունները և այլ պրոբլեմներ:*

Լենինը և հյուսիսը: *Փաստաթղթերի և նյութերի ժողովածու: 1894—1924: Արխանգելսկ, 1969, 336 էջ:*

ԽԱՐՄԱՆԴԱՐՅԱՆ Ս. Վ.— Լենինը և Անդրկովկասյան ֆեդերացիայի հաստատումը: *1921—1923: «Հայաստան» հրատ., 1969, 456 էջ:*

*Արխիվային և այլ նյութերի հիման վրա հեղինակը վեր է հանել Վ. Ի. Լենինի խոշորագույն դերը Անդրկովկասյան ֆեդերացիայի ստեղծման ու ամրապնդման գործում:*

ՄՆԱՑԱԿԱՆՅԱՆ Ա. Ն.— Լենինը և ազգային հարցի լուծումը ՍՍՀՄ-ում: *Երևան, ԳԱ հրատ., 1970, 364 էջ (ռուսերեն):*

*Հեղինակը ներկա մենագրության մեջ լուսաբանել է սովետական ազգերի մինչհեղափոխական ժամանակաշրջանի ազգային պրոբլեմները, շարադրել սովետական ազգային քաղաքականության հիմնական սկզբունքները, բացահայտել դրանք Ռուսաստանի Ֆեդերացիայի, Ուկրաինայի, Բելոռուսիայի, Լատվիայի, Լիտվայի, Վրաստանի, Հայաստանի, Ադրբեջանի և մյուս հանրապետությունների ազգային պետական կառուցվածքի օրինակով:*

ՑԵՅՏԼԻՆ Ս. Գ.— Լենին-հրապարակախոսի ոճը: *Մ.,* «Наука» *հրատ., 1969, 279 էջ:*

Լենինի հետ: *Վավերագրեր և հուշեր: «Հայաստան» հրատ., 1969, 518 էջ:*

*Ժողովածուում զետեղված են հայ ականավոր բոլշևիկների՝ Ստ. Շահումյանի, Ս. Սպանդարյանի, Ի. Լալայանցի, Բ. Կնունյանցի, Ալ. Մյասնիկյանի, Վ. Կասպարովի և ուրիշների նամակագրությունը Վ. Ի. Լենինի հետ, հին բոլշևիկների հուշերը և այլ փաստաթղթեր:*

Կ. Մարքսի և Ֆ. Էնգելսի գրական ժառանգությունը: *ՍՍՀՄ-ում հրապարակման և ուսումնասիրության պատմություն: Մ., Քաղհրատ, 1969, 512 էջ:*

*ՍՄԿԿ առընթեր մարքսիզմ-լենինիզմի ինստիտուտի գիտաշխատողները շարադրել են գիտական կոմունիզմի հիմնադիրների գրական ժառանգության հրատարակության պատմությունը, Կ. Մարքսի և Ֆ. Էնգելսի կյանքն ու գործունեությունը:*

ՄՈԼՉԱՆՈՎ Ն. Ն.— Ժորես: *Մ.,* «Мол. гвардия» *հրատ., 1969, 399 էջ:*

*Գրքում շարադրված է ֆրանսիական սոցիալիստական կուսակցության առաջամարտիկներից մեկի՝ Ժան Ժորեսի (1859—1914) կենսագրությունը:*

ՍՎՈԲՈԴԱ ԼՅՈՒԴՎԻԳ— Բուզուլուկից մինչև Պրագա: *Թարգմ. չեխերենից: Մ., Զինհրատ., 1969, 434 էջ:*

Գինը 25 կ.: 77783

# ԳԻՏՈՒԹՅԱՆ ԵՎ ՏԵԽՆԻԿԱՅԻ ՆՈՐՈՒԹՅՈՒՆՆԵՐ

## ԱՄԵՆԱՀՈՒՍԱԼԻ ԻՆՔՆԱԹԻՌԸ

Ժամում 900 կմ արագությամբ թռչող ТУ—154 ինքնաթիռն ունի երեք շարժիչ. եթե հանկարծ դրանցից մեկը խափանվի, ինքնաթիռն առաջվա պես կշարունակի իր թռիչքը։ Եթե նույնիսկ երկու շարժիչը չաշխատեն, մեկը կարող է հաջողությամբ տեղ հասցնել ուղևորներին։

Այս ինքնաթիռի թռիչքն ու վայրէջքը (երբ ընդհանրապես շատերը վատ են զգում իրենց) տեղի են ունենում շատ սահուն, խտացրած օդը զովացնում է սալոնը և՛ թռիչքի, և՛ դադարի ժամանակ— առավելություններ, որոնց շնորհիվ ուղևորների ինքնազգացումը միշտ լավ է լինում։

Սովորաբար, խիտ ամպամածության ժամանակ օդանավակայանը չի ընդունում, ուղևորները ստիպված են «եղանակի» սպասել։ Մինչդեռ նոր ինքնաթիռը երբեք չի խախտում չվացուցակը։ Օդաչուն կարող է այս հրաշալի ինքնաթիռը տանել վայրէջքի նույնիսկ այն ժամանակ, երբ ամպերն իջած են մինչև 10—12-հարկանի շենքի բարձրության չափ։

## ՏՆՏԵՍԱԳԵՏԻ ՕԳՆԱԿԱՆԸ

Վիլնյուսի էլեկտրահաշվիչների երիտասարդ մասնագետներն ստեղծել են «Раса» մակնիշի սեղանի հաշվիչ մեքենա։ Այն նախատեսված է հաշվապահական-վիճակագրական, ինժեներատեխնիկական և այլ հաշվարկների համար։ Էլեկտրոնային այդ մեքենայի օգնությամբ տնտեսագետը կարող է կատարել թվային տասը գործողություն՝ բազմապատկում, բաժանում, արմատ հանել, աստիճան բարձրացնել, ամփոփել արդյունքները և այլն։

Մեկ թվաբանական գործողությունը տևում է մեկ վայրկյան։ Մեքենայի կշիռը 22 կիլոգրամ է, սնվում է 127 կամ 220 վոլտ լարվածության էլեկտրացանցից։

## ՇԻՆԱՐԱՐԱԿԱՆ ՀԱՐԴԱՐՈՂ ԱՊԱՐԱՏ

СО—66 մակնիշի այս հրաշալի ապարատով ներկարարը մեկ ժամում կարող է ներկել 1000 քառ. մետր տարածություն։ Բավականին բարդ ու խոշոր նախկին ագրեգատը նույն աշխատանքը կատարում էր երեք անգամ դանդաղ. այն հնարավոր չէր օգտագործել առանց հատուկ տրանսպորտի, յուրաքանչյուր ագրեգատ սպասարկում էր միայն մեկ մարդու։ Նոր ապարատը լուծույթով ապահովում է միանգամից չորս բանվորի։ Այն փոքր է, կշռում է ընդամենը 9,5 կգ, աշխատանքում հուսալի է և անվտանգ։

## ԽՈՀԱՆՈՑԻ ՀԱՄԱՐ

Պլաստմասսայի վերամշակման լատվիական գործարանը թողարկում է խոհանոցային ունիվերսալ մեքենա։ Այն կտրտում է միսը, քամում հյութը, մանրում բանջարեղենը, հունցում խմորը։ Հինգ րոպեում մեքենան մշակում է մեկ կիլոգրամ միս, ութ րոպեում քամում մեկ կիլոգրամ մրգի կամ բանջարեղենի հյութ։

## Ի՞ՆՉ ԱՐԺԵՆ ԱՏՈՄԱՅԻՆ ՓՈՐՁԱՐԿՈՒՄՆԵՐԸ

Պիտսբուրգի համալսարանի դոկտոր Է. Ստեռնգլասը հաստատում է, որ մինչև մեկ տարեկանը մեռնող ամերիկացի և անգլիացի երեխաների կեսը ատոմային փորձարկումների հետևանքով առաջացած նստվածքների ռադիոակտիվ ճառագայթման զոհ են (Ամերիկայում՝ 400 հազար, Անգլիայում՝ 100 հազար)։ Երկու միլիոնի է հասնում օրապակաս կամ մեռելածին երեխաների թիվը միայն ԱՄՆ-ում։

## ԵՂԱՆԱԿԸ ԵՎ ՄԱՐԴԸ

Կրակովի մի խումբ բիոլոգներ ու բժիշկներ պարզել են, որ մթնոլորտային ճնշման տատանումները և ուժեղ քամիները իջեցնում են մարդու օրգանիզմի տոնուսը։ Դրա հետևանքով շատանում են ավտովթարները, չմտածված վճիռները, որոշ հիվանդություններ սրվում են, ավելի հաճախակի են դառնում ինֆարկտները։

Ցարմակոլոգների համագործակցությամբ ստեղծվել է եղանակի բացասական ազդեցությունը մեղմող դեղամիջոց՝ երկու տարբերակով. մեկը վերացնում է խիստ ջղագրգռությունը, մյուսն օգտագործվում իբրև գրգռիչ՝ ապաթիայի և ընկճվածության դեմ։

Այժմ Կրակովում ստուգվում է այդ դեղամիջոցի ազդեցությունը վարորդների վրա։